թեն եռանկիւնաւոր լինի․ կամ մտօք միայն, յորժամ իմանամք թէ մարդ է կենդանի։ կամ ձայնիւ․ յորժամ ասեմք թէ մարդ է կենդանի։ կամ գրածիւ․ յորժամ գրեմք զայսն այս։ արդ՝ ուրեմն եռակ է եզր ըստ խորհրդաւորութեն չափաւորմանօղն։ մտաւորական որ չափաւորանէ ըստ խորհրդաւորութեն մտաւորական։ ձայնաւորական կամ որ զձայնաւորականն։ և գրական որ զգրականն։

## Յաղագս մտաւորական եզրի։
## Պրակք․ Գ։
## *De Termino Mentali.*
## Articulus Tertius.

Մտաւորական եզր՝ բաժանի ի ծայրագոյն, և յանծայր։ անծայր՝ է իմացուածն զոր միայն ստեղծէ առ յիմանալոյ զձայն բառիցն։ իսկ ծայրագոյն՝ է իմացումն զիրն․ որ ձայնիւն նշանակի։ և առն ծայրագոյն․ զի միայն ի նմանանգի։ ոչ և միւսն անծայր առն․ զի միայնն ի նմա ոչ մնայ․ այլ յառաջագոյն գնայ․ առ յիմանալ զիրն ձայնիւ ընշանակեալ։ զոր օրինակ․ ոմն լսելով զձայնս․ մարդ․ զառաջնոյն իմացումն ստեղծանէ․ զմիտն զձայնն․ իմանալով թէ ձայնդ․ մարդ․ հնչումն ինչ է զօդն զարնօղ։ և զմիւսն զիրէն ձայնիւն նշանակելոյ․ իմանալով զմարդկային բնութիւն ի կենդանութեան և ի բանաւորութեան բաղկացեալ։ նախկին իմացուածն՝ որ յարահետեւի ամ եղերացն․ նշանականացն և աննշանիցն․ անծայր է և անկատար։ վերջինն՝ որ միայն նշանական ձայնիցն պատկանի, ծայրագոյն է և կատարեալ։

Եւս դարձեալ․ մտաւորական եզրն բաժանի յուղիղ, և ՚ի յանդրադարձ։ ուղիղն է՝ առաջինն իմացուածն մտօք կերպացեալ զենթակայէ զօրումեմնէ․ ոչ իմանամք զձայնս, մարդ․ կամ

զիրն

զկրն հայնեա՟ց նշանակեալ ։ իսկ՝ անդրադարձն է՝ իմացուածս որով զառաջադրեալ իմացուածն իմանամք . որպէս իմանամ թէ նախ զմարդն իմացեալ էի ։ նախկին իմացմանն էութականն՝ է՝ մարդ ։ իսկ՝ վերջնոյն՝ է՝ զմարդոյ իմացուածս ։

## Յաղագս՝ հայնաւոր եզրին ։ և թէ զինչ է՝ բան նշանակութեան .

## Պրակք . Դ ։

## De Termino Vocali: & quid sit ratio signi.

## Articulus Quartus.

Ձայնաւոր եզր զորմէ յառաջինս մասին ներածութեան ընձեռեցաք երկեակ է՝ նշանական և աննշան։ Նշանականն է՝ որ շարադրեցաւ առ ի՛ր ումն նշանակել . որպէս . մարդ . քար ։ աննշանն է՝ որ ո՛չ զայլ ինչ նշանակէ . բայց միայն զիւր ինքն ձայնն . որպէս . պաֆ . պլիդրի ։ և այլ ։

Արդ եզր հայնաւոր նշանականն՝ է՝ ձայն նշանական ըստ կամաց . յորմէ պարզ նախադասութիւն շարամանի ։ ցուցանի . մեկնութիւն ։ ձայն առաջնոյ փոխանակ սեռի . որով բաժանի՟ հաւասարի ընդ աննշան եզերացն , որք և ձայն լինին . և որոշի յեզերաց մտաւորացն . և ՚ի նշանեցն , որք ո՛չ գոն ձայն ։ Իսկ՝ այլքն ՚ի բաժանեցն դնին փոխանակ տարբերութեան ։ ասի նշանական . առ ՚ի տարբերութիւն աննշան եզրին , որպիսի է՝ պաֆ ։ ասի ըստ կամաց . ՚ի ըստ շարադրութեան և հաւանութեան մարդկան . զի որոշեսցին հնչմունքն և ձայնքն բնականաբար նշանակիչք թարց ո՛չինչ մարդկան շարադրութեան որպիսի է՝ ոռոռ . լաց . և այլ ։ ասի յորմէ պարզ նախադասութիւն շարամանի . առ ՚ի յարատաքսելոյ զնոցին նախադասութիւն և զբանն . յորոյն ո՛չ պարզ և ստորոգականն . այլ ստորադասականն նա-

 խադաս

զանկակի ձայնն է՝ նշան ժամու =

Յասացելոցս հետևի, թէ ձայնաւոր եզրն . բնականա-
բար նշանակէ զոր յիմքեան գոյ նիւթաւորն . ոպ̃ . զձայնն
ճնչմանէ կերպարանեալ = բայց ըստ հաճոյութէ նշանակէ
զոր յիմքեան գոյ տեսակաւորն . ոպ̃ . զհամն ձայնիցն նշա-
նակէ այս =

## Յաղագս ձայնաւոր եզրին անջատմանց .

## Պրակ . Ե =

## *De Diuersis Termini vocalis diuisionibus.*

## Articulus Quintus.

Առաջին անջատումն . եզերացն ոմն է՝ ստորոգական .
ոմն փաղառաստորոգական · և ոմն խառնեալ : Ստորո-
գականն՝ է, որ ըստ ինքեան առանձնաբար առեալ՝ զինչ բա-
ցորոշապէս նշանակէ = որգոն . մարդ . ձի . և այլ = և ստո-
րոգական ասի · զի ըստ ինքեանն բացորոշապէս ստորոգի 'ի
նախադասութէն = ոպ̃ . սպիտակ է՝ մարդ = փաղառաստորոգա-
կանն՝ է՝ որ ըստ ինքեան առանձնաբար առեալ՝ անորոշաբար
նշանակէ . և ոչ ստորոգի . թէ ոչ ընդ ստորոգականին շա-
րաեալ = որպէս . ամ̃ . ոմն . ոչինչ . և այլ = այլ թէ ամ̃
մարդ ասի · կամ ոմն ձի . յայնժամ զբացորոշեալ ինչ նշա-
նակէ և կարող է ստորոգիլ 'ի նախադասութէն : որպէս .
սպիտակ է ոմն մարդ = Խառնեալն է՝ որ յերկոցունցն . ոպ̃ .
'ի ստորոգականէն և 'ի փաղառաստորոգականէն առնու = այս
պիսիք են առբայքն . որպէս . իմաստնաբար . գեղեցկապէս .
և այլ =

Չափիկեացն = թէ փաղառաստորոգականն եզր՝ ըստ ինքեան
նմանցեալ զմի ինչ նշանակէ = սակայն թէև ոչ զանազանի 'ի

ստո-

ստորոգականէն ։ Առաջարկութիւն ձեռնարկութեան ցուցա–
նի ։ քանզի եղիւ այս․ մարդ․ ըստ ինքեան խորհեցեալ՝ նշա–
նակէ զհասարակութիւն ինչ ։ ապա ուրեմն ՚ի ստորոգականն ոչ
տարբերի ։

Պատասխանատրի ․ ուրանալով զառաջարկութիւն առա–
ջին ձեռնարկութեան ․ և առ ցուցումս նորա ասեմք ․ Թէ է՛
գործ ստորոգականն եղիցի զիմն նշանակել՝ ոչ զիարդ և իցէ․
այլ միայն կատարելապէս ․ և բացորոշաբար ։ Այլ՝ միա–
զասստորոգականն․ որ․ մարդ․ զհասարակութիւն նշանակէ՝ ոչ բա–
ցորոշաբար․ այլ անկատարելապէս ։ մինչ զի ոչ կարէ նախա–
դասութիւն ՚ի նմ առանձինն վերլուծանել ։

Դարձեալ առարկեսցեն ։ Թէ ոչինչ Թուի տարբերու–
թիւն ՚ի մէջ եզերայն փաղաստորոգականին և խառնելոյն ։
ապա ուրեմն ոչ պարտ է զնոյն անջատել ։ առաջարկութիւն
ցուցանի ։ քանզի ՚ի խառնեալ եզերացն միայն՝ Թարց այլ լծոր–
դի ոչ կարէ շարամանել նախադասութիւն , իբր յենթա–
կայէ և ՚ի ստորոգելւոյն ։ ապա ուրեմն ոչ տարբերի խառնելն
՚ի փաղաստորոգականէն ։

Պատասխանեմ ․ ուրանալով զառաջարկութիւն ։ և առ ցու–
ցումս ասեմ ․ Թէ խառնեալ եզերքն ընդունին իմնապէս զբա–
ցորոշեալ ինչ ։ որպ իմաստնական զիմաստութիւն ։ գեղեցկա–
պէս՝ զգեղեցկութիւն ․ և նոյնպէս զայլսն ։ Այլ ոչ յայնցա–
նէ կարէ շարադրել նախադասութիւն ։ ասելով ․ մարդոյ գրեաց
իմաստնայն ։

Երկք անջատմունս ստորոգական եզերացն՝ ոմանք են պարզք.
և ոմանք բաղադրեալք ։ Պարզն է՛, որոյ մասունքն կամ
ոչինչ նշանակեն զատեալք ․ կամ ոչ նոյնն, որ ՚ի բոլորին ։ որ–
պէս ․ պետրոս ։ քանզի պէ և տրոս ոչինչ նշանակեն ։ և որպէս.

վախճանն. քանզի թէպէտ վասն և զայն ցուցանէ զմի ինչ. այլ սակայն ոչ զնոյնն ում՝ ի բոլորին։ Բաղդեալն է, որոյ մա-սունքն զզգայական ունելով զնշանակութիւն, զնոյն ցուցա-նեն զատեալք, զոր համաձայնեալք ցուցանէին։ որպէս. կենդա-նի բանաւոր։ Իմաստասէր։ և այլք։ Բաղկացեալ ասի. զզգայա-կան ունելով զնշանակութիւն։ քանզի եթէ երկաքանչիւր մասն զնոյն նշանակութիւն ունէր. ոչ զբաղդեալ էր այլ չինէր. Հի բար-յակիս կայսր. երկոքեան բառք զմի մասն նշանակեն. վասն զբաղդեալ էր ոչ չինեն։

Երրորդ անջատումն. եղերացն այլ է որոշելի. որ և ասի դրական. այլ անորոշելի։ Որոշելին կամ սահմանեալն է որ զբացորոշեալ ինչ ստորասէ. որպէս մարդ, քար. և այլ։ Անո-րոշելին է, որ զբացորոշեալ ինչ բացասէ։ որպէս ոչ մարդ. ոչ քար։ Բայց անորոշելի ասի. զի ոչ առաւել բացորոշել է այ-լեւ մի քան զաւելորդն։ վասնզի կարէ ասել. թէ քար է ոչ մարդ։ ձիրք է ոչ մարդ։ ձի է ոչ մարդ։ և այսպէս զայլսն։

Չորրորդ անջատումն. եղերացն ոմն է բացասական. ոմն պակասական։ Պակասականն է որ բառնայ զիրն ի են-թակայէ որ բնաւորեցաւ ունել զնա. որպէս կուրութիւն. խլութիւն։ Բացասականն է որ բառնայ զիրն ի ենթակայէ որ ոչ բնաւորեցաւ ունել զնա։ որպէս ոչ լսող. ոչ տեսանող։ Ըստ այսմ մարդ ասի ունել զպակասութիւն երեսաց, կամ ասի կոյր. զի բնաւորեցաւ զերեսս ունել։ Իսկ քար ոչ ասի կոյր. և ոչ զերեսաց պա-կասութիւն ունել. թէպէտ ոչ տեսանէ. այլ ասի ունել զբա-ցասութիւն. և ասի ոչ տեսանող, կամ ոչ լսող. զի ոչ բնաւորեցաւ ունել զայդոսիկ։

Հինգերորդ անջատութիւն. եղր բաժանին ՚ի վերացեալ, և թանձրացեալ. Վերացեալն է՝ որ ունի զկերպ նշանակելոյ զպարզ. կամ որ նշանակէ զնախատեսակն նոյնութեանց. ոպ. զբնութիւն ինչ նաև զատուցեալ ՚ի նմանէ որոյ է՝ բնութիւն. ոպ մարդկութիւն. սպիտակութիւն. և այլ = քանզի նշանակեն սոքա զբնութիւն մարդոյն և սպիտակին զատեալ յենթակայէ որոյ է բնութիւն = Թանձրացեալն է՝ որ ունի զկերպ նշանակելոյ զբաղադրեալ. և յենթակայն զարկեալ. կամ որ նշանակէ զբնութիւն ընդ նմին որոյ է՝ բնութիւն. և զկերպացեալսն, և զանուանեալսն ՚ի նախադասելն = Իսկ՝ զերկուս բաղդատութիւնս նշանակէ. կմ պատահմանն ընդ ենթակայն. հն բար. սպիտակ = կամ բնութիւն ընդ ենթակայութեան, որպէս. մարդ = քանզի սպիտակն նշանակէ զսպիտակութիւն յենթակայութեան; իսկ՝ մարդ՝ զբնութիւն զբաղադրեալ ընդ ենթակայութեան =

Վեցերորդ անջատութիւն. եղերայն՝ ոմն է՝ բացարձակեալ. ոմն փաղանշանաւոր = Բացարձակեալն՝ է՝ որ նշանակէ զիրն եզանակաւ ինքնամբ գոլոյ. և ոչ առ յայլ յենլոյ : որպէս մինչ գոնի անուանքն՝ պղպղանք և ստանձնագործ՝ առնելքն = ոպ՝ առիւծ. սպիտակութիւն. և այլ = փաղանշանաւորն՝ է՝ որ նշանակէ զիրն եզանակաւ առ յայլ յենլոյ = որպիսիք են ածականն անուանքն. ոպ՝ սպիտակ. նմանութիւն = որք փաղանշանաւորք ասին. զի զերկուս նշանակեն՝ ոպ՝ զսպիտակութիւն. կամ զնմանութիւն, և զենթակայսն առ որս յենուն =

Յառաջելոյս երևի տարբերութիւն ՚ի մէջ եղերացն՝ վերացելոյն և բացարձակելոյն = և ՚ի մէջ թանձրացելոյն, և փաղանշանաւորին = Վասնզի բացարձակեալն ընդ հանրականագոյն է՝ քան զվերացեալն = քանզի մարդկութիւն է՝ վերացեալ եղր. բայց ոչ մարդ : Իսկ՝ և մարդ, և մարդկութիւն՝ զոն բացարձակեալ

ձայնեալ եղերջ : զի ամ ինչ ինքեամբ գոլով նշանակօղն բա-
ցաձայնեալ է . բայց ոչ վերացեալ : Այլ ամ Թանձրացեալ
եզրն՝ ընդհանրականագոյն է քան զփաղանշանաւորն : զի փա-
ղանշանաւորն է այն միայն , որ զտեսակ ինչ նշանակէ ի բեր
զաւ այլ յենեալ : որպէս սպիտակն՝ նշանակէ զսպիտակութիւն
յենթակայում : Իսկ Թանձրացեալն է ամ ինչ որ նշանա-
կէ զտեսակն յայլում . կամ ինքեամբ գոլով . կամ յենլով .
որպէս մարդ . սպիտակ . և այլ :

Եւթներորդ անջատութիւն . եզր՝ ոմն է յարանուանօղ : ոմն յարանուանեալ : Յարանուանօղն է որ նշանակէ զտեսակն յորմէ մի ինչ յարանուանի : որպէս սպիտակութի . արդարութի . և այլ : Որք յարանուանեն զսպիտակ . զարդար . և զայլ : Յարանուանեալն է որ ըստ ձայնի և ըստ իրի կամ նշանակութե՛ բղխէ ՚ի տեսակէ յարանուանօղէն : որպէս արդար՝ յարդարութենէ . սպիտակ ՚ի սպիտակութենէ :

Արդ՝ եզրքն յարանուանեալն . և Թանձրացեալն . ընդհանուրք , և միանակմանաւ զանազանին ՚ի միմեանց : զի Թանձրացեալն՝ ընդհանրականագոյն : Իսկ յարանուանեալն՝ մասնականագոյն : քանզի որ ինչ յարանուանեալն է . նոյն և Թանձրացեալ : բայց ոչ հակադարձաբար : զի ոչ որ ինչ Թանձրացեալ . նա և յարանուանեալ : քանզի ՚ի գոյացութիս Թանձրացեալն՝ ոչ է առոյգ և իսկապէս յարանուանեալ : որպէս ձի . քար , և այլ : Իսկ զանազանին ՚ի փաղանշանաւորէն յարանուանեալ եզրն՝ կալմամբ ունամբ , կամ վերաբերութեամբ : Այս զի նոյն եզր՝ ըստ որում յայլմէ բղխէ և յարանուանի . յարանուանեալ ասի՛ ըստ որում անուանի այլէնումն , կամ նայի առ յենթակայն . ասի փաղանշանաւոր :

Ութերորդ անձնաւորութեան. եղերացն այլ է՛ հասարակ. այլ եզական. հասարակն՝ որ և ընդհանրական ասի. է՛ որ կարող է՛ բերել ըստ բազմաց իւրաքանչիւրաբար առելոց. ասի. որ կարող է՛ բերել ըստ բազմաց. քանզի հասարակ եղեն՝ ոչ է՛ հարկ. զի ներգործութիւն բերցի. և ստորոգեսցի ըստ յուրովից. որպէս մարդն և ձին. այլ բաւական է՛ զի զօրութիւն միայն. որպէս. եթէ բնաւորեցաւ, կամ ոչ ներհակակայի բերել ըստ յոլովից. որպէս արեգակն. որ թէպէտ ներգործութիւն մի է. այլ սակայն հասարակ է՛ եղբ ըստ Տրամաբանականացն. զի զօրութիւն ոչ ներհակակայսն գոլ բազում արեգակք. Նշանակաւ. իւրաքանչիւրաբար որպէս որոշաբար առելոց. յաղագս որոշելոյ զհաւաքականն անուանն. որպէս. զօրք. ժողովուրդ. և այլ. որք ոչ գոն հասարակ եղերք. վասն զի ստորոգեն զբազմաց՝ ոչ իւրաքանչիւրաբար. այլ հաւաքաբար առելոց. վասն իւրաքանչիւր զնաւ որ ոչ ասի զօրք. որպէս ասի մարդ.

Եւ դարձեալ. հասարակ եղերացն մինն է՛ ընդհանրականս ասացեալ. միւսն անորոշաբար. առաջինն՝ է՛ հասարակ եղբ ընդհանրականաւ նշանիւ արտաքսեալ. որպէս ամ մարդ. ոչոք ձի. յետինն՝ է՛ նոյն եղբ, այլ ոչ ՚ի ներքոյ նշանիւ ընդհանրականի. որպէս մարդ. ձի.

Եզական եղբ, որ և մասնական ասի. է՛ որ ըստ նշանակութեան անուանն ոչ կարէ բերել ըստ յոլովից զատ առելոց. որպէս արիստոտէլ. պղատոն. սոկրատ. ըստ նշանակութեան անուանն. զի ըստ անուան միայն՝ բազում եզական եղերք ստորոգեն ըստ յոլովից. որպէս պետրոս. պօղոս. քանզի բազում անհատք ունին զանունս. պետրոս. մինչ զի ճշմարիտ է՛ ասել. այս մարդ է՛ պետրոս. այն մարդ է՛ պետրոս. և այլն. բայց ոչ ունին զնոյն նշանակութիւն անուանդ յայտորեն, որպէս. զնոյն պետրոսութիւն. վասն այսորիկ եզական եղերք են. Նշանակեալ. ըստ

յոլո-

յոլովից զատ առելոց . քանզի ըստ նշական նշէրք ըերին զո-
լովից ժողովեալ առելոց . որպ Լրսաամնդ-Աննուպոլիս եզական
է . և ասի զամ ըստամնոյքութն 'ի միասին առելոց . ոչ զա-
տաբար ։

Եւ դարձեալ . եզական նոյն՝ բաժանի 'ի հաւաքական ,
բացորոշեալ . և անորոշ ։ Հաւաքականն՝ է որ նշանակէ
զմի ինչ 'ի բազմաց հաւաքեալ կամ որ նշանակէ զբազումս
իբր մի ։ որպ հունձ . զօրք ։ Բացորոշեալն է որ զմի ինչ դէպ
ցորոշէ նշանակէ . ոչ յայլոցն հաղորդեալ ։ որպ սոկրատես ։
Անորոշն՝ է հասարակ էզր տրամադրեալ նշանաւ նմանակա-
նաւ անորոշին . որպ . ոմն մարդ ։

Իններորդ առնչառութի . հասարակ նշերոյն՝ որպ է զե-
րազանցող . որպ անզերազանց ։ Գերազանցողն՝ է որ
ստորոգի ըստ ամ իրացն ։ Գերազանցող ասացեալ . զի զե-
րազանցի զամ սեռիւքն , և զամ ստորոգութեքն ։ այսոքիկ
են վեց այսոքիկ . որք այս բառիւս պարունակին ։ ամեն-
այն . որպ . մի . էակ . բարի . իր . ճշմարիտ ։ Եւ զի ամ ինչք՝
բաց 'ի սոսկ ոչինչէն . գոն իր . մի . էակ . որպ , բարի . ճշմարիտ ։
Իսկ գերազանցողն՝ է որ նշանակէ զյոլով այլատեսս . թէ-
պէտ ոչ գերազանցեն զամենայնիւքն , որպ պատահումն . որ
զերազանցի զինն ստորոգութեքն ։ Իսկ անզերազանցն նոյն
որ ասի ստորոգութենական՝ է որ պարունակի 'ի միոջէ ստո-
րոգութէ ։ որպ գոյացութիւն ։ մարմին ։ մարդ ։

Տասներորդ առնչառութի . հորդ նշերոյն՝ որպ է փաղաձնուն .
որպ համանուն . որպ համաձայն ։ Փաղաձնունն՝ է որ ըստ
նոյն անուան , և ըստ նոյն բանի և նշանակութե ասորոգի
զյոլովից ։ որպ մարդ ։ քանզի զի ամ անհատքն մարդ կոչին ։ բառ-

թեան ունին ո՛չ միայն զնոյն անուն մարդոյ, այլ և զնոյն բան և զսահման մարդոյ, ամենեքեանն զոլով կենդանի բանական: Համանունն՝ է՛ որ ըստ նոյն անուան, և ըստ զանազան բանի և նշանակութե ստորոգի զոլովից = որպէս . շուն, որ ստորոգի զաստեղէն . զձկանէն . և զանասնոյ հաչողականէն = քանզի այսպիսիք կոչին շուն . իսկ բան գոյացութեան ձայնիւ նշանակեալ՝ առ իւրաք զանազան է՛ 'ի նոսա = զի զայլ բան գոյացութե ունի շունն երկրային, որ է՛ անասուն հաչողական = զայլ՝ շունն յերկնային, որ է՛ մի յաստեղաց = և զայլ՝ շունն ծովային, որ է՛ ձուկ = Համաձայն . որ է՛ միջին զփոխադրութեանն և համանունութեանն՝ է՛ որ առի ըստ յոլովից ունողաց զնոյն անուն, և զբան գոյացութեան իմաստալից զնոյն, իմաստալից զանազան ; որպէս առողջ, որ առի զկենդանւոյ . զդեղէ . և զզարկէ բաղկին . որք ամենքն առողջ ասին = իսկ ըստ բանի իմաստալէս նոյնոյ, զի ամենքն հայեցին առողջութեան . և իմաստալէս զանազանի, զի կենդանի՝ առողջ ասի, իբր զառողջութիւն ունող = դեղ՝ ասի առողջ . որպէս զառողջութիւն գործօղ = և զարկ բաղկին՝ առողջ ասի, իբրև զառողջութիւն ցուցանող = քանզի կենդանի է՛ ենթակայ առողջութեան = դեղն է՛ պատճառ = և բաղկին զարկն է՛ նշան =

Սեռասանեոյ ամփոփութիւն . ստորոգականն եղբ՝ եթէ խօսք հնգից ըստ որում յարաբերի առ այլ, բաժանի 'ի սառազոյգ, և հակադրեալ = Առաջադոյգ եղեալ են, որք ըստ ամաքառելեալ զոն 'ի միմեանց . բայց ոչ հակադրեալք = որպէս . մարդ քար ձի = Հակադրեալքն են որ նշանակեն զիրս հակակայեալս 'ի միմեանց = և այսպիսիքս հակակայքն քառակաբար = ըստ . հակասութե . ներհակութե . պակասութե . և առընչութե = Հակասականք հակակայքն . յորժամ միմեանց բացասեն, զոր օրինակ միւսն = որպէս . էակ . ոչ էակ . մարդ . ոչ մարդ =

զի որոշեսցի անուանն . և ևս այս , օր , ժամ , և այլքն , որք ոչ ժամանակաւ . այլ զժամանակի նշանակեն ։ ասի և միշտ է նշանականն զայլմեց ասիցելոցն . յմ. նշանակէ զկապուածս ստորոգելեցոյն ընդ ենթակայիւն ։ վասն որոյ բայ զանազանի յընդունելութէ , որ թէպէտ նշանակէ ժամանակաւ . բայց սակայն ոչ կարէ զստորոգելեալն ընդ ենթակային ։ և թէպէտ ընդունելութիւն է կարող լինել ենթակայ նախադասութե . որպ. ընթացօղ է շարժելի . այլ սակայն ոչ կարէ բայն նոյն լինել . բայց կարէ լինել ստորոգելեալ . որպ . մխարար ընթանայ ։ սակս այսորիկ բայ միշտ ունի զինքն ՚ի կողմանէ ստորոգելելոյն ։ վմ որոյ ասէ . թէ միշտ է նշանականն զայլմեց ասիցելոցն . յմ . միշտ նշանակէ զստորոգելեալսն զայլոցն ։

## Թէ որք իցեն եզերք Նախահայեաց . և Երկրորդահայեաց ։

Պրակք . Զ ։

## *Quinam sint Termini Primæ , & Secundæ Intentionis .*

## Articulus Sextus .

Ստորոգականն եզրն բաժանի յեզր նախահայեաց . և յերկրորդահայեաց ։ Եզր նախահայեաց է որ շարադրեցաւ առ ՚ի նշանակել զիրս ըստ ինքեանց իմացեալս ։ յմ . որ նշանակէ զիրս նախադասութեամբ և ուղղակի յըղացեալս ՚ի մտաց գործութէն . որպ . մարդ՝ զմարդկային բնութի ։ և ասի նախահայեաց . զի նշանակէ զնախկին հայեցուածս մտացն նոցին որք զանուանս իրացն շարադրեցին ։ Իսկ եզր երկրորդահայեաց է որ նշանակէ զիրս ոչ ըստ ինքեանց և նախապէս , այլ ըստ որում ենթանկանին մտացն , յորոց զարտաքինն ինչ յարմարու-

ութիւն առնուն : որպէս կոչել սեռ, տեսակ . ենթակայ . ստորո-
գեցեալ . անուն . բայ . և այլքն յայսպիսեացս . քանզի մարդ-
ինքեամբ ունի զի կենդանի բանական իցէ, որ է՛ մտկայեն բնու-
թի = և ըստ որում այսպէս նշանակէ, ասի եզր նախահայեաց =
բայց՝ զի մարդ եղիցի տեսակ, կամ ստորոգեցեալ . ունի մտօք =
և ըստ որում այսպէս նշանակէ, ասի եզր երկրորդահայեաց =

Հասարակ եզերքն երկրորդահայեացք մանաւանդ են հինգ : որք և ստորոգելիք ասին . որպէս . Սեռ = Տեսակ = Տարբերութիւն = Յատուկ = և Պատահումն =

Սեռ՝ է՛ որ ստորոգի ըստ բազմաց տեսակաւ տարբերեցելոց՝ 'ի ներքում զինչէին = որպէս կենդանի ստորոգի զմարդոյ . զձիոյ, զառիւծէ = ասացաւ ըստ բազմաց տեսակաւ տարբերեցելոց = քանզի մարդ, ձի, առիւծ, տարբերին 'ի միմեանց ոչ միայն թուով որպէս . անհատականօք տարբերութեամբք . այլ և տեսակաւ . որպէս . տարբերութեամբք ենթանականօք և տեսակարարօք = ասացաւ 'ի ներքում զինչէին = քանզի 'ի հարցանելն . զինչ է՛ մարդ . պատասխանեմք սեռին թէ կենդանի = Եւ որոյ 'ի ներքում զինչէին ստորոգելն՝ նշանակէ զստորոգելն էութենաբար . որպէս . էականաւ ըստ ինքեան գոլոյ . որպէս ստորոգի կենդանի զմարդոյ, և մարմին զկենդանւոյ = այլ ոչ էականաւ յարանունութեամբ, կամ յեղանցութեամբ . որպէս ստորոգի բանականն զմարդոյ . և պատահումն զենթակայէ =

Սեռ՝ եռակի է՛ . գերագոյն . վերջագոյն . և միջին : Գերագոյն որ և ասի սեռականագոյն՝ է՛ քան զորս վերայ ոչ գոյ այլ վերանցեալ սեռ = Վերջագոյն՝ է՛ քան զորս զկնի ոչ գոյ այլ վայրանցեալ սեռ = Իսկ՝ միջինն որ և ասի ընդմիմեամբ՝ է՛ գեր քան զոր . և յետ որոց գոյ այլ սեռ = որպէս երևի յայսմ գծագրականն շարադրութեան =

| | | |
|---|---|---|
| Մարմնաւոր . | Գոյացութի՛ւն . | Հոգևոր . |
| Բուսական . | Մարմին . | Անբոյս . |
| Զգայական . | Բոյս . | Անզգայական . |
| Շնչաւոր . | Զգայուն . | Անշունչ . |
| Բանական . | Կենդանի . կմ . շնչաւոր զգայուն . | Հաշողական . |
| Այր . | Մարդ . | Այն . |

Արիստոտէլ ։

՚Ի շարադրութեան՝ Գերագոյն սեռ , որ ասի սեռականագոյն՝ է՛ գոյացութի ։ Վերջագոյն՝ է՛ կենդանի ։ Միջինքն և ընդմիմեամբքն՝ մարմին . բոյս . զգայուն ։

Տեսակ՝ է՛ որ ստորոգի զբազմից տարբերեցելոց թուով ՚ի ներքուստ զինչէնն ։ որպէս մարդ , որ ստորոգի զպետրոսէ և զպօղոսէ ։ ասի զբազմից տարբերեցելոց թուով . կմ՛ որոշելոյ զսեռն . որ ստորոգի զբազմից տարբերեցելոց տեսակաւ .

Տեսակն՝ է՛ եռեակ ։ Գերագոյն՝ քան զոր ո՛չ եղիցի այլ վերանցեալ տեսակ ։ Վերջագոյն՝ քան զորոյ զկնի ո՛չ եղիցի այլ վայրանցեալ տեսակ . և այս է միայն յատկագոյն տեսակ . որ և ասի տեսակագոյն ։ ՚Միջինն՝ վեր քան զոր և յետ որոյ այլ գոյ տեսակ . և ասի ընդմիմեամբ ։ Իսկ՛ տեսակք գերագոյնն և ընդմիմեամբքն յատկապէս ո՛չ գոն տեսակք ։ քանզի

ունին

ունին զերկուս յարաբերութիւնս . մինն առ 'ի յառաջ քան զնոցայն . ըստ որում տեսակք ասին գոլ . և միւսն առ 'ի զկնի նոցայցն . ըստ որում և սեռք ասին ։ ոչ յառաջագրեալ շարադրութեն յայսմանի ։ ներքուստ գերագոյն տեսակն է՝ մարմին ։ տեսակագոյնն՝ մարդ ։ այլ ընդմիմեամբքն՝ բոյս . զգայուն . կենդանի ։ բայց մարմին . բոյս . զգայուն . և կենդանի՝ յարաբերութբ առ յառաջ քան զնոցայն՝ զոր տեսակք ։ յարաբերութբ առ 'ի զկնի նոցայն՝ սեռք ։ Եւ՟ որոյ նախադասեն ո՛չ են տեսակք ։

Տարբերութիւն է՝ որ ստորոգի զյոլովից տարբերեցելոց կամ տեսակաւ . կամ թուով 'ի ներքուստ որպիսի ինչէին ։ ասացի՝ տարբերեցելոց կամ տեսակաւ կամ թուով ։ քանզի երկեակ է տարբերութիւն . մինն ընդդիմեամբ որ և սեռական ասի . որով մի սեռ զանազանի յայլմէ . և սա ստորոգի ըստ բազմաց տարբերեցելոց տեսակաւ ։ Իսկ միւսն է՝ տեսակագոյն կամ տեսակարար և վերջին . որով մի տեսակ զանազանի յայլմէ ընդ նոյն սեռիւ . և ստորոգի զյոլովից տարբերեցելոց թուով ։ ասացի՝ 'ի ներքուստ որպիսի ինչէին . վ՟ զի 'ի ներքուստ զինչ էինն նշանակէ . զտարբերութիւն գոլ մասն էութենական և բաղկացուցիչ ։ և 'ի ներքուստ որպիսին նշանակէ . զնոյն տարբերութիւն ստորոգիլ ածական անուամբ . և ոչ գոյականաւն ։ որպէս . բանական ։ ոչ վերոյգրեալ գոյացութենական շարադրութիւն ցուցանէ . յորում տեսակագոյն տարբերութիւնքն են բանական . և հաչողական . և այլքն որ ստորոգին զյոլովից տարբերեցելոց թուով ։ Իսկ ընդդիմեամբ տարբերութիւնքն , յո՟ սեռականքն՝ են այլքն ամէն . որք և ստորոգին ըստ բազմաց տարբերեցելոց տեսակաւ ։

Յատուկ է՝ որ ստորոգի ըստ յոլովից ՚ի ներքոյ տեսակին, չ իսկ հարկաւորապէս և հակադարձաբար = որպէս ծիծաղականն է՝ յատուկ մարդոյ . և ստորոգի ըստ ամ(ենայն) միոյ հարկաւորապէս և հակադարձաբար . մինչզի ստորագրեալ ամ(ենայն) մարդումն . միայնում . և միշտ = և ընդ մարդոյն հակադարձի . քանզի թէ մարդ է՝ . ծիծաղական է = և թէ ծիծաղական է՝ . մարդ է =

Պատահումն է՝ որ ստորոգի ըստ բազմաց ՚ի ներքոյ ո- պէսն ոչ հարկաւորապէս , այլ պատահաբար = կամ է՝ որ առընթեռլինի և բացալինի առանց ենթակային ապականութեան = որպէս . սպիտակ . սեաւ . և այլ =

Եւ դարձեալ գիտելի է . թէ ամ(ենայն) եղելոց նախահայեացքն յառաջեալ են ՚ի տասն գլուխս . կամ ամ(ենայն) ՚ի տասն գերագոյն սեռս . որք ասին Ստորոգութիւնք =

Եւ որք՞ Ստորոգութիւն է՝ դասակարգ ինչ շարադրութիւն բազում ընդհանրական սեռից . մինչև ՚ի վերջին տեսակն ընդ միով սեռականագոյն սեռիւ = իսկ այս՝ տասն ստորոգութիւնս է՝ Գոյացութիւն = ա . Որակութիւն = բ . Քանակութիւն = գ . Առ ինչ = դ . Ուր = ե . Երբ = զ . Կալ = է . Ունել = ը . Առնել = թ . Կրել =

Գոյացութիւն է՝ որ ըստ ինքեան ենթակայանայ . և ոչ յենթակայութեան . որպէս . մարմին . կենդանի . մարդ = իսկ այլքն ստորոգութիւնքն յենուն ՚ի սոյն գոյացութեան = որ բաժանի ՚ի նախկին . և յերկրորդ = նախկին գոյացութիւն զոր անհատքն = որպէս . պետրոս . պօղոս = Երկրորդն զոր սեռքն և տեսակքն = հիբար . կենդանի . մարդ =

Որակութիւն է՝ ըստ որում ընդունօղքն՝ որակք ասին . կամ

որպէս

որպիսիք ։ ո՞րպակ ․ սպիտակութիւն ․ ջերմութիւն ․ և այլ ։ քանզի 'ի հարցանելն՝ թէ որպիսի է որմն ։ պատասխանեմք ․ թէ սպիտակ ։

Քանակութիւն՝ է պատահումն զիրսն լայնացուցանօղ ․ որով իրքն ասին քանակք ․ կամ որքանք ։ հի՞ նէն ․ միթզաչափ ․ երկութզաչափ ։ Զօրութ՝ բաժանի 'ի շարունակ ․ և անջատորոշ ։ Շա_րունակ քանակութիւն՝ է որ ունի զմասունս շարամանեալս և զմակարդակեցեալս ։ որպէս ․ գիծ ․ մակերևութիւն ․ մարմին ։ Անջատորոշ՝ է որ ունի զմասունսն զբաժանեալս որպէս թիւ ։

Առնչ՝ է ըստ որում մինն յարաբերի առ միւսն ։ որպէս ․ հայր առ յորդի ։ պատճառելի առ պատճառ ։ մակացութիւն առ մակացելի ։

Ուր՝ է գոլ 'ի տեղի ․ հի՞ բաց ․ 'ի տան ։ 'ի տաճարի ։ վեր ․ վայր ․ և այլ ։

Երբ՝ է գոլն 'ի ժամկի ։ որոյ տարբերութիւնքն են՝ ներկայ, անցեալ, ապառնի ։

Կալ՝ է շարադրութիւն և դասութիւն ինչ մասանց մարմնոյն որ կայ 'ի տեղի ․ որպ նստիլ ․ ընկողմանիլ ․ և այլ ։

Ունել՝ է արտաքին ինչ յենումն միոյ մարմնոյ առ միւսն ։ որով ոմն յարմարանի այսպէս կամ այնպէս տրամադրակայել ։ որպ զինուորեալ ․ զգեցեալ ․ և այլ ։

Առնել՝ է արարողութիւն որով առնօղ ասի զինչ ներգործել ։ որպ ջեռմարարութիւն ըստ որում լինի 'ի հրոյ ջեռուցանողին ։

Կրել՝ է արարողութիւն որով ինչ ներգործիլ ասի ։ որպ ջեռմացութիւն ըստ որում առնանի 'ի փայտն որ կրէ ։

Յաղագս Ստորադասութեանց եզերացն։ Եւ մանաւանդ յաղագս ենթադրութեան։

Գլուխ. Է։

De Terminorum Affectionibus, & præcipuè de Suppositione.

Articulus Septimus.

Մինչև ցայժմ՝ յաղագս անջատման, և ծանօթութեան եզերացն ընձեռեցաք։ այժմ պարտ է զնոցայսն ստորադասութիւնս և յատկութիւնս ուսուցանել։ քանզի յատկութիւքն՝ նոցին բնութեան հետևին։ Իսկ՝ մանաւանդ եզերաց ստորադասութիւն և յատկութիւն՝ է՝ ենթադրութիւն։ որ այսպէս ՝ի Ստորաբանականացն սահմանի։

Ենթադրութիւն՝ է՝ առումն եզրին փոխանակ նր, զոր պարտ է՝ նշանակել ՝ի նախադասութեան։ Իբրու զաղափարաւ. փիլիսոփայ՝ նշանակէ զարիստոտէլ. և առաքեալ՝ զնէն պօղոս։ Եւ զի անուանքդ՝ փիլիսոփայ և առաքեալ ՝ի նախադասութեան առնանին և ենթադրին փոխանակ Արիստոտէլի, և որքոյն պօղոսի։ Ասմի առումն և այլքն. քանզի ըստ Արիստոտէլի յառաջին գիրսն էլէնքոց. զանուանս ենթադրել առոր նմք, փոխանակ իրերաց զորս առ ՝ի մինճաբանութիւն ոչ կարեմք առբերել։

Առաջին անջատումն. Ենթադրութիւն բաժանի ՝ի նիւթաւոր և ձևաւոր։ նիւթաւոր ենթադրութիւն՝ է՝ առումն եզրին վասն իւրեան ինքեան. և ոչ փոխանակ իրի ինչ զոր նշանակելոյ։ որպէս. մարդ է՝ անուն։ կամ մարդ է՝ մե. վաղառութի։ յայսմ նախադասութեանս. մարդ՝ ենթադրի նիւթաւորապէս. զի առնանի վասն իւրեան ինքեան. այ. ըստ որում

մարդ՝ է՛ ձայն ինչ նշանական . կամ մի փաղառութիւն . ոչ ըստ որում է՛ կենդանի բանական ։

Ենթադրութիւն տեսակաւոր է՛ առումն եզրին փոխանակ իւր նշանակելոյ ։ որպէս յորժամ ասեմ, թէ մարդ է կենդանի ։ կամ քար է՛ մարմին ։ այժմ մարդ՝ ոչ ենթադրի նիւթաւորապէս փոխանակ ձայնին . այլ տեսակաւորաբար փոխանակ իւր ձայնիւն նշանակելոյ ։ այսինքն . փոխանակ մարդկային բնութեան ։

Երկրորդ անջատումն . նիւթաւոր ենթադրութեանն՝ ոմն է՛ ներքին . ոմն արտաքին ։ Ներքին նիւթաւոր ենթադրութիւն է՛ առումն եզրին ըստ ինքեան . և ըստ որում բնականաբար նշանակէ . այլ ոչ ըստ շարադրութեան ։ որպէս առիւծ է՛ ձայն ։ քանզի թէ այս եզրս ։ առիւծ . ձայն իցէ . ոչ ունի 'ի շարադրութենէ . այլ ինքեամբ և իւր բնութեամբ ։ Արտաքինն է՛ առումն եզրին ըստ ինքեան . և ըստ որում ոչ բնականաբար նշանակէ . այլ ըստ ներգործութեան մտացն . որպէս . առիւծ է՛ անուն կամ տեսակ . և այլն ։

Երրորդ անջատումն . տեսակաւոր ենթադրութեանն՝ ոմն է՛ յատուկ . ոմն անյատուկ ։ Անյատուկն՝ է՛ առումն եզրին . ըստ որում անյատկապէս նշանակէ . և ըստ նմանութեան ինչ ։ որպէս ցուցանելով զմարդ ոմն անորոշ . ասեմ թէ այս մարդ է՛ Ներոն ։ կամ զզօրեղն ցուցանելով . ասեմ թէ այս է՛ մի առիւծ ։ աստ ներոն, և առիւծ՝ անյատկապէս ենթադրին և ըստ նմանութեան ։

Ենթադրութիւն տեսակաւոր յատուկն՝ է՛ առումն եզրին . ըստ որում յատկապէս նշանակէ ։ որպէս . մի անորոշ կայսր՝ ներոն անուն ունէր . և մի զօրեղ անասուն կոչի առիւծ . այժմ ներոն, և առիւծ՝ յատկապէս ենթադրին ։

ծխա Զոր

Չորրորդ անջատումն ենթադրութեան տեսակաց որ յատուկն բաժանին 'ի հաստատական և յեզական։ Հաստատական է' առումն եզրի հաստատականի ըստ իւրոց ստորագունիցն = որպէս . եթէ մարդ ընթանայ = յայս տեղիս՝ մարդ հաստատականաբար ենթադրի . զի . ըստ ամենայն անհատից մեկոյ = եզական ենթադրութիւն է' առումն եզրին վասն միոյ անհատական իրի = որպէս . պետրոս ընթանայ =

Հինգերորդ անջատումն . հաստատական ենթադրութեան բաժանի 'ի պարզական . անձնաւորական . և բացարձակ = պարզական ենթադրութիւնն՝ է' առումն եզրին հաստատականի ըստ իւրոյ անմիջական նշանակութեան : զի . ըստ իւրն նախապէս նշանակելոյ = որպէս յորժամ ասեմ թէ մարդ է' տեսակ . կենդանի է' սեռ . 'ի նախադասութիւնդ՝ մարդ , և կենդանի պարզապէս ենթադրին = քանզի ոչ ստորասի , զայս մարդս գոլ տեսակ : և ոչ զայս կամ զայն կենդանին գոլ սեռ = բայց ստորասի , տեսակ գոլ զընդհանուր մարդ , զոր անմիջաբար նշանակէ ձայնս , մարդ =

Անձնաւորականն է' առումն եզրի հաստատականի . ըստ իւրոյ միջական նշանակութեան . որպէս յայսմ նախադասութեան . եթէ կենդանի ընթանայ . եթէ մարդ ծիծաղէ = ենթակայքն նախադասութեցդ ոչ ենթադրին պարզապէս . այլ անձնաւորաբար . զի . կենդանի և մարդ այժմ առնանին ոչ ընդհանուրք որպէս անմիջաբար նշանակեն : այլ մասնականաւ ըստ այս մարդոյս . ըստ այն կենդանւոյն , զորս նշանակեն միջապէս . զի . միջնորդութեամբ ընդհանրական բնութեան =

Բացարձակն՝ է առումն եզրին ըստ իւրոյ նշանակութեան միջականին և անմիջականին . որպէս . մարդ է' կենդանի = ենթակայն նախադասութեան այսորիկ որ է' մարդ . ենթադրի բացարձակապէս : քանզի որպէս ընդհանուր մարդ է' կենդանի = այսպէս և

մասնաւորին անհատին մարդոյ։ Գոն և այլ բաժանմունք եղելոց յատկութիւնք և տրամադրութիւնք. զորս թողումք։ Եւ ոչ զի կամ փոքր ինչ կամ ոչինչ են պիտանացուք։

## Յաղագս սահմանի. թէ զինչ. և որքանա— ցար իցէ սահմանն։

Գլուխ. Ը։

## De Definitione: Quid, & Quotuplex sit Definitio.

## Articulus Octauus.

Թէպէտ և սահմանն կարէ առ բերել առ երկրորդ մասաց ներգործութիւն։ Եւ ոչ զի բազումս անգամ սովոր եմք բացատրել զսահմանն նախադասութեամբ որ է՝ յատուկ երկրորդ ներգործութեան մասաց։ այլ սակայն նախապէս և մանաւանդ պատկանի սահմանն առ առաջին մասաց ներգոր ծութիւն։ Քանզի ուսուցանէ արտայայտել յերկրորդ գիտն վերջնոց. թէ ՚ի սահմանումս ոչ դնի գոլ. և ոչ՝ ոչ գոլ։ նոյն յորժամ ՚ի բանսն ոչ դնի գոլ. և ոչ՝ ոչ գոլ. այդ է միայն առաջին մասաց ներգործութիւն. ապացուցանեմ սահմանն՝ առ առաջին մասաց ներգործութեան պատկանի։ ուստի նա վարդա պետութիւն առ առաջին մասն ներգործութեան տրամաբանականի. ոչ առ երկրորդն։ Նայ և, զի սահմանն՝ յայտ առնէ զէութիւն իրին. նոյն յայտնութիւն իրողութեանցն յատկապէս և նախա պէտաբար է գործ առաջին մասաց ներգործութեան. որ է՝ նախ կնին իմացումն էնթակայնին թարց ստորասութեան կամ բացա սութեան։ ապացուցանեմ և այլ։

Եւ որ՝ սահմանն է բան նշանակիչ ինչէութեան որ է ինչ։ այս պէս արտայայտել յերկրորդ գիտն վերջնոց։ Որ. է՝ բան յայտնիչ էութեան էնթակայի իրին։ բան ասացեալ. որ. համառօտութեամբ բաց

գում բառից։ Վասն զի մի բառ ոչ բաւական է սահմանութեան։ Եւ իմաստաւոր է. զի սահմանն պարտի բացայայտել զէութիւն են-թակայ իրին որոշաբար, և յայտնապէս։ Արդ՝ իւրաքանչիւր էութիւն ունի զինչ որով հաղորդի ընդ այլոց էութեանց. և զինչ որով տարադասի յայլոցանէ։ Օրին. մարդ ունի զկենդա-նի, որով հաղորդի ընդ ձիոյ. և զբանականն, որով զանա-զանի ի նոցանէ։ Վասն այսորիկ սահմանութեան ոչ նմանապէս բաւէ զերկու բառս պահանջանայն։ զի միովն յայտնեսցի հաղորդակ-ցութիւն, և միւսովն զանազանութիւն ընդ այլ էութեանց։ Բ. Զի սահման նշանակէ զէութիւն ենթակայ իրին. զի սահմանն տարբերեսցի յայլոց բանիցն, որք զիւրն էութիւն ոչ նշանակեն։ Գ. Հաւասարեսցի։ Թէ սահմանն ոչ կարէ սահմանել ինքեամբ, և ոչ այլով զանազան սահմանաւ։ Այլապէս և ոչինչ կր-կին կարող է սահմանել։ Եզրակացութիւն յայտ է։ Իսկ զառաջարկութիւն ըստ առաջին մասին հաստատեցուցանեմք։ զի սահմանն պարտի նմանապէս զանազանել ի սահմանելոյն զօ-րոյ էութիւն յայտ առնէ։ Ուստի այսք ոչ գոն սահմանք. մարդ է մարդ. և կենդանի է կենդանի։ Այլապէս ոչ կարէ սահ-մանն ինքեամբ սահմանել։ Հաստատեցուցանեմք և ըստ եր-կրորդ մասին։ Քանզի եթէ սահմանն այլ սահմանաւ սահ-մանիցի, նոյն և սահմանեալ սահմանելին այլով սահմանաւ պարտ էր սահմանել։ և այսպէս առաջանայցէ յայսոսիկ մինչ ի յան-հունս, որ է յոյժ անտեղի։

Վասն պատասխանատրութեան նախ գիտելի է. թէ սահ-մանն զանազանի ի սահմանելոյն ոչ ըստ ենթակայութեան իրին. այլ ըստ մակածութեան. և ըստ կերպի նշանակե-լոյ։ Վասն զի սահմանն պատմէ զէութիւն իրին. իսկ էութիւն ոչ տարբերի ենթակայաբար ի նմանէ որոյ է էութիւն։ Օրին. մարդ ի կենդանւոյ բանականէն։ այլ տարբերի միայն ըստ մակա-

մածու-

մտածութեան, և զանազան կերպին նշանակելոյ։ մինչ զի մարդ. որ է՛ սահմանելին. նշանակէ զնոյն էութիւն անյայտապէս։ իսկ կենդանին բանական, որ է՛ սահման. զնոյն էութիւն նշանակէ պարզագոյնաբար։

Հարց՝ պատասխանեմ ձեռնարկութեանն, մեկնելով զառաջարկութիւն. Թէ սահման ոչ կարող է՛ սահմանել ինքեամբքն, ըստ նոյն կերպին նշանակելոյ. հաստատեմ։ քանզի ոչ բարւոք ասի. Թէ սահմանն է սահման։ ոչ կարող է՛ սահմանել ինքեամբքն ըստ զանազան կերպին նշանակելոյ. սուտ ելով. Թէ սահմանն է՛ բան յայտնիչ գոյացութեան իրի. ուրանամ։ յորմէ ոչ հետևի արտաքերութիւն յանբաւս։ քանզի սահմանին սահմանող՝ իբր պարզ յայտնութիւն էութեան իւրեանց ինքեանն. ոչ կարօտի այլոյ սահմանին։

Եւ դնի՛ սահմանս այն. ոմն է՛ էութենական. ոմն պատահական։ էութենականն որ մանաւանդ և տիրաբար ասի սահման՝ է՛ բան յայտնիչ էութեան ենթակայ իրին ՚ի ձեռն բաղկացուցիչ և էութենական ստորոգելոց. որպէս. սեռին, և բաղկացուցիչ տարբերութեան։ որպէս. կենդանին բանականն է՛ էութենական սահման մարդոյ։

Հարց՝ սեռ ասի այն. որով սահմանեալ էութիւն հաստատի էութենաբար ընդ այլսն. որպէս ՚ի մարդոյ սահմանութեան սեռ է՛ կենդանին, որով մարդն էութենաբար հաստատի ընդ ձիոյ. ընդ առիւծու. և ընդ այլ կենդանիսն։ Իսկ՝ բաղկացուցիչ տարբերութիւն կոչի այն. որով սահմանեալ իրն էութենաբար և նախապէս զանազանի յայլ իրաց. որպէս ՚ի նոյն սահմանութեան մարդոյ. բաղկացուցիչ տարբերութիւն է՛ բանական. որով մարդն նախապէս արտադասի յանասնոց. և նա ՚ի հրեշտակաց. որք նոյնպէս ոչ ասին բանաւորք. այլ պարզ հայեց

մամբ իմացականք. քանզի ոչ տրամաբանէին երեւակայութե՟ որպ՟ մարդիկն = այլ գերազանցաբար սոսկալիս հայէին. որպ՟ յամենաբանութե՟ն կատարելապէս ուսուցանէ.

Հասցի. որով նախապէս և էութենաբար զանազանի յայլոց. զի մարդն կարէ և յատկութե՟. որպ՟. ծիծաղականութե՟ն, արտադատել յայլոցն = Իսկ՝ ծիծաղականն որ է յատկութի՟ բղխեալ յէութենէն մարդոյ. ոչ է՝ և ս բաղկացուցիչ տարբերութի՟ նր՟ = զի մարդն՝ ծիծաղականութե՟ն ոչ տարբերի յայլոց կենդանեացն նախապէս և էութենաբար. այլ երկրորդապէս, և յատկաբար = քանզի յատկութի՟ն գտանէ զէութի՟ նորին կատարելապէս զբաղկացեալ.

Պատահական սահմանն, որ տիրաբար կոչի ստորագրութի՟ է բան նշանակիչ բնութե՟ էնթակայ նորին՝ ՚ի ձեռն պատահական ստորոգելոց = Իսկ՝ պատահական ստորոգեալքն են այնոքիկ. որք ոչ բաղկացուցանեն զնոյն էութի՟ն. այլ զհետևեթան առ այն, զոր գտանեն կատարելապէս և էութենաբար զբաղկացեալ: որպ՟. մարդոյ ստորագրութի՟ն է ծիծաղական ուղղորդապնաց երկոտանի =

Եւ դարձեալ էութենական սահմանն անջատի ՚ի ֆիզիքայինն. որպ՟. բնական. և մետաֆիզիքայինն. որպ՟ համաբնական = Ֆիզիքայինն սահմանն՝ է որ յայտնէ զբնութի՟ էնթակայ նորին ՚ի ձեռն ֆիզիքայինն մասանցն. որք են նիւթ և տեսակ նորին = որպ՟ ՚ի մարդումն՝ հոգի և մարմին. որք միացեալք բաղկացուցանեն զֆիզիքայինն բնութի՟ մարդոյ = Մետաֆիզիքայինն սահմանն՝ է որ բացայայտէ զնոյն բնութի՟ն ՚ի ձեռն մետաֆիզիքայինն մասանցն. որք են սեռ և տարբերութի՟ նորին = որպ՟ ՚ի մարդումն կենդանի և բանական. որք միացեալք բաղկացուցանեն զմետաֆիզիքայինն էութի՟ մարդոյ =

Իսկ՝

Իսկ՝ ստորագրական սահմանն . որ . ստորագրութիւն՝ եւս երկուին լինի ։ մինն որ ընտանեբար ստորագրութիւն անուանի ։ է որ բացայայտէ զէութիւն իրին յատկութեամբքն . որ . յատուկ պատահմամբքն , որք յէութենէն արտաբերեալքն . իբրու զաղափարէ . մարդ է զարմանալին որ ծիծաղական ։ այս է՝ ստորագրութիւն մարդոյ . զի զարմանք եւ ծաղր՝ արտաբերեալքն՝ ի մարդոյ էութենէն ։ միւսն՝ որ է անկատար ստորագրութիւն . եւ իս կայես ասի ծառք . է որ նշանակէ զիրն հասարակ պատահմամբք . որք յէութենէն ոչ արտաբերեալքն ։ իբրու թէ ասէի . մարդ է ուղղորդագնաց երկոտանի ։

Արդ՝ բազումք են որք գոն պիտանացուք առողջութեան սահմանին զորս առ բերէ արիստոտէլ՝ ի վեցերորդ գիրս թօբիգօրում . որ թարգմանի գիրք տեղականաց ։

Նախ խնդրի, թէ սահմանն եղիցի ծանօթագոյն քան զսահմանեալն ։ եւ պատճառն է՝, զի սահմանն հնարեցաւ առ՝ յայտնապէս բացայայտել զէութիւն սահմանելոյն ։ ապա՛ արդեօք ուրեմն ծանօթագոյն պարտ է զոլ քան զսահմանեալն ։

Երկրորդ խնդրի, թէ սահմանն անդրադարձցի ընդ սահմանելոյն . մինչ զի ոչ եղիցի սահմանն ընդհանրականագոյն կամ մասնականագոյն քան զսահմանեալն ։ սաստուգանելի են այսք մերոյ սահմանքս . մարդ է՝ կենդանի . կամ մարդ է՝ կենդանի բանաւոր մահկանացու ։ քանզի նախկինն՝ է հասարակագոյն . եւ վերջինն՝ մասնաւորագոյն քան զմարդն ։ Վասն որոյ ոչ անդրադարձեալն ընդ մարդոյ ։ զի ոչ՝ որք միանգամ են կենդանիք . գոն մարդ ։ եւ ոչ որք միանգամ գոն մարդ . են կենդանի բանաւոր մահկանացու ։

Երրորդ . թէպէտ սահման եւ սահմանելին անդրադարձեալն առ միմեանս ։ սակայն յառաւելութեան եւ նուազութեան եղա-

ծխոդ նի եւս

նի և ս յոռութեն սահմանենն ։ յաւելոյ է սահմանն . յորժամ
ընդունի զպարտաւորութիւն . որպ . մարդ է կենդանի բանական
քանակ ։ և նոյնպէս . յորժամ ոչ բացայայտէ հուպ սեռին .
այլ հեռաւորն ։ որպ . մարդ է գոյացութի բանաւոր ։ Իսկ ուսանի
երևի , թէ սահմանն է բան համառօտ ; վն զի հուպ սեռն
միայնոյ առաբերեցելոյ . և հեռաւորքն ներքսայէս առդիցե_
ալք ի սահմանին ։ քանզի սակլոյ . մարդ է կենդանի բանաւոր , իմա_
նի զոլ և ս գոյացութի . մարմին . բոյս . զգայուն . շնչաւոր ։
զի զամենեսեան պարունակէ կենդանին ։ և այսոքիկ յաղագս
առաջին մասին Ներածութեան ։

## ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍՆ.

### Յաղագս երկր. մտաց ներգործութե . յի .
### Յաղագս Նախադասութեան ։

## SECVNDA PARS.

### *De ſecunda intellectus Operatione : hoc eſt, De Propoſitione.*

Երկրորդ մտաց ներգործութիւն ոչ այլ ինչ է . բայց թէ դա_
տումն մտաց . որով երկու եզերք պարզ միտառութեամբ
ըմբռնեալք . բաղադրին կամ տրոհին , ստորասութեաք , կամ
բացասութեաք ։ սաստուտ լինի . թէ ենթակայ երկրորդ մտաց
ներգործութեան պանի բացերևութի ; կամ նախադասութի .
վն զի յորժամ միաքն ենթադասեաց , իբրու պնդափակաւ .
թէ որմն է սպիտակ . կամ ոչ է սպիտակ . սակս ձայնին զնոյն

ենթադրութեամբ բացերևեցելոյ՝ նախադասութե, մանաւանդ թէ նոյն պէս է. կամ ոչ է:

## Թէ զինչ իցէ բացերևութի, և նախադասութի: Եւ որքանապատիկ բաժանմանցն.

## Գլուխ. Ա:

## *Quid ſit Enunciatio, ſiue Propoſitio. Et quotuplex eius Diuiſio.*

## Articulus Primus.

Նախադասութի է՛ բան կատարեալ. որ զճշմարտութի կամ զսուտութի բացերևեցէ: բան ասացաւ՝ փոխանակ սեռի, և բառնի՛ն հաւասարի նախադասութեիս ընդ այլ բանս՝ կատարելոյն և անկատարս: Ասեմ՝ բանն, ըստ որում սահմանն յարմարեցելէ յառաջնն գիրս պերիարմէ_նեաս, է՛ ձայն նշանական ըստ կամաց. որոյ մասունքն զատե_ալք զմի ինչ նշանակեն: որպէս. մարդ է՛ սպիտակ:

Ասացաւ՝ կատարեալ և այլքն՝ փոխանակ տարբերութե: քանզի բանն՝ երկեակ է՛. կատարեալ և անկատար: անկատարն է՛ որ ծնանի զանկատար նշանակութի ի միտս լսողին: որպէս. մարդ կենդանի: որպէս սպիտակ: եթէ են կնայի: և նմանք սո_ցին. յորս ոչ դադարի անձն լսողին. այլ յերկբայս լինի: Կատ_արեալն՝ է՛ որ զկատարեալ նշանակութի ծնանի. և ներունակ կայ շարամանութի, կամ տրոհութի եղելոցն. և անձն լսողին դադարի: որպէս. մարդ է կենդանի: որպէս է՛ սպիտակ:

Ասացաւ՝ որ զճշմարտութի կամ զսուտութի բացերևեցէ. զի կատարեալ բանն՝ եւս երկեակ է: ոմն բացերևական, որ սահմանեցէ կամ բացասացէ զինչ. ներունակ կայ ճշմարտութի, կամ սուտութի: որպէս. մարդ է կենդանի: մարդ ոչ է կենդանի:

և ոչ անբացերևականն. որ է ըղձականն. կամ հարցականն. կամ հրամայականն: և ոչ սուտ. և ոչ ճշմարիտ բացերևեցէ: Օր. պետրոս գնայց թէ ոչ: զքեզ սիրեմ: ով թէ զքեզ սիրէի:

Բայց՝ յայնժամ նախադասութիւն զճշմարտութիւն նշանակէ. յորժամ համաձայնի և համգիտանայ իրուն զորմէ ենթադրա-տէ: Օր. յորժամ այսպէս իրն ունի զինքն. որպէս կնշանակէ բացերե-եցեալք. Իսկ՝ յայնժամ զսուտութիւն. յորժամ ոչ համգի-տանայ. և ոչ իրն ունի զինքն այսպէս, որպէս կնշանակէ բացերևե-ցեալք: Օր. մարդ ոչ է կենդանի:

Որդ՝ բացերևութիւն այս ինքն. նախադասութիւն երկեակ է՝. միոյն ստորոգականն և պարզ, միւսն ստորադրականն և բաղադրեալն: Ստորոգականն՝ որ 'ի վերոյ ասացաք, է որ ունի զենթակայն. զստորոգեալ. և զկապումն. իբրև. զգլխա-ւոր մասունս իւրեանց: Օր. առաքինութիւն է բարի: Ստորա-դրականն՝ է որ ընդունի զբազում ստորոգական նախադա-սութիւնս, իբրև զգլխաւոր մասունս իւր: Օր. եթէ առաքինու-թիւն է բարի. յոռութիւն է վատթար:

Եւ դարձ՝ ստորոգականն բացերևութիւն է երկեակ: միոյն բացարձակ, և 'ի գոլոյն: միւսն եղանակաւոր: Բացերևութիւն 'ի գոլոյն. և բացարձակն՝ է, որ ընդարձակաբար բացերևեցէ զինչ ներգոյութեան. կամ ոչ ներգոյն: Օր. մարդ է բանական: կամ ոչ է բանական: Եղանակաւորն՝ է որ նշանակէ զեղա-նակն. որով միոյն ներգոյ միւսումն, հն բար. մարդ է բանա-կան հարկաւորապէս: մարդ է ազատ ներընդունակաբար:

Որդ՝ նախ ասասցուք յաղագս ստորոգական բացերևութեան 'ի գոլոյն: ապա յաղագս եղանակաւորին: յետոյ յաղագս ստո-րադրականին:

Յաղագս զանազան տեսակաց ստորոգական բացերեւութեան ՚ի գոլոյն.

Գլուխ. Բ.

*De diuersis Enunciationis cathegoricæ, & in esse speciebus.*

Articulus Secundus.

Բազումք են տեսակք ստորոգական բացերեւութեան ՚ի գոյն. զորս արխատատել ընթացքն յառաջին գիրսն պէրիարմէնիաս. բայց մեք զոմանս զգլխաւորագոյնս առաջաբերցուք. թողլով զմնացեալսն.

Նախ՝ բացերեւութեանց ոմն է՝ երկրորդ առկայիւ. ոմն երրորդ առկայիւ. բացերեւութիւն երրորդ առկայիւն՝ է՛ յորում դնի ստորոգելեացն բացադրաբար եւ յայտնապէս. իբրեւ զինչ զատուցեալ ՚ի բայէն. որգոն. մարդ է՝ սպիտակ. Նախադասութիւն երկրորդ առկայիւն՝ է՛ յորում դնի ստորոգելեացն ներադրաբար եւ անյայտապէս. իբրեւ զինչ առընկալեալ ՚ի բայէն. հի զան. մարդ ընթանայ. այս է՝ ընթացօղ.

Երկու. ոմն է՝ որոշելի. ոմն անորոշելի. Որոշելին է՝ որոյ ենթակայն եւ ստորոգելեացն են որոշելի եղերք. որպէս. մրդ է՝ արդար. Անորոշելին է՝ յորում մինն յապացեալ եղերացն է՝ անորոշելի. հի կէն. ոչ մարդ է՝ արդար. կամ. մարդ է ոչ արդար.

Երրորդ. ոմն է՝ ուղղական. ոմն անուղղական. Ուղղականն է՝ յորում ստորոգեալ ստորոգելի է. եւ ենթակայի որ ենթակայելի է. եւ այս յորժամ պահի. յորժամ ստորոգելին վերադրյնքն ըստ վայրանցմունեցն. կամ զոյգքն ըստ զուգիցն. կամ պատահմունքն զենթակայիցն. վերագոյնն ըստ վայրագունիցն. օր. մարդ է՝ կենդանի. զոյգքն ըստ զուգիցն. որգոն.

ճերմ                                        մր

մդ է՛ կենդանի բանական ։ պատահմունս զենթակայիցն . որ զամն . մարդ է՛ սպիտակ ։ Անուղղական նախադասութիւն է՛ ներում ստորոգելին կամ վայրագոյնքն ըստ վերագունիցն . կամ ենթակայքն ըստ պատահմանցն ։ որպէս . կենդանին է՛ մարդ ։ սպիտակն է՛ մարդ ։

Չորրորդ . ոմն է՛ ըստ նիւթեան , ոմն ըստ պատահման ։ Նախադասութի ըստ նիւթեանն՝ է՛ ներում ստորոգեցեալն առընթերդոյ ենթակայութեն հարկաւորապէս . օր . կամ իբր սեռ . որպէս . պետրոս է՛ կենդանի ։ կամ իբր տեսակ . հն բար . պետրոս է՛ մարդ ։ կամ իբր տարբերութի . որպէս . պետրոս է՛ բանական ։ կամ իբր յատուկ . որպէս . պետրոս է՛ ծիծաղական ։ Նախադասութի ըստ պատահմանն՝ է՛ ներում ստորոգեալն առընթերդոյ ենթակայութեն ներընդունականաբար . օր . իբր հասարակ պատահմամբ որպէս . պետրոս է՛ սպիտակ ։

Հնգերորդ . ոմն է՛ նոյնական , ոմն աննոյնական ։ Նոյնական նախադասութին՝ է՛ որ ըստ նոյն բացատրեալ բանին ստորոգի զինքենէն ։ հն կէն . պետրոս է՛ պետրոս ։ մարդ է՛ մարդ ։ աննոյնականն՝ է՛ յորում ստորոգեցեալն նմանապէս զանազանեալ է՛ յենթակայէն ։ որպէս . մարդ է՛ բանական ։

## Յաղագս նիւթոյ . որակութե . և քանակութե ստորոգական նախադասութեն ։

## Պրակք . Գ ։

## De Materia, Qualitate, & Quantitate Propositionis cathegoricæ.

## Articulus Tertius.

Յերաքանչիւր ստորոգական նախադասութեն զերիս պարտիմք խնդրել ։ որ . նիւթ . որակութի . և քանակութի .

թի ։ Նիւթն է յորմէ նախադասութիւն եղանի . և գոյ եռեակ ։ հարկաւոր և բնական ։ անկարելի և հնարաւոր ։ ներընդունական և պատահական ։ Նախադասութիւն ՚ի բնական և հարկաւոր նիւթում՝ է այն ներքում ստորոգեալն ոչ կարէ ոչ յարադրել ենթակայում ։ ո̄պ. մարդ է բանական ։ Նախադասութիւն ՚ի հնարաւոր և անկարելի նիւթում՝ է ներքում ստորոգելոյն ոչ կարէ առընթերկայել ենթակայում ։ որպէս ․ մարդ է քար ։ Նախադասութիւն ՚ի ներընդունական և պատահական նիւթում՝ է՝ ներքում ստորոգելոյն կարէ գոլ և ոչ գոլ յենթակայում ։ ո̄պ. մարդ ընթանայ ։ մարդ է սպիտակ ։

Որակութի բաշխութեն՝ է ստորասութի, և բացասութի ։ Ճշմարտութի, և սուտութի ։ Արդ՝ ստորասական նախադասութիւն՝ է որոյ գլխաւոր կապութիւն ստորասէ ։ ձի կէն. ծառ է բուսական ։ Իսկ՝ բացասականն է որոյ գլխաւոր կապութիւն բացասէ ։ ձի քար . ծառ ոչ է զգայական ։ Ասացի գլխաւոր կապութիւն . քանզի երբեմն ՚ի նախադասութեան բազումք են կապմունք ։ ո̄պ. որ ոչ է՝ ընդ իս . է՝ հակառակ իմ ։ այս նախադասութիւն է՝ ստորասական. թէպէտ և բացասէ մի կապութիւն . որ ոչ է գլխաւոր ՚ի նախադասութեան ։ և կամ . որ ինչ է՝ զգայական . ոչ է՝ քար ։ այս՝ բացասական է ։ զի թէպէտ մի կապութիւն ստորասէ . սակայն գլխաւոր կապութիւն բացասէ ։ Արդ՝ գլխաւոր կապութիւն նախադասութեան է՝ այն , որ կապէ զնախնագոյն ստորոգելոյն ընդ ենթակային ։

Ճշմարիտ նախադասութի՝ է՝ որ ստորասէ զայն որ գոյ . կամ բացասէ զայն որ ոչ գոյ ։ որպէս ; ձի է՝ խրխնջական ։ խրխնջականն ոչ է բանականութիւն՝ սուտն է, որ բացասէ զոր գոյ ․ կամ ստորասէ զոր ոչ գոյ ։ ո̄պ. ձի է հաչողական ։ շուն ոչ է անբան ։

Քանակութիւն նախադասութեանցն է՝ որով նախադասութիւն առանձնակէ կամ զմինն. կամ զամենս. կամ զոմանս. կամ զոչ միոյն: Վասն որոյ քառեակ է նախադասութիւն: ընդհանրական. մասնաւոր. անորոշական. և եզական: Իսկ՝ ընդհանրականն՝ է որոյ ենթակայն է հասարակ եզր, ընդհանրութեան նշանաւ տրամադրեալ: Օրինակ՝ ընդհանուր նշան է այսպիսի: ամ. ոչ ոք. և նմանք սոցին: որպէս. ամ մարդ է կենդանի: ոչ ոք ձի է բանական: Մասնաւոր նախադասութիւն է որոյ ենթակայն է հասարակ եզր ընդ մասնաւոր նշանաւ. այսինքն. ոմն. ոք. և այլ: որպէս. ոմն մարդ է փիլիսոփայ: Անորոշականն է յորում ենթակայն է հասարակ եզր ոչ ինչ նշանաւ բացորոշեալ: որպէս. մարդ ընթանայ: Եզականն է որոյ ենթակայն կամ է անհատ. որպէս. Պետրոս ընթանայ: կամ հասարակ եզր ընդ ցուցական նշանաւ: որպէս. այս մարդս ընթանայ:

## Յաղագս հակադրութեան բացարձակ նախադասութեանց:

## Գլուխ. Դ:

## De Oppo∫itione Propo∫itionum ab∫o'utarum.

## Articulus Quartus.

Մինչ և ցայժմ ուսուցաք զմասնաւորութիւնս ստորոգական բացերևութեան ըստ ինքեան իւրեանց խորհրդելոյն: Արդ՝ յայսմհետէ վարդապետութիւն ասասցուք յաղագս նոյն բացերևութեանցն, ըստ որում առ միմեանս յարաբերին: և նոցա յայտնապէս խմացելոց երեք ինչ պատահմանն. այսինքն. հակադրութիւն. համաձայնութիւն. և անդրադարձութիւն: Օրինակ՝ նախ ասասցուք յաղագս հակադրութեանն:

Հակադրութիւն՝ է ընդդիմակացութիւն առ միմեանս երկուց

նախա

նախադասութեանց , զնոյն ստորոգեալ , և զնոյն ենթակայն ընդդիմադրաց . որք հակակայեն կամ ըստ որակութե . կ ըստ քանակութե . կ ըստ երկաքանչիւրոյ 'ի դոցանէ : Իսկ քառեակ է հակադրութի նախադասութեցն : հակասական . ներհական . ենթաներհական . և ընդմիմեամբք :

Հակասական նախադասութիւնքն՝ են որք հակակայեն 'ի միւմեանց քանակութբ և որակութբ . մինչ զի մինն եղիցի ընդհանրական ստորասական , և միւսն մասնաւոր բացասական . կամ ընդ դէմ սորին : որպ . ամ մարդ է կենդանի . ոմն մարդ ոչ է կենդանի : Եւ ո՛չոք մարդ է կենդանի . ոմն մարդ է կենդանի : կամ հակասականք են , որք որակութբ միայն հակակայեն . եթէ երկոքեանն գոն եզականք : որպ . պետրոս է կենդանի . պետրոս ոչ է կենդանի :

Ներհական նախադասութիւնքն՝ են որք հակակայեն միայն որակութբ . մինչ զի մինն իցէ ստորասական . միւսն բացասական . և երկոքեանն ընդհանրականք : որպոն . ամ մդ է կենդանի . ո՛չոք մարդ է կենդանի :

Ենթաներհականքն՝ են որք հակակայեն որակութբ միայն. այսի զի մինն ստորասական . միւսն բացասական . բայց երկաքանչիւր ոք մասնաւոր : որպէս . ոմն մարդ է կենդանի . ոմն մդ ո՛չ է կենդանի :

Ընդմիմեամբքն՝ են որք հակադրին միայն քանակութբ . մինն գոլով ընդհանրական . միւսն մասնաւոր . իսկ երկաքանչիւրոքն կամ ստորասական . կամ բացասական : որպ զան . ամ մարդ է կենդանի . ոմն մարդ է կենդանի : կամ ո՛չոք մարդ է կենդանի , ոմն մարդ ո՛չ է կենդանի : Աղբդ՝ ամ այսոցիկ տեսանես հակադրութեանն 'ի հետևեալ ձևոջս ցուցանելն :




՚Ի հակադրութեանցդ՝ մեծագոյն է՛ հակասականն։ ապա՛ ներհականն։ յետոյ ենթաներհականն։ իսկ՝ փոքրագոյն՝ ընդմիմեամքն։ զի ընդմիմեամք բայերևութիւքն ոչ հակադրին՝ ՚ի միմեանց ըստ ստորասութեն. և բացասութեն։ վն որոյ և ոչ ըստ ճշմարտութեն և ստութեն։ քանզի ՚ի ճշմարտութեն ընդհանրէն մակաբերի մասնաւոր ճշմարտութի։ և ՚ի մասնաւոր ստութե՝ ստութի ընդհանուր։ Արդ՝ իսկագոյն հակադրութի պատահի անդ միայն. ուր ստորասութիւն կամ բացասութիւն պատահի։

Վասն ասացելոց հակադրութեանցն չորք կանոնք առաջաբերին ՚ի տրամաբանականացն։ Առաջին կանոն է՛. թէ հա-

 կասա-

կարողական նախադասութիւնքն ո՛չ երբեք կարեն գոլ համանգամայն ճշմարիտ. Կ սուտ = այլ հարկաւորապէս եթէ մինն է՛ ճշմարիտ, միւսն է՛ սուտ = քանզի ՚ի ճշմարտութենէ միոյ եզրակացուցանեմք զսուտութիւնն միւսոյն. և անդրադարձար ձայնէս =

Երկրորդ կանոն. Ներհակական նախադասութիւնքն ո՛չ երբեք կարեն գոլ համանգամայն ճշմարիտ = այլ կարեն գոլ համանգամայն սուտ ՚ի ներընդունակական նիւթում = իսկ ՚ի հարկաւոր և յանկարելի նիւթում՝ միշտ մինն է՛ ճշմարիտ. և միւսն սուտ =

Երրորդ կանոն. Ենթաներհակականքն ո՛չ կարեն երբեք գոլ համանգամայն սուտ: բայց կարեն համանգամայն գոլ ճշմարիտ ՚ի ներընդունակական նիւթում: Իսկ ՚ի հարկաւոր և անկարելի նիւթում՝ միշտ մինն է՛ ճշմարիտ. և միւսն սուտ =

Չորրորդ կանոն. ընդմիմեալք նախադասութիւնքն՝ ՚ի հարկաւոր նիւթում, գոն համանգամայն ճշմարիտ = Արդ՝ յանկարելի նիւթում՝ գոն համանգամայն սուտ = Իսկ ՚ի ներընդունակական նիւթում եթէ ընդհանրականն է՛ ճշմարիտ. մասնաւորն հարկաւորապէս է՛ ճշմարիտ = այլ եթէ ընդհանրականն է՛ սուտ. մասնաւորն կարէ գոլ ճշմարիտ = Բայց եթէ մասնաւորն է՛ ճշմարիտ. ընդհանրականն կարէ գոլ սուտ = Իսկ եթէ մասնաւորն է՛ սուտ. ընդհանրականն հարկաւորապէս է՛ սուտ = օրինակք ո՛չ պիտոյ են Տրամաբանողին =

Յաղագս հանգիտութե բացարձակ բացերեւութե .

Պրակք ։ Ե ։

*De Aequipollentia absolutæ Propositionis .*

Articulus Quintus .

Հանգիտութի՝ է՛ զօրութի որով երկու նախադասութիւնք հակադրեալք , եւ զնոյն ենթակայն եւ զնոյն ստորոգեցեալն ընդունողք՝ հանգիտանան մերձաբերութե բացասութե ուրուք ։ այ. զնոյն նշանակութի չափեն ։ Եւ՛ս որոյ առնելեն կանոնքս այսոքիկ ։

Առաջին կանոն ։ յորժամ միում ումեք յերկուց հակասական նախադասութեանցն՝ մի նախադասեցի բացասութի ։ յայնժամ հանգիտանայ միւսում հակասականին ։ զոր օրինակ . հակասականքն զոն այսք ։ ամ մարդ է՛ սպիտակ . ոմն մարդ ոչ է սպիտակ ։ եթե ասեմ . ոչ ամ մարդ է՛ սպիտակ . ոմն մարդ ոչ է՛ սպիտակ ։ հանգիտանան ։ կամ այսպէս . ամ մարդ է՛ սպիտակ . ոչ ոմն մարդ ոչ է՛ սպիտակ ։ եւս հանգիտանան ։

Երկրորդ կանոն ։ եթե մի բացասութի ստորադասեցի ենթակայումն նախադասութե ուրուք ներհակականին . կամ ենթաներհակականին ՝ հանգիտանայ միւսում ներհակականին . կամ ենթաներհակականին ։ իբրու պաղափարաւ . ներհակականքն զոն այսք . ամ մարդ է՛ սպիտակ . ոչոք մարդ է՛ սպիտակ ։ եթե ասեմ . ամ մարդ ոչ է՛ սպիտակ . ոչոք մարդ է՛ սպիտակ ։ հանգիտանան ։ կամ այսպէս . ամ մարդ է սպիտակ . ոչոք մարդ ոչ է՛ սպիտակ ։ եւս հանգիտանան ։ Առոր՝ ենթաներհակականքն են այսք . ոմն մարդ է՛ սպիտակ . ոմն մարդ ոչ է՛ սպիտակ ։ եթե ասեմ . ոմն մարդ է՛ սպիտակ . ոմն մարդ ոչ է՛ ոչ սպիտակ ։ հանգիտանան ։

Երրորդ կանոն։ Եթէ յերկուց բացասութեցն՝ մինն նախադասի. և միւսն համանգամայն ստորադասի ենթակայում ընդմիջեալք նախադասութե ուրումն. հանգէտ լինի միւսում ընդմիջեալքն։ Օրինակ գաղափարաւ. ընդմիջեալք են սոքա. ամ մարդ է՝ սպիտակ. ոմն մարդ է՝ սպիտակ։ բայց հանդիպաման. եթէ ասեմ, ո՛չ ամ մարդ ո՛չ է՝ սպիտակ. ոմն մարդ է՝ սպիտակ։ կամ այսպէս. ո՛չ ոմն մարդ ո՛չ է սպիտակ. ամ մարդ է՝ սպիտակ։ Իսկ՝ զի զկանոնս. ի միւս աւուրն աշակերտքն շարադրեցան տողք այսորիկ։

Ստորադրին, Ներ, Ենթներհակին։

Նախադրին Հակասականին։

Նախ և սոր Ընդմիջեալքին։

Թ. Վ̄ն համգիտութե նախադասութեցն՝ բացասութի ստորադասելի է՝ ՚ի ներհակմունս. և յենթաներհակմունս։ այլ նախադասելի է՝ ՚ի հակասականունս։ Իսկ՝ յընդմիջեալքումն նախադասելի է՝. և համանգամայն ստորադասելի։

Աղորդ՝ պատճառն է՝ այս։ վ̄ն զի բացասութի զքակիչ բնութի ունի. և զոր ինչ գտանէ յետ իւր, աւերականէ և ՚ի հակակայն իւր փոխէ։ Աղ̄ այսորիկ՝ յորժամ բացասութի նախադասի ընդհանրական և ստորասական նշանին այս նախադասութես. ամ մարդ է՝ սպիտակ։ ասելով. ո՛չ ամ մարդ է՝ սպիտակ. զերկոսին նշանն ապականէ. առնելով մասնաւոր և բացասական. և համգիտացուցանէ զնախադասութիւն՝ այսմին. ոմն մարդ ո՛չ է՝ սպիտակ. որ էր հակասականն իւր։ Նմանապէս յորժամ ենթակայումն նոյն նախադասութեն ստորադասի բացասութին. ասելով. ամ մարդ ո՛չ է՝ սպիտակ. վ̄ն զի բացասութին ո՛չ գտանէ յետ իւր զընդհանուր նշանն. ո՛չ շարաբերանայ զնա։ Աղորդ՝ վ̄ն զի գտանէ զստորասութին. ապականէ զնա։ ուստի նախադասութին դառնայ ընդհանուր



բացա_

բացասական ։ և հանգիտմամբ ներհակականին իւրում . զյ . այսմին . ոչ ոք մարդ է սպիտակ ։ և նոյնպէս ասելի է վ՟ն այլոցն . որպ յայտ է՝ տրամաբանողին ։

## Յաղագս շրջադարձութե՟ բացարձակ բացերե ւութե ։

## Գլուխ . Զ ։

## *De Conuersione absolutæ Propositionis.*

## Articulus Sextus.

Շրջադարձութիւն է՝ փոխադրութիւն ստորոգելեացն ՚ի յենթակայն . և ենթակայէն ՚ի ստորոգելեացն երկուց նախադասութեցն , նոյն մնալով նոցին որակութեանն ։ որպ . մակացութիւն է՝ ունակութիւն . անդրադարձի այսպ ․ Ունակութիւն է՝ մակացութիւն ։ Նախադասութիւն , որոյ եզերքն փոփոխին . ասի շրջադարձելոյ ։ իսկ այն որ լինի յեզերաց փոփոխելոցն , ասի շրջադարձող ։ Շրջացի . փոխադրութիւն ստորոգելոյն յենթակայն . և ընդ դէմ սորին ։ քանզի սխալ է՝ , զի որ էր ստորոգեալ ՚ի յառաջարկութեն . եղիցի ենթակայ ՚ի յեզրակացութեն . և որ էր ենթակայ , լիցի ստորոգեալ ։ շրջացի . նոյն մնալով որակութիւն ։ Հ քանզի եթէ շրջադարձելոյն էր ստորասական կամ բացասական . ճշմարիտ կամ սուտ . այսպիսի և պարտի զոյլ անդրադարձողն ։

Երեք գոն տեսակք շրջադարձմանն ։ պարզ . ըստ պատահման . և ըստ հակադրութե ։ պարզ շրջադարձութիւն է՝ ներում նոյն մնայ որակութիւն և քանակութիւն . և ոչինչ լինի վերաբերութի ։ այս կերպիւս անդրադարձի միայն նախադասութիւն ընդհանուրն բացասական ՚ի յընդհանուրն բացասական ։ և ըստմասնաւորն ստորասականն ՚ի յըստմասնաւո-

որէն

որէն ստորասական ։ որպէս . ո՛չ ոք զգայուն է՛ քար . ապա ուրեմն ո՛չ ոք քար է՛ զգայուն ։ ամն մարդ է՛ ողխոսակ . ապա ուրեմն ամն ողխոսակ է՛ մարդ ։

Հանդարձադարձութիւն ըստ պատահմանն՝ է՛ յորժամ փոփոխի միայն քանակութիւն ՚ի յընդհանրականէն ՚ի մասնաւորն ։ այսպէս ըստաբոլորէն ստորասականն հանդարձադարձի յըստմասնաւորէն ստորասական . և ըստաբոլորէն բացասականն՝ յըստմասնաւորէն բացասական ։ որպէս . ամն մարդ է՛ կենդանի . ապա ուրեմն ոմն կենդանի է՛ մարդ ։ ո՛չ ոք մարդ է՛ քար . ապա ուրեմն ոմն քար ո՛չ է՛ մարդ ։

Հանդարձադարձութիւն ըստ հակադրութեան է՛ յորում մնայ նոյն որակութիւն և նոյն քանակութիւն . բայց եղերքն փոփոխին յորոշեալեացն յանորոշելիսն , վերաբերութեամբ բացասութեանց ։ և այս կերպիւ հանդարձադարձին ըստաբոլորէն ստորասականն . և ըստմասնաւորէն բացասականն ։ որպէս . ամն մարդ է՛ ծիծաղական . ապա ուրեմն ամն ո՛չ ծիծաղականն է՛ ո՛չ մարդ ։ ոմն կենդանի ո՛չ է՛ ձի . ապա ուրեմն ոմն ո՛չ ձի ո՛չ է՛ ո՛չ կենդանի ։ Արդ՝ զի կանոնքդ դիւրապէս ՚ի միտս առցին, ենթադրին հետևեալ տողքս ։

Հեղի ըստ պարզ անդրադարձման ։
Եղի՛մ փոխի ըստ պատահման ։
Աղօթք ըստ հակադրութեան ։
Այբ ստորասէ . Եչ բացասէ .
Երկոքեանքն ընդհանուրք ։
Ինի ստորասէ . Օ՛ բացասէ .
Երկոքեանքն մասնաւորք ։

Արդ՝ գիտելի է՛ թէ յերկուս առաջինն տողսն գոն երեք բառք Հեղի . Եղի՛մ . Աղօթք ։ որք ընդունին զչորս ձայնաւոր գիրս ։ Ա . Ե . Ի . Օ ։ յորոցն այբ նշանակէ զըստաբոլորէն ստորասականն ։

ոչ՛ յայտ առնեն այլ հետեւեալ առաջքն ։ եւ՛ զըստ բոլորէն բացասականն ։ եւ՛ զըստ մասնաւորէն ստորասականն ։ ո՛ զըստ մասնաւորէն բացասականն ։ եւ է՛ նշանակութիւն ․ ոչ՛ ՚ի վերայ ամենայնք ․ Թէ հեղի ․ յի ․ ըստ բոլորէն բացասականն նախադասութի , եւ ըստ մասնաւորէն ստորասականն՝ անդրադարձին պարզ անդրադարձմամբ ։ Իսկ՛ ելմ ․ յի ․ ըստ բոլորէն բացասականն , եւ ըստ բոլորէն ստորասականն՝ անդրադարձմամբ ըստ պատահման ։ բայց աղօթք ․ յի ․ ըստ բոլորէն ստորասականն , եւ ըստ մասնաւորէն բացասականն անդրադարձին ըստ հակադրութէ ։

## Յաղագս եղանակաւոր բացերեւութէ ։

## Դրուագ ․ Է ։

## *De Propositione Modali.*

## Articulus Septimus.

Եղանակաւոր բացերեւութի՝ է՛ որ նշանակէ զեղանակ որով ստորոգեալն առընթերգոյ ենթակայութեան ։ որգոն․ մղոստն է՛ մարդ հարկաւորապէս ։ պետրոս է՛ սեաւ ներըն դունակաբար ։ Իսկ՛ եղանակն՝ է՛ բացորոշումն իրին ․ եւ է՛ եռեակ ։ անուանական ․ առբայական ․ եւ բաղադրելի ։ Անուանական եղանակն՝ է՛ որ բացորոշէ զեզերս նախադասութեն ։ որպէս ․ մարդ սպիտակ ընթանայ ։ ոսկրատէս է՛ մարդ իմաստուն ։ Առբայականն է՛ որ բացորոշէ զբայն նախադասութեն ։ հիկէն ․ պետրոս ընթանայ արագապէս ։ արիստոտէլ է՛ մարդ հարկաւորապէս ։ Բաղադրելին է՛ որ բացորոշէ զբոլոր բաղադրութիւն ստորոգելոյն ընդ ենթակային ։ ոչ՛ ․ մարդ գոլ բանական՝ է՛ հարկաւոր ։ եւ՛ յաղագս այսպիսի եղանակաւոր սոցա այժմ առնելոց եմք ։

Արդ՝ հակադրութի . համեմատութի . և անդրադարձութիւն
եղանակաւոր նախադասութեն՝ թողեալ լիցին ։ քանզի հա_
մեմատութի ունին դոքա առ նախասացեալսն յաղագս նախա
դասութե բացարձակսն և 'ի գոլոյն ։ Իսկ այժմ ուսուսցուք
յաղագս քանակութե . որակութե . և եղանակսն եղանակաւոր_
որ նախադասութեն ։

Եղանակքն որ զնախադասութի որակացուցանեն՝ գոն
չորք ։ Այ · հարկաւոր . ներընդունական . կարելի . անկարելի ։
Առն որոյ և քառեակ է եղանակաւոր նախադասութիս · Այ .
եղանակաւոր 'ի հարկէն . Ո̅յ · կենդանւոյ կեալն է հարկաւ_
որ ։ Եղանակաւոր 'ի ներընդունակէն . Հն բար · սոկրատայ ըն
թանալն է ներընդունական ։ եղանակաւոր 'ի կարելոյն · որ
պէս . մարդոյ անեանելն է կարելի ։ եղանակաւոր 'ի յանկա_
րելոյն · Հն պէս . ձիոյ տրամաբանելն է անկարելի ։ յորնա_
խադասութիս կրկնակ ենչ գտանի . մինն կոչի ասացեալ . և
միւսն եղանակ ։ Ո̅յ յայսմ . մարդ գոլ բանական՝ է հարկաւոր .
ասացեալն է՝ ինքն նախադասութիս . որ կայ փոխանակ են
թակայի . Այ . մարդ գոլ բանական ։ իսկ եղանակն՝ է որ յաւե_
լանոյ ասացելոյն . և դնի փոխանակ ստորոգելոյ ։ Այ . է՝ հար
կաւոր ։

Առն այսորիկ և երկեակ է՝ քանակութի 'ի յեղանակաւոր
նախադասութիս ։ մինն ըստ ասացելոյն , և միւսն ըստ եղա_
նակին ։ յաղագս քանակութե ասացելոյն խօսեցաք 'ի վերոյ .
յորժամ յաղագս նախադասութեն 'ի գոլոյն ։ բայց քանակու_
թի եղանակին՝ ոմն է՝ ընդհանրական , ոմն մասնաւոր ։ ընդ
հանրականն է՝ որում եղանակն ստորոգի ըստ ասացելոյն յամ
ժամանակի ։ և այսպիսիք գոն՝ հարկաւորն . և անկարելին ։
քանզի որ է՝ հարկաւոր , կամ անկարելի . միշտ այսպէս եղև , և
լինելոց է՝ . Ո̅յ . մարդ գոլ բանական՝ է հարկաւոր ։ մարդ գոլ

անստոյն՝ է անկարելի։ մանաւանդ որ քանակութիւն եղանակին՝ է որով եղանակն ստորոգի ըստ ենթակայիցն ոչ միշտ. այլ երբեմն։ որպիսիք են ներընդունականն և կարելին. վասն զի սոքա երբեմն գոն. և երբեմն ոչ գոն. որպէս. մարդ գոլ սպիտակ՝ է ներընդունական։ մարդոյ ընթանալն է՝ կարելի։

Ստորոգութիւն եղանակաւոր նախադասութեան՝ թէ ըստ ստորասութեան և բացասութեան իցէ. կամ թէ ըստ ճշմարտութեան և ստութեան. ծանուցանեմք մանաւանդ 'ի յեղանակէն. ոչ 'ի յենթակայէն։ Վասն որոյ եթէ եղանակն է ստորասական, ստորասական լինի և նախադասութիւն. թէպէտ և ենթակայն բացասական իցէ։ հն քար, ձի ոչ գոլ մարդ՝ է հնարաւոր։ եւս՛ այս միւսն. ձի գոլ սպիտակ՝ ոչ է հնարաւոր. է բացասական։ Նոյնպէս ասելի է վասն ճշմարտութեան և ստութեան։ քանզի նախադասութիւն է՝ ճշմարիտ. ներում եղանակն ստորոգի ըստ ենթակայիցն ճշմարտապէս։ որպէս. ձուն գոլ բարի՝ է հնարաւոր։ և սուտ է. ներում ստորոգի ստաբար. որպէս. մարդ գոլ ձի՝ է կարելի։

Ցուցանելոց հետևի թէ 'ի կողմանէ եղանակին ամ եղանակաւոր նախադասութիւն ճշմարիտ՝ է հնարաւոր։ և ամ եղանակաւորն սուտ՝ է անկարելի։ թէպէտ և ստացեալն ներընդունական իցէ։ և պատճառն է. զի ամ եղանակաւոր ճշմարիտ նախադասութիւն՝ մշտընջենաւոր որպէս է ճշմարիտ. այսպէս ուրեմն է՝ հնարաւոր։ և եղանակաւոր սուտն՝ մշտընջենաւոր որպէս է սուտ. այսպէս ուրեմն անկարելի։ Վասն այսորիկ՝ այս նախադասութիւնք գոն 'ի հնարաւոր նիւթում. սոկրատայ ընթանալն՝ է ներընդունական. կամ է՝ կարելի. կամ ոչ է՝ անկարելի։ Վասն զի ստորոգեալն. որպէս. կարելի և այլքն՝ հնարաւորապէս ստորոգի զենթակայէն որպէս զսոկրատայ ընթանալոյն։ Նոյնպէս այս նախադասութիւնք գոն 'ի յանկարելի նիւ-

թում . սնկրմատոյ ընթանալն է՝ հարկաւոր . կամ է՝ անկարե-լի . կամ ոչ է՝ կարելի ։ զի ստորոգեալն որպէսբար ստորոգի զէն թականէն ։ Եւ այս բաւ է՝ յաղագս եղանակաւոր նախադա-սութեան ։

## Յաղագս Ստորադրական բացերեւութեան ։

## Պրակք . Ը ։

## *De Propositione hypothetica,*

## Articulus Octauus.

Ստորադրական բացերեւութիւն է՝ բաղադրելին է՝ որ ընդու-նի զբազում ստորոգական նախադասութիւնս շաղկապեալ զշարադրեալս որպէս եթէ արեգակն գոյ , օր գոյ ։ Եւ այսպէս . զբա-զում ստորոգական և այլ . առ ՚ի տարբերութիւն պարզ նախա-դասութեանց ստորոգականին . որ ընդունի միայն զբազում եզերս ։ Եւ այսպէս . շաղկապեալ զշարակցեալս ։ վա զի եթէ նախա-դասութիւնքն գոն ամենեւին արձակեալք . ոչ զինի ստորադրական նախադասութիւն բաղադրեան , այլ զբազում ստորոգականս ։

Եւ երդ՝ ստորադրական նախադասութիւնն անջատի յերիս տե-սակս . ՚ի շաղկապականն . պատճառականն . և թէականն ։ Շաղկա-պականն է՝ յորում շարամանին երկու ստորոգական նախա-դասութիւնք միջնորդութեամբ շաղկապիս . և . որպէս . մարդ է՝ բա-նական և անասունն անբան ։ Եւսկ գիտելի է՝ . թէ յայնժամ շաղկապականն է՝ ճշմարիտ . յորժամ երկոքին ստորոգական նախադասութիւնքն որ գոն ճշմարիտ ։ բայց եթէ միոյն է՝ սուտ . բոլոր շաղկապականն է՝ սուտ ։ որպէս . մարդ է՝ բանական և անբան ։

Ստորադրական պատճառականն է՝ ներքում շարադրին երկու ստորոգական նախադասութիւնք ՚ի ձեռն պատճառական նշանիս . կամ

կամ = և է՛ ճշմարիտ. եթէ մի նախադասութիւն է՛ ճշմարիտ և միւսն սուտ = ո՞րպ. որպէս կամ է՛ ստորոգական. կամ սեաւ՛ : Իսկ՛ է՛ սուտ յորժամ են երկոքեանն սուտ. Է երկոքեանն ճշմարիտ = ո՞րպ. մարդ կամ է՛ խրխնջական, կամ հաչողական = և մարդ կամ է՛ բանական. կամ է՛ ծիծաղական =

Թէական ստորադասականն՝ է՛, որ պարունակէ զերկու ստորոգական նախադասութիւնս զշարակցեալս միջնորդութեամբ շաղկապիս. թէ = ո՞րպ. թէ մարդ ընթանայ, շարժի = Իսկ՛ գիտելի է. զի թէականին ճշմարտութիւն՝ կայանայ 'ի հարկաւորութեան եզրակացութեան. ո՞րպ. 'ի բաղադասութեան զոր ունի եզրակացութիւն ընդ առաջադրութեան. մինչ զի յառաջադրութեան մակաբերցի հարկաւորապէս եզրակացութիւն. ո՞րպ. թէ է՛ մարդ. ուրեմն է՛ բանական = ուստի լինի. զի թէականն կարէ զոլ ճշմարիտ. թէպէտ առաջադրութիւն և եզրակացութիւն սուտ իցեն = ո՞րպ. թէ կենդանին է՛ քար. ապա ուրեմն է՛ անզգայ = և ևս լինի երբեմն. զի թէականն սուտ իցէ. Իսկ առաջադրութիւն և եզրակացութիւն ճշմարիտք. զի ո՛չ ունի զհարկաւորութիւն եզրակացութեան = ո՞րպ. եթէ սպիտակ էր մարդ. ապա ուրեմն էր փիլիսոփայ =

Յասացելոցս երևի. թէ որակութիւն ստորադասական նախադասութեան ըստ ստորասութեան և բացասութեան՝ առնել լինի 'ի շաղկապէն որ զստորոգական նախադասութիւնս բաղադրէ = Քանզի յորժամ շաղկապն ստորասէ. թէպէտ և բացասեն ստորոգական նախադասութիւքն. յայնժամ ստորադասականն է՛ ստորասական = ո՞րպ. եթէ մարդ ո՛չ ընթանայ. ո՛չ շարժի = բայց եթէ շաղկապն բացասէ. թէպէտ և ստորոգական նախադասութիւքն ստորասեն. ստորադասականն է՛ բացասական. ո՞րպ. ո՛չ թէ ընթանայ մարդ. շարժի =

Ստորադասական նախադասութեան՝ ո՛չ գոյ առանձնական

քանակութիւն. այլ ասի ընդհանրական կամ մասնաւոր ըստ նե֊րական մասանցն. որպէս. ստորոգական նախադասութեանցն, յորոցն շարամանի ։

## Յաղագս բաժանման ։
### Յօդուած Թ ։
### De Diuisione.
### Articulus Nonus.

Բաժանումն է՝ բան, որով բոլոր ինչ բաժանի յիւր մասունս ։ ասի բան՝ փոխանակ սեռի։ ասեն այլքըն՝ փոխանակ տարբերութեան ։ Եւ յն. որոյ բաժանումն զանազանի յայլոց բանիցն ։ արդ՝ բոլորն որ բաժանի, կոչի բաժանեալ. իսկ մասունքն յորս բաժանի, կոչին անդամք բաժանման ։ որպէս. յորժամ ասի. կենդանին կ է՝ բանական. կամ է անբան ։ այս է՝ բաժանումն. որով բոլորն. որպէս. կենդանին՝ բաժանի յիւր մասունս. որպէս. ՚ի բանական և յանբան. որք են անդամք բաժանմանն ։

Բաժանմանցն՝ ոմն է՝ ըստ ինքեան ոմն ըստ պատահման. բաժանումն ըստ ինքեանն է՝ որով բաժանի բոլորն ըստ ինքեանն ։ և ըստ պատահմանն՝ է որով անջատի բոլորն ըստ պատահմանն ։ Եւ արդ՝ բոլոր ըստ ինքեանն՝ է երրեակ ։ ամբողջական. էութենական. ընդհանրական ։ այսպէս և երրեակ է՝ բաժանումն ըստ ինքեանն. որպէս. ամբողջական. որով անջատի բոլորն յիւր մասունս ամբողջականս ։ որպէս. մարմինն՝ ՚ի գլուխ. ՚ի ձեռս. յոտս ։ Կ զօրք՝ ՚ի զինուորսն ։ և նմանք սոցին ։ բայց այսպիսի մասունք Կ զնոյն բան ունին, և զնոյն անուանութի. և կոչին համասեռք ։ որպէս մասունք ջրոյն ։ կամ ունին զանազան բան. և ասին այլասեռք ։ որպէս. անդամք մարմնոյն ։

Էութենական բաժանումն է որով բոլորն բաժանի յիւր էու֊

էութենական մասունս ։ իսկ՝ էութենական մասունքն կ են ֆիզիքայինս ․ որպէս նիւթ և տեսակ ։ ինչպէս ․ հոգի և մարմին ՚ի մարդումն ։ կ են մետաֆիզիքայինս ․ որպէս սեռ և տարբերութիւն ․ որպէս ․ կենդանի և բանական ՚ի նոյն մարդն ։

Ընդհանրական բաժանումն՝ է՛ որով բաժանի ընդհանրականն յիւր վայրապարդոյեանս ։ որպէս անձնաւոր կենդանի ․ և ստորոգի ըստ մարդոյ ․ ըստ ձիոյ ․ ըստ առիւծէ ․ և ըստ այլոցն ։ իսկ՝ եթէ բոլոր ընդհանրականն փաղանունաբար վերաբերի առ յիւր վայրապարդոյեանս ․ որպէս բոյս ․ կենդանի ․ և այլքն ։ կոչի բաժանումն փաղանունեանն ՚ի յիւր փաղանունսեալսն ։ Իսկ՝ եթէ վերաբերի համեմատաբար ․ որպէս առողջն առ կենդանի ․ առ դեղ ․ և առ զարկ բազկին ։ առաւել բաժանումն համեմատականն առ յիւրական համեմատեալսն ։

Երրորդ՝ բաժանումն բոլորին ըստ պատահմանն՝ ենթակին լինի ։ կամ բաժանի ենթակայն յիւր պատահմունսն ։ որպէս ․ կենդանեացն՝ ոմանք են սպիտակ ․ ոմանք՝ սև ։ կամ պատահումն յենթակայսն ․ որպէս ․ սպիտակացն՝ ոմն է՛ ձիւն ․ ոմն՝ բամբակ ։ կամ պատահումն ՚ի պատահմունս ։ որպէս ․ սպիտակացն՝ ոմն է՛ քաղցր ․ ոմն՝ դառն ։

Բազում ինչ խնդրի ․ զի բարի եղիցի բաժանումն ։ նախ ․ թէ անդամք բաժանմանն՝ վայրապդոյն լիցին քան զբոլոր բաժանեալն ։ զի՛ այսպիսի բարի ո՛չ է՛ այս ․ կենդանեացն՝ ոմն է՛ զգայական ․ ոմն՝ բանական ․ զի զի զգայականն՝ ո՛չ է՛ վայրապդոյն քան զկենդանին ընչա՞ր ։

Երկրորդ ․ խնդրի թէ բաժանման անդամքն ո՛չ նուազ լիցին և ոչ յաւելեալ քան զբաժանեալն ։ այլ պարտին ՚ի միասին առեալք՝ համապատասխանեալ նմա ։ զի՛ որոյ այս է՛ նուազ բաժանումն ։ կենդանեացն՝ ոմանք են երկրային ․ և ոմանք ջրային ։ զի այսոքիւք ո՛չ համապատասխանեն բոլոր կենդանւոյն ։ զի կան և օդային

կեն

կենդանիքն . յդ . թեւաւորքն ։ եւ այս է՛ աւելորդ . կենդանեացն՝ ոմանք են բանականք . ոմանք անբանք . եւ ոմանք ան մարմինք . բանզի որ է՛ անմարմին . իսկապէս ոչ առնի կենդանի . յդ . շնչաւոր զգայուն ։

Երրորդ . խնդրի թէ բաժանումն ոչ եղիցի 'ի հեռաւոր մասունս , այլ 'ի մերձաւորս ։ պատճառն յայտի է՛ այս ։ գոյացութէյն՝ ոմն է՛ շնչաւոր . ոմն անշունչ ։ Իսկ՛ պարտ է՛ ասել . գոյացութէյն՝ ոմն է՛ մարմնաւոր . ոմն է՛ անմարմին ։ եւ այս բաւական է՛ յաղագս երկրորդ մասին ներածութէս ։

## ԵՐՐՈՐԴ ՄԱՍՆ ։

Յաղագս երրորդ մտաց ներգործութէ ։ յդ .
յաղագս ձեռնարկութեան ։

## TERTIA PARS.

*De Tertia intellectus Operatione : hoc est ,*
*De Argumentatione .*

Երրորդ մտաց ներգործութի՝ է՛ տրամաբանութի . որով միտք 'ի միոյ ծանօթագոյն առաջարկութէ, կամ 'ի բազմացն՝ եզրակացուցանէ զմիւսն զանծանօթագոյն . որ յայտ եղանի շաղկապիւս ․ ապա ուրեմն . եւ առնի եզրակացութի . կամ հետեւութի ։ զոր օրինակ . որմն է՛ սպիտակ . ապա ուրեմն է՛ արտադատող աչաց ։

## Թէ զինչ իցէ ձեռնարկութիւն ։

## Պրակք . Ա ։

## *Quid sit Argumentatio .*

## Articulus Primus .

Ձեռնարկութիւն է բան, ներում ՚ի ծանօթագոյնէ յումեքէ՝ անծանօթագոյնն մակաբերի ։ ասացի բան՝ փոխանակ սեռի . և այսու հաւասարի ձեռնարկութիւն ընդ սահմանին . բաժանմանն . և այլ բանսն ։ ասացի . ներում ՚ի ծանօթագոյնէ և զայլսն՝ փոխանակ տարբերութեան . և այսու ձեռնարկութիւն տարբերի յամենայն բանից . ոչ զմինն ՚ի միւսոյ մակաբերողաց ։

Առաջին հետևի, թէ ձեռնարկութիւն պարունակէ զերիս ։ զնախընթացն . այսինքն . առաջարկութիւն ։ զհետևօղն . այսինքն . եզրակացուցեալ ։ և զհետևութիւն . այսինքն . եզրակացութիւն ։ Նախընթացն է՛ այն . յորմէ այլ ինչ մակաբերի ։ հետևօղն է՛, որ յայլմէ մակաբերի ։ հետևութիւն է՛, որ նշանակէ զմինն մակաբերիլ ՚ի միւսոյն ։ իբրու գաղափարաւ . մարդ է՛ կենդանի . ապա ուրեմն է՛ զգայական . առաջագոյն նախադասութիւն ասի նախընթաց . կամ առաջարկութիւն ։ վերջագոյնն ասի հետևօղ . կամ եզրակացուցեալ ։ Իսկ մասնիկդ . ապա ուրեմնդ՝ ասի հետևութիւն կամ եզրակացութիւն ։

Դարձեալ հետևի, թէ առ բարի ձեռնարկութիւն խնդրի հարկաւոր բաղազանութիւն ՚ի մէջ նախընթացին և հետևողին ։ ապա թէ ոչ այսպէս լինի . ոչ կարէ հարկաւորապէս մինն ՚ի միւսոյն մակաբերիլ ։ Եւ այսպիսի բարի է՝ վերասացեալ ձեռնարկութիւն . մարդ է՛ կենդանի . ապա ուրեմն է՛ զգայական ։ զի զգայականն ունի զհարկաւոր բաղազանութիւն ընդ կենդանւոյն ։ բայց ոչ բարի է՛ այս . ձիւն է՛ մարմին . ապա ուրեմն է՛

սպի-

սխալի ։ վ՟ զի սխալմունքն ոչ հարկաւորապէս պատկանին մարմնոյն, այլ լոկ պատահմամբ. բազում գոլով մարմինք ոչ սխալի ։

Ընդունակութիւն՝ է երկեակ. մինն նիւթական. միւսն կերպական ։ Նիւթական ընդունակութիւն է՝ որ մակաբերէ զմինն 'ի միւսոյ զօրութեամբ նիւթոյ ։ Վ՟ որոյ նոյն կերպդ ընդունակութե՟ ոչ նոյնպէս եզրակացուցանէ 'ի յայլ նիւթում ։ օ՟ր. ա՟մ մարդ է՝ ծիծաղական. ա՟մ բանական է՝ ծիծաղական. ապա ուրեմն ա՟մ բանական է՝ մարդ ։ Այս ընդունակութիւնս է՝ նիւթական. զի եզրակացուցանէ միայն զօրութեամբ նիւթոյ. այ՟ս. միայն բաղդատմամբ զոր ունին 'ի միմեանս նշանակեալ եզրութիւնքն ։ այլ ոչ զօրութեամբ կերպին ։ վ՟ այսորիկ եթէ նոյն կերպդ ընդունակութե՟ տարածի առ այլ նիւթ. ոչ բարւոք եզրակացուցանէ ։ օ՟ր. ա՟մ մարդ է՝ կենդանի. ա՟մ ձի է՝ կենդանի. ապա ուրեմն ա՟մ ձի է՝ մարդ ։ Կերպական ընդունակութիւն է՝. որ եզրակացուցանէ զօրութեամբ կերպին. այ՟ս. եթէ նոյն պահեսցի կերպ ընդունակելոյ յա՟մ նիւթում, միշտ բարւոք եզրակացուցանէ ։ օ՟ր. ա՟մ կենդանի է՝ զգայուն. ա՟մ մարդ է՝ կենդանի. ապա ուրեմն ա՟մ մարդ է՝ զգայուն ։

Արդ՝ չորք են տեսակք ընդունակութեան. այ՟ս. հաւաքաբանութիւն. հնար. մակածութիւն. յարացոյց ։ Հաւաքաբանութիւն լինի, յորժամ յերկուց առաջարկութեանց բարւոք շարադրելոց՝ մակաբերի եզրակացութիւն ։ օ՟ր. ա՟մ կենդանի է՝ գոյացութիւն. ա՟մ մարդ է՝ կենդանի. ապա ուրեմն ա՟մ մարդ է՝ գոյացութիւն ։

Հնար լինի յորժամ 'ի միոջէ առաջարկութենէ մակաբերի մի եզրակացութիւն ։ օ՟ր. ա՟մ մարդ է՝ կենդանի. ապա ուրեմն ա՟մ մարդ է՝ գոյացութիւն ։ Եւ հնարն կոչի յանկատարեալ՝ հաւաքաբանութիւն կարեալ. վ՟ զի յերկուց նախադասութեանցն եղանի .

յորոց մինն անհնարինութեան կամ առաջարկութե՛ն. և միւսն հետևութ՛ի կամ եզրակացութ՛ի։ և եթէ երրորդ նախադասութ՛ին վերաբերցի· կատարեալ համաբանութ՛ի դառնայ։

Ամփոփութ՛ի է՝ յորժամ 'ի յոլովից մասնաւորաց՝ ընդհանուր բովանդակ ինչ մակաբերի։ ո՛պ. այս մարդս է՝ ծիծաղական. և այս. և սոյնպէս ըստ իւրաքանչիւրոցն. ապա ուրեմն ա՛մ մարդ է՝ ծիծաղական։

Ցարացոյց, որ և օրինակ ասի. լինի յորժամ 'ի նմանէ որ պատահի միում ումեմն կամ յոլովից՝ մակաբերի միւսն վ՛ն նմանութ՛ե ինչ. ո՛պ. Դարեհ խաղաղարարութ՛ե ընկալաւ զթագաւորութ՛ի մեղաց. ապա ուրեմն որ ոք խաղաղարարիցէ. զթողութ՛ի մեղաց ընկալցի։ այսք են չորք տեսակք ձեռնարկութ՛ե։ Այլ որքանզի համաբանութ՛ին է՝ հաստատատագոյն և պատուականագոյն քան զամենեսեանն։ Այն այսուհետև զմնացեալսն թողեալք՝ վարդապետութ՛ի արասցուք յաղագս նորին միայնոյ։

## Յաղագս համաբանութ՛ե. և նիւթոյ. և կերպի նորին։

Պրակ. Բ.

## *De syllogismo. Et de Materia, & Forma ipsius.*

Articulus Secundus.

Սահմանն համաբանութ՛են բացատրի յարիստոտէլէ յառաջնոյն գիրսն նախնեացն այսպէս. համաբանութ՛ի է՝ բան, ներում ոմանց եդելոց՝ այլ իր ինչ յայտնանէ 'ի հարկէ պատահի։ ասի բան՝ փոխանակ սեռի։ ասի՝ ներում ոմանց՝ բազմաւորական. զի համաբանութ՛ին ո՛չ զմի. այլ զբազում ունի զառաջարկութ՛իս. առ 'ի տարբերութ՛ի հնարին. որ 'ի միոջէ յառաջարկութ՛ե մակաբերէ զեզրակացութ՛իս։ ասի

 եդե-

եղելոց. յ͞ի. հաւանելոյ. քանզի եթէ առաջարկութիւնքն ոչ գոն ճշմարիտ. և եթէ պատասխանօղն ոչ հաւանի. ոչ կարէ ձեռնարկօղն եզրակացուցանել զհետևութիւն։ ասի այլ իր ինչ յայնցանէ. զի հետևութիւն եզրակացուցեալ պարտի գոլ որոշեալ յառաջարկութեացն. իբր անձանօթագոյնն ՚ի ծանօթագունիցն։ և ասի ՚ի հարկէ պատահի. յ͞ի. մակաբերի և եզրակացուցանի. վ͞ն զի զօրութ͞բ առաջարկութեացն հարկաւորապէս եզրակացուցանի հետևութիւն։ հարկաւորապէս ասացի. յ͞ի. հարկաւորութ͞բ հետևութ͞ե. ոչ հետևողին. ո͞պ. ա͞մ մարդ է՛ երկոտանի. Սոկրատէս է՛ մարդ. ապա ուրեմն Սոկրատէս է՛ երկոտանի։

Նիւթ հաւաքաբանութեան է՛ երկեակ. հեռի, և հուպ։ հեռինիւթն՝ գոն եզերք յորոց հաւաքաբանութ͞ե նախադասութիւնքն շարամանին։ հուպ նիւթն՝ գոն ինքեանք նախադասութիւնքն. որ ՚ի հաւաքաբանութեան երեք պարտին գոլ. ոչ յաւէտ և ոչ նուազ։ առաջին նախադասութիւն կոչի մեծագոյն. երկրորդն փոքրագոյն. և երկոքեանն ասին առաջարկութիւք։ Իսկ երրորդն կոչի եզրակացութ͞ի. կամ հետևութ͞ի։

Եզերքն, որք հեռապէս զհաւաքաբանութ͞ի շինեն. գոն երեք։ և ասին մեծ ձայր. փոքր ձայր. և միջնորդ եզր։ Արդ՝ յերից եզերաց, իւրաքանչիւր կրկնակի առեալ լինելով՝ բաղադրեն զերիս նախադասութիւնս. յ͞ի. զմեծագոյնն. զփոքրագոյնն. և զեզրակացութիւն։ միջնորդ եզր՝ է՛ այն որ ներկու առաջարկութիւնս. յ͞ի. ՚ի մեծագունին և ՚ի փոքրագունին՝ կրկնակի առնանի. և յեզրակացութիւն ոչ մտանի։ այսպէս անուանեալ զի միջնորդութ͞բ նորին մեծ ձայրն և փոքրն շարագրուին ՚ի միմեանց. և ապա շարակցեալք մակաբերին ՚ի յեզրակացութեան։ մեծ ձայր է՛ որ ՚ի մեծագոյն նախադասութեան շարամանի ընդ միջնորդ եզրին։ փոքր ձայր է՛ որ ՚ի



փոքրա

փոքրագունից ընդ նոյն միջնորդին չափաւորանի. և ապա՛ մեծ ծայրն և փոքրն՝ զմիջնորդն թողեալք, երկոքեան միանան յեզրակացութեան. զոր օրինակ. ոչ գիտէ միտքն. թէ մարդ գոյացութիւն իցէ, թէ ոչ. բայց գիտէ. թէ կենդանին է գոյացութիւն. և թէ կենդանին զբաղդատութիւն ունի ընդ մարդոյ և ընդ գոյացութեան. վասն որոյ միջնորդութեամբ կենդանւոյն եզրակացուցանէ, թէ մարդն է գոյացութիւն. այսպէս արտաբանելով. ամ կենդանի է գոյացութիւն. մարդ է կենդանի. ապա՛ ուրեմն մարդ է գոյացութիւն։

Այս է համառօտաբանութիւն. ներքուստ մեծագոյնն է, ամ կենդանի է գոյացութիւն. փոքրագոյնն՝ մարդ է կենդանի. Իսկ եզրակացութիւն և հետևութիւն՝ ապա ուրեմն մարդ է գոյացութիւն. և միջնորդ եզրն է կենդանի, որ միաւորէ զմարդն ընդ գոյացութեան և կրկնակի առնանի. ՚ի մեծագունին և ՚ի փոքրագունին. ոչ մտանելով յեզրակացութիւն. մեծ ծայրն է գոյացութիւն. փոքր ծայրն է մարդ. և այս ծայրքս զեզրակացութիւն շինեն. մեծն՝ գոլով ստորոգելեալ. և փոքրն՝ ենթակայ.

Իւրոյն համառօտաբանութեան՝ է ձև, և եղանակ նր. Ձև համառօտաբանութեան է շարադասութիւն միջնորդ եզերին ըստ ենթակայման և ստորոգման. և այսքան է ձևք. որքան և է շարակարգութիւն. ուստի լինի թէ եռեակ է.

Առաջին ձևն է ներքուստ միջնորդ եզրն ենթակայի ՚ի մեծագոյն առաջարկութեան. և ստորոգի ՚ի փոքրագունին. որպէս. ամ բոյս է մարմին. ծառ է բոյս. ապա ուրեմն ծառ է մարմին.

Երկրորդ ձևն՝ է ներքուստ միջնորդ եզրն յերկոսեան առաջարկութեանս ստորոգի. որպէս. ամ կենդանի է շնչաւոր. ոմն բոյս ոչ է շնչաւոր. ապա ուրեմն ոմն բոյս ոչ է կենդանի.

Երրորդ ձևն է՝ յորում միջնորդ եզրն ներկայանայ առաջար- կութեան ենթակայի։ որպէս. ամ մարդ է՛ բանական. ոմն մարդ է՛ սպիտակ. ապա ուրեմն ոմն սպիտակ է՛ բանական։ զոր ամ պարունակեն տողքս այսոքիկ։

Ենթա՛, ստորոգ, ՚ի յառաջին։

Կրկին ստորոգ ՚ի յերկրորդին։

Կրկին ենթա՛ ՚ի յերրորդին։

Այ. միջնորդ եզրն ենթակայի ՚ի մեծագունին. և ստորոգի ՚ի փոքրագունին առաջին ձևոյն. և կրկնակի ստորոգի երկրոր- դին։ Իսկ՛ յերրորդին կրկնակի ենթակայի։

Եղանակն համաքանակութեան՝ է՛ չափաւորութիւն նախա- դասութեանց ըստ քանակութե և որակութե։ այ. ըստ ընդ- հանրին կամ մասնաւորին։ և ըստ ստորասութե կամ բա- ցասութե։ բայց այս չափաւորութիւս յոքնակի կարէ լինել։ վասն որոյ տասն և ինն եղանակք համաքանակութեան հնարե- ցան յիմաստասիրացն. որոց անուանքն պարունակին ՚ի չորս տողս հետևեալս։

Պատկառանք. Կրեսիոց. Զեռնարկել. Համդեցի։
Զելամեա. Պաժակեղ. Կապեսփող. Կրխեսոք. Հարկեցիս։
Զեսանեղ. Պարօտօք. Կեսիջինոց. Զափեսցես։ Հալասի.
Կերապօռ. Հիսափիս. Պրօտարող. Կեցխոք. Հարցիսի։

Առ որ՝ յեղանակացս յայտացին ինն առաջադրյնք պատկանեին առաջին ձևումն, յորոց չորքն նախկին տողին՝ եզրակացուցա- նեն ուղղակի. և հինգն երկրորդ տողին եզրակացուցանեն ան- ուղղակի։ Իսկ՛ անուղղակի եզրակացուցանել է՛, յորժամ յեզրակացութեան՝ մեծ ծայրն ենթակայի. և փոքրն ստորոգի. և եզրակացուցանել ուղղակի՝ է՛ յորժամ անդրադարձապէս լինի. որպէս ՚ի վերոյ ասացաւ։ Առ որ երկրորդ ձևն պատկանին այլ

չորք հետեւեալ եղանակքն ։ Իսկ՝ յետոյ վերջ մնացեալքն՝ իններորդն ։

Եւ գիտելի է զի իւրաքանչիւր ոք յեղանակաց զերիս վանկս ունի ․ Առաջին վանկ նշանակէ զմեծագոյն առաջարկութիւն համաբանութեան ։ Երկրորդն՝ զփոքրագոյնն ։ Երրորդն՝ զեզրակացութիւնն ։ Եւ իւրաքանչիւր վանկն ունի զմինն 'ի գրոց յայսցանէ ։ ա. է ի. օ ։ յորս ուրեք ուր գտանի այբն. անդ պարտի գոլ նախադասութիւն ընդհանուր ստորասական ։ Եւ ուր գտանի էչն . ընդհանուր բացասական ։ Եւ ուր ինի . մասնաւոր ստորասական ։ Եւ ուր օն . մասնաւոր բացասական ։ Առերդ՝ օրինակօք յայտ լինին ասացեալքն ։

Եղանակք առաջին ձեւոյն , ուղղակի եզրակացուցանողք ։

*Modi primæ figuræ , directè concludentes .*

Պառ . Ամենայն բանաւոր է կենդանի .
Լյա . Ամենայն մարդ է բանաւոր .
Րանք ։ Ապա ուրեմն ամ մարդ է կենդանի .

Քե . Ոչ ոք կենդանի է մեռեալ .
Լա-ն . Ամեն մարմին է կենդանի .
Յօղ ։ Ապա ուրեմն ամեն մարմին ոչ է մեռեալ ։

Չեռ . Ոչ ոք մարդ է անասուն .
Նար ։ Ամենայն ծիծաղական է մարդ .
Իգէլ ։ Ապա ուրեմն ոչ ոք ծիծաղական է անասուն ։

Հան . Ամենայն մարմին է գոյացութիւն .

Դի. Ոմն կենդանի է՝ մարմին.
Յի։ Ապա՝ ուրեմն ոմն կենդանի է՝ գոյացութիւն.

Եղանակք առաջին ձեւոյն, անուղղակի եզրա_
կացուցանօղք։

*Modi primæ figuræ, indirectè concludentes.*

Շէ. Ոչոք յոռութիւն է՝ բարի.
Լա. Ամ ամբարտաւանութիւն է՝ յոռութիւն.
Մէս. Ապա՝ ուրեմն ո՛չոք բարի է՝ ամբարտաւանութիւն։

Դա. Ամենայն մարմին է՝ երեւելի.
Ժա. Ամենայն քար է՝ մարմին.
Կիպ։ Ապա՝ ուրեմն ոմն երեւելի է՝ քար։

Կա. Ամենայն շնչաւոր է՝ զգայուն.
Պես. Ոչոք տունկ է շնչաւոր.
Փող։ Ապա՝ ուրեմն ոմն զգայուն ո՛չ է՝ տունկ։

Կրի. Ոմն կենդանի է՝ առիւծ.
Սի. Ոչոք անըզգայ է՝ կենդանի.
Սօք։ Ապա՝ ուրեմն ոմն առիւծ ո՛չ է՝ անըզգայ։

Հար. Ամենայն ձի է՝ խրխնջական.
Կի. Ոմն զգայուն է՝ ձի.
Յիս։ Ապա՝ ուրեմն ոմն խրխնջական է՝ զգայուն։

## Եղանակք երկրորդ ձեւոյն ։
## Modi secundæ figuræ.

Չե. Ոչոք մարդ է անմարմին .
Սա. Ամենայն հրեշտակ է անմարմին .
Նեղ։ Ապա ուրեմն ոչոք հրեշտակ է մարդ ։

Քա. Ամենայն շուն է հաչողական .
Րօ. Ոմն կենդանի ոչ է հաչողական .
Մօք։ Ապա ուրեմն ոմն կենդանի ոչ է շուն ։

Կես. Ոչոք առաքինութիւն է ատելի .
Տի. Ոմն չարն է ատելի .
Նօղ։ Ապա ուրեմն ոմն չարն ոչ է առաքինութիւն ։

Չա. Ամենայն ապականելի է նիւթաւոր .
Փես. Ոչոք հրեշտակ է նիւթաւոր .
Ցես. Ապա ուրեմն ոչոք հրեշտակ է ապականելի ։

## Եղանակք երրորդ ձեւոյն ։
## Modi Tertiæ figuræ.

Հա. Ամենայն սպիտակութիւն է գոյն .
Լա. Ամենայն սպիտակութիւն է պատահումն .
Պի. Ապա ուրեմն ոմն պատահումն է գոյն ։

Կե. Ոչոք մարմին է անբաժանելի .
Րա. Ամենայն մարմին է գոյացութիւն .
Պօր. Ապա ուրեմն ոմն գոյացութիւն ոչ է անբաժանելի ։

Հի.

Հի. Ոմն եթովպացի է՛ սեաւ.
Սա. Ամենայն եթովպացի է՛ մարդ.
Փիս. Ապա ուրեմն ոմն մարդ է՛ սեաւ։

Գրօ. Ոմն գոյացութիւն ո՛չ է՛ մարմին.
Սղա. Ամենայն գոյացութիւն է էակ.
Րօղ։ Ապա ուրեմն ոմն էակ ո՛չ է՛ մարմին։

Լյե. Ոչոք քանակութիւն է՛ հոգևոր.
Ցի. Ոմն քանակութիւն է՛ շօշափելի.
Սօք։ Ապա ուրեմն ոմն շօշափելի ո՛չ է՛ հոգևոր։

Հար. Ամենայն ծառ է՛ բոյս.
Ցի. Ոմն ծառ է՛ պտղաբեր։
Սի. Ապա ուրեմն ոմն պտղաբեր է՛ բոյս։

## Յաղագս Կանոնաց, զոր պարտիմք պահել յամ. յեղանակս երից ձևոցն։

### Պրակք. Գ։

## De Regulis quas ſeruare debemus in omnibus trium figurarum modis.

### Articulus Tertius.

Առաջին հաստատուն կանոն ։ 'ի սոսկ բացասականացն մի՛ չինչ հետևի զօրութեամբ կերպին։ վասն որոյ սկիզբ է. մինչ յառաջարկութեանցն ստորասական լինել։ ուստի այս համառօտ բանութիւն յոռի է ։ ո՛չոք քանական է՛ խնձական. ոչոք ձի է՛ բանական. ապա ուրեմն ո՛չոք ձի է՛ խնձական ։ Զանազանի. զօրութեամբ կերպին. քանզի զօրութեամբ նիւթոյ կարէ երբեմն իր ինչ հետ

 հետ

հետևիլ ՚ի սոսկ բացասականացն ։ որպէս . ոչոք ձի է՛ բանական . ոչոք քար է՛ ձի . այսպէս ուրեմն ոչոք քար է՛ բանական ։ Եզրա_կացութիւն հետևի միայն զօրութեամբ նիւթոյ . վս այսորիկ այս պիսի ձևաւորութիւնք ոչ գոն բարի հաւաքաբանութիւնք . զի ոչ ունին զբարի կերպն ։

Երկրորդ հաւասարակ կանոն ։ ՚ի սոսկ մասնաւորացն ոչինչ հետևի զօրութեամբ կերպին ։ որպէս . ոմն կենդանի է՛ շուն . ոմն մարդ է՛ կենդանի . այսպէս ուրեմն ոմն մարդ է՛ շուն ։ Վս այ_նորիկ ոմն յառաջարկութեանցն պարտի գոլ ընդհանրական ։ Եւ աստ գիտելի է . թէ եզերքն եզականք . և անորոշականք՝ գոն փոխանակ մասնաւորին ։

Երրորդ հաւասարակ կանոն ։ Եթէ ոմն յառաջարկութեանցն է՝ մասնաւոր ։ պարտ է՛ և եզրակացութիւն գոլ մասնաւոր ։ և եթէ ոմն յառաջարկութեանցն է՛ բացասական . պիտոյ է՛ և եզ րակացութիւն գոլ բացասական ։ աստուստ ասեն Տրամա_բանականքն . թէ եզրակացութիւն զհետ երթայ տկարագոյն մասին ։ Վս այսորիկ յոռի է՛ այս ։ ամ ծիծաղական է՛ մարդ . ոմն կենդանի է՛ ծիծաղական . այսպէս ուրեմն ամ կենդանի է՛ մարդ ։ քանզի պարտ էր ասել . այսպէս ուրեմն ոմն կենդանի է՛ մարդ ։ և այս . ոչոք մարդ է՛ ձի . ամ բանական է՛ մարդ . այսպէս ուրեմն ամ բանական է՛ ձի ։ Վս զի պարտ էր ասել . այսպէս ուրեմն ոչոք բա_նական է՛ ձի ։

Չորրորդ հաւասարակ կանոն ։ միշտ պիտոյ է՛ . զի ՚ի միում յառաջարկութեանցն միջնորդ եզրն լրութեամբ և կատարելապէս հաղորդեսցի ամ վայրագոյնիցն իւրոց ։ Արդ՝ յայնժամ կա_տարեալ լինի հաղորդութի . յորժամ միջնորդն ընթադրի հա_սարակապէս ։ որ . առնանի փոխանակ ամենեցուն . զոր պա_րունակէ ընդ ինքեամբ ։ Իբրու գաղափարաւ . կենդանի լրու_թեամբ հաղորդի . յորժամ առեալ լինի վս իւրաքանչիւր կենդա_

նոյ տեսակաւորապէս և անհատաբար։ Իսկ՛ անկատարե_
լապէս հաղորդի յորժամ առեալ լինի վ՟ ուրուք կենդանւոյ,
ոչ վ՟ այլոցն։ Սակս այսորիկ կարօտանայ այս հաւաքաբանու_
թիս։ Ա՟մ կենդանի ստեղծեալ ՚ի սկզբանէ ստեղծողն.
Ա՟մ մարդ է՛ կենդանի. արդ ուրեմն ա՟մ մարդ ստեղծեալ ՚ի
սկզբանէ ստեղծողն։ Նուազանայ հաւաքաբանութիս.
Վ՟ զի ՚ի մեծադրութեանն՝ կենդանի ոչ հաղորդի լրութբ։ Քանզի
ենթադրի տեսակաւորապէս միայն. այլ ոչ և անհատաբար։
այս ինքն, առնանի վ՟ ա՟մ իւր տեսակացն. այլ ոչ և յաղագս
ա՟մ իւր անհատիցն։

Հինգերորդ համառօտ կանոն. յեզրակացութեն ենթա_
կայն և ստորոգեալն յ՟ի. մեծ և փոքր ծայրն՝ ոչ պարտին հա_
մառակապէս ենթադրիլ. կամ ընդհանրապէս հաղորդիլ. եթէ
ոչ ընդհանրապէս հաղորդեցան նառաջարկութիւնս։ Վ՟ որոյ
կարօտանայ այս։ Ա՟մ կենդանի է՝ զգայական. ա՟մ կենդանի է՝
գոյացութի. արդ ուրեմն ա՟մ գոյացութի է՛ զգայական։ Վ՟
զի գոյացութիւն եզրակացութեն համառակապէս ենթադրի.
յ՟ի. հաղորդի լրութբ ա՟մ գոյացութեցն։ Իսկ՛ ՚ի փոքրագոյ_
նին ոչ համառակապէս ենթադրի. այլ անկատարելապէս և
առանձնաբար։ յ՟ի. ենթադրի միայն փոխանակ գոյացութեն
որ ՚ի կենդանի գտանի։

Վեցերորդ համառօտ կանոն։ ոչ պարտի մեծ ծայրն կամ
մասնունք մտանել ՚ի փոքրագոյն առաջարկութիւն։ Վ՟ այսորիկ
նուազանայ հաւաքաբանութիս ՚ի Պատկարանս։ Ա՟մ երկր
որդն անմիջապէս հետևի առաջնումն. ա՟մ երրորդն անմիջա_
պէս հետևի երկրորդումն. արդ ուրեմն ա՟մ երրորդն անմի_
ջապէս հետևի առաջնումն։ Վ՟ զի անմիջապէսն որ էր մասն
մեծ ծայրին՝ ՚ի փոքրագոյնն մտանէ։

Եւթներորդ համառօտ կանոն։ միջնորդ եզր ; կամ մասնունք

ձևս ոչ

ոչ պայման մնալոյ յեզրակացութեան ։ զի այսորիկ յուն է՛ համաքանակութիւն ՚ի Չեսամեղ։ ոչ որք ձի է՛ տարբեր ՚ի խրխնջականէն. ամ մարդ է՛ տարբեր ՚ի խրխնջականէն ․ այսմ ուրեմն ոչ որք մարդ է՛ տարբեր ՚ի ձիոյն ։ զի ոչ զի տարբերին, որ էր մասն միջնորդ եզրին՝ մնալ յեզրակացութիւնն։ Այլ ոչ եւս առանձնական կանոնք յաղագս իւրաքանչիւր ձեւոյն ։

Առաջին առանձնական կանոն յաղագս եղանակացն առաջին ձեւոյն, ուղղակի եզրակացուցանողաց ։ եղիցի փոքրագունին բացասական ․ համաքանակութիւն է՛ սուտ ։ ոչ․ ամ կենդանի է՛ գոյացութի․ ոչ որք քար է՛ կենդանի․ այսմ ուրեմն ոչ որք քար է՛ գոյացութիւն ։

Երկրորդ առանձնական կանոն ։ եղիցի մեծագունին մասնաւորի․ համաքանակութիւն է՛ սուտ ։ հի քար․ ոմն կենդանի է՛ մարդ․ ամ ձի է՛ կենդանի․ այսմ ուրեմն ոմն ձի է՛ մարդ ։

Առաջին առանձնական կանոն յաղագս երկրորդ ձեւոյն ։ մեծագունին եղիցի մասնաւորի․ համաքանակութիւն է՛ սուտ ։ որպէս ոմն կենդանի է՛ մարդ․ ոչ որք ձի է՛ մարդ․ այսմ ուրեմն ոմն ձի ոչ է՛ կենդանի ։

Երկրորդ առանձնական կանոն ։ եղիցի երկաքանչիւր առաջարկութեան ստորասական․ համաքանակութի է՛ սուտ ։ հի կէն․ ամ էշ ունի ականջս․ ամ մարդ ունի ականջս․ այսմ ուրեմն ամ մարդ է՛ էշ ։

Առաջին առանձնական կանոն յաղագս երրորդ ձեւոյն ։ փոքրագունին եղիցի բացասական․ համաքանակութի է՛ սուտ ։ որպէս․ ամ հրեշտակ է՛ գոյացութի ։ ոմն հրեշտակ ոչ է՛ մարդ ։ այսմ ուրեմն ոմն մարդ ոչ է՛ գոյացութի ։

Երկրորդ առանձնական կանոն ։ եղիցի եզրակացութեան ընդհանրական․ համաքանակութի է՛ սուտ ․ հի պէս ․ ամ սպիտակութի է՛ արտադրական աչաց ․ ամ սպիտակութի է՛

պատահումն . այլ ուրեմն սոյն պատահումն է՛ արտադրատող աչաց =

## Յաղագս Ամփոփածութէ անկատար հաւաքաբանութէցն առ կատարեալսն =

### Դրակէ . դ̃ =

## De Reductione Syllogismorum imperfectorum ad perfectos.

### Articulus Quartus.

Նախ գիտելի է՛ . զի կատարեալ հաւաքաբանութիւնքն՝ են նոքա յորս գտանին երկու սկզբունքն , անմիջականք 'ի Տրամաբանականացն . Ասացեալ զամէ . և Ասացեալ զոչ ընչէ = և այսպիսի սկզբունքն գոն հիմն բոլոր ճշմարտութէ ձեռնարկութէցն =

Ասացեալ զամենայնէն գոյ . յորժամ 'ի նախադասութեն՝ մի իր այսպէս ստորոգի զմիւսոյն . զի ստորոգեսցի ևս զիւրաքանչիւրոյ զորմէ ստորոգի միւսն = զոր օրինակ . 'ի նախադասութէս . մարդ է՛ կենդանի . այժմ կենդանին ստորոգի զմարդոյն . և զամենայնէ զորմէ մարդն ստորոգի . իբ̃ . զպետրոսէ . զպօղոսէ . զանդրէայ . և զամ̃ անհատիցն մարդոյ =

Ասացեալ զոչընչէն գոյ . յորժամ մինն այսպէս բացասի զմիւսոյն . զի բացասեսցի ևս զամենայնէ զորմէ ստորոգի միւսն : որգոն կենդանի ո՛չ է՛ քար . այժմ քարդ բացասի զկենդանւոյն . այլ ևս զմարդոյ . զձիոյ . զառիւծէ . և զորինչ այլ տեսակէ , զորմէ ստորոգի կենդանին =

Արդ՝ երկոքեան սկզբունքս յայտնապէս գտանին միայն 'ի չորս նախկին եղանակսն առաջին ձևոյն . որք ուղղակի եզրակացուցանեն իբ̃ . 'ի պատկարանսն, և 'ի հանդիցեն գոյ Ասա-

ցեալ զամենայնէն ։ Իսկ՝ ՚ի չէռնարկելս , և ՚ի կեռւեօղն՝ Հասցեալ զոչընչէն ։ Հաստատ հետևի . զի չորք եղանակքն այնոքիկ են միայն կատարեալք. և մնացեալքն՝ անկատարք. որք զի կատարեսցին . և իւրեանց ճշմարտութիւն յայտնապէս երևեսցի ։ պարտ է՝ տարածիլ առ կատարեալսն ։ Իսկ՝ եղանակքն որք պէտին սկսանին , տարածին առ պատկարանքն ։ որք կէնին՝ առ կեռւեօղն ։ որք չային՝ առ չէռնարկելն ։ և որք հոյին՝ առ հանդէսլն ։ քանզի ՚ի չորից տառից յայսցանէ ամ եղանակքն զսկիզբն առնուն ։

Երկրորդ գիտելի է ։ զի զտարածութիւն զայս երիւք կերծեօք պիտոյանամք առնել ։ այս . անդրադարձութեամբ . փոխադրութեամբ ։ և յարաբերութեամբ յանկարելին ։ Անդրադարձութիւն է . որ ՚ի վերոյ ասացաք . փոփոխումն ենթակային ՚ի ստորոգելեալն . և ստորոգելեալն ՚ի յենթակայն ։ և է կրկին . միոյն պարզ . յորում պահի նոյն քանակութիւն . և նոյն որակութիւն նախադասութեան ։ և միւսն՝ ըստ պատահման . ներում փոփոխի միայն քանակութիւն ։ որպէս յայտնի եղև ՚ի նախասացեալսն ։ Փոխադրութիւն է՝ փոխարկումն ինչ առաջարկութեանցն . մինչ զի մեծագոյնն եղիցի փոքրագոյն . և ընդ դէմ սորին . այս . փոքրագոյնն՝ մեծագոյն ։ Յարաբերութիւն յանկարելին՝ է փոփոխումն երկուց ճշմարիտ նախադասութեանց ՚ի հակասականսն իւր սուտ . և փոխադրութիւն ՚ի միմեանց ։ այսպէս անուանեալ . զի յերկուց հակասականացն եթէ մինն է ճշմարիտ ՚ի հարկէ միւսն է սուտ . վասն որոյ և անկարելի ։

Արդ՝ յարաբերութիւս յանկարելին հնարեցաւ . վասն զի եթէ ոմն մարդ յիմարութեամբ ուրանայցէ զեզրակացութիւն միոյ ճշմարիտ համաքաբանութեան , ընդունելով զառաջարկութիւնս ։ Իբրու դաղափարաւ . յորժամ դու Ձեռնարկեցես ՚ի պարտաւորըստ այսմ օրինակի ։ ամ չնչաւոր է՝ զգայական . ոմն ծառ ոչ է՝

զգայ

զգայական․ այլ ուրեմն ումն ծառ ո՛չ է՛ շնչաւո՛ր։ և քոյ հա-կառակն ընդունելով զմեծագոյնն, և զփոքրագոյնն. ուրանայցէ զհետևութիւն․ ասելով թէ առաւելականութիւնքն են ճշմարիտ․ բայց եզրակացութիւն, որ էր։ ումն ծառ ո՛չ է՛ շնչաւոր, է՛ սուտ։ յայնժամ յարաբեր․ եթէ յանկարելին յաղթող եղիցի․ առնլով զհակասականսն փոքրագունին և եզրակացութեան․ և փոխադրելով զնոսա ՚ի միմեանց․ մինչզի եզրակացութիւն լինի փոքրագոյն, և փոքրագոյնն՝ եզրակացութի։ և այսպէս տարածելով զնախասացեալ հա՛ւաքաբանութիւն առ պատկերանքն առաւել ըստ քեզ՝ ա̄մ շնչաւո՛ր է՛ զգայական. այլ և ըստ քեզ՝ ա̄մ ծառ է՛ շնչաւո՛ր. այլ ուրեմն ա̄մ ծառ է՛ զգայական։ որ եզրակացութի՛ն՝ է՛ հակասականն փոքրագունին․ զոր առաջն ընդունէր հակառակն․ և այժմ բռնադատի ընդունել և զնորին հակասականն․ որ է՛ յոյժ անտեղի.

Եւ յս չորս կերպեւքս՝ անկատար հա՛ւաքաբանութիւնքն տարածին առ կատարեալսն։ բայց՝ զի գիտասցի․ յորժամ ասա-ռին նախադասութիւնքն անկատար հա՛ւաքաբանութեան անդրադարձել պարզապէս։ յորժամ ըստ պատահմանն։ յորժամ պայմանին փոխադրել։ և կամ յորժամ յանկարելին յարաբերել․ պիտոյ է՛ մեզ նայել առ չորս տառսն. որք ՚ի յեղանակսն անկատար հա՛ւաքաբանութեանցն դասանին. ս̄ . ս . պ փ . տ։ Ձայնա՛ւոր որ նախադասին մէջն, ցուցանէ թէ նախադասութի նշանակեալն ձայնաւո՛րութ՛ն այնօրինն՝ անդրադարձելի է՛ պարզապէս։ Ձայնա՛ւոր որ նախադասեալ պէն, ցուցանէ թէ նախադասութին անդրադարձելի ըստ պատահմանն։ Ձայնա՛ւոր նախադասեալ փեռին, նշանակէ զփոխադրութին։ և նախադասեալն տառնին՝ նշանակէ զտարածութին յանկարելին։ զայս ՚ի միտս ածեն ենթադրեալ տողքս։

ճկդ ան

Ա՛ռ պարզական անդրադարձմամբ ։

Անդրադարձի ըստ պատահմամբ ։

Փիւր վարէ փոխադրութ՟բ ։

Մխեն՝ յանկար տարածութ՟բ ։

Օրինակօք առաւելաբար երևի տարածութ՟ի անկատար համաքաբանութեցն առ կատարեալսն ։ որպ համաքաբանութին այս՛ի չեսանեղ ։ ոչ ոք քար է՛ կենդանի . ամ մարդ է՛ կենդանի . ապա ուրեմն ոչ ոք մարդ է՛ քար ։ տարածի առ չեռնարկելն , որ և չայիւ սկսի . եթէ մեծագոյնն անդրադարձցի պարզապէս . որպ ցուցանէ ձայնաւորն առաջինն վանկին չեսանեղին . ներում եւ Նախադասն սէին ։ այսպէս ասելով . ոչ ոք կենդանի է՛ քար . ամ մարդ է՛ կենդանի . ապա ուրեմն ոչ ոք մարդ է քար ։

Եւ այս՛ի պաժակիոյ . ամ կենդանի է գոյացութ՟ի . ամ մարդ է՛ կենդանի . ապա ուրեմն ոմն գոյացութիւն է՛ մարդ ։ տարածի առ պատկարանքն . որ և պէիւ սկսի . եթէ անդրադարձցի եզրակացութին ըստ պատահմանն . որպ ցուցանէ երրորդ վանկ պաժակիոյին , ներում ին Նախադասն պէին ։ ասելով . ամ կենդանի է՛ գոյացութ՟ի . ամ մարդ է կենդանի . ապա ուրեմն ամ մարդ է՛ գոյացութ՟ի ։

Եւ այս՛ի կամեսփոզ . ամ շնչաւոր է՛ զգայուն . ոչ ոք տունկ է՛ շնչաւոր . ապա ուրեմն ոմն զգայուն ոչ է տունկ ։ տարածի առ կեռւիցօղն եթէ մեծագոյնն անդրադարձցի ըստ պատահմանն . և փոքրագոյնն պարզապէս . և ապա փոխադրեսցի փոքրագոյնն ընդ մեծագունին . որպ ցուցանէ ձայնաւորն առաջին վանկին . որ Նախադասն պէին ։ և ձայնաւորն երկրորդ վանկին . որ Նախադասն սէին , և փիւրին ։ ասելով . ոչ ոք շնչաւոր է՛ տունկ . ոմն զգայուն է՛ շնչաւոր . ապա ուրեմն ոմն զգայուն ոչ է՛ տունկ ։

Եւ

Եւ այս 'ի պրօտասրօղ . ոմն գոյացութիւն ոչ է՛ մարմին . ամ գոյացութիւն է՛ էակ . ապա ուրեմն ոմն էակ ոչ է՛ մարմին ։ Եթէ հակառակն ընդունիցի զառաջարկութիւն . և ապա ուրանայցէ զեզրակացութիւն ։ յայնժամ պարտ է՛ մեզ տարածել զհամաբանութիւն առ պատկարանքն յարաբերութեան յանկարելին . առնլով զհակասականն եզրակացութեան , զոր հակառակն ուրացաւ . և զհակասականն մեծապոյնին , զոր ընդունեաց և ապա զհակասականս զայսոսիկ 'ի միմեանց փոխադրել . մինչ զի եզրակացութիւն եղիցի մեծապոյն . և մեծապոյնն՝ եզրակացութիւն . որպիսանակէ առաջին վանդ պրօտարօղին ։ առնլով . ըստ քեզ՝ ամ էակ է՛ մարմին · այլ և ըստ քեզ՝ ամ գոյացութիւն է՛ էակ ։ ապա ուրեմն ամ գոյացութիւն է՛ մարմին ։ որ եզրակացութիւն է՛ հակասականն փոքրապոյնին . զոր առաջին ընդունել էր հակառակն . և այժմ հարկաւորապէս պարտ է՛ նմա կամ ընդունել զոր առաջին ապուսեաց . կամ տալ զերկուս հակասականս . այս . ամ գոյացութիւն է՛ մարմին · և ոմն գոյացութիւն ոչ է՛ մարմին ։ որ է՛ յայտ անտեղի ։

## Յաղագս համաբանութեանց անջատման ։

## Գլուխ. Ե ։

## De Syllogismorum diuisione.

## Articulus Quintus.

Համաբանութեանց՝ լինին գոն տեսակք . այս . Ապացուցական . Տրամաբանական . Սաբէական . Յայտնական . Եղանակական · Ստորադրական . Յարաբերական յանկարելին . Համաբանութիւն 'ի հոլովականաց . Համաբանութիւն յուղղականաց ։

Ապացուցական համաբանութիւն . որ և ապացուցու_

 Թի

Թէ՛ ասի, կամ ապացոյց. զորմէ ընձեռէ Արիստոտէլ ՚ի Նախկին գիրսն. է՛ որ ունի զառաջարկութիւնս ճշմարիտս և յայտնիս և է՛ կրկնակ. միոյն՝ որ կոչի վասն որոյ. և միւսն՝ վասն զի. Ապացուցութիւն վասն որոյ՝ է՛ որ յայտնապէս ցուցանէ զեզրակացութիւն պատճառօք նր՟. որպէս. ամ՟ զարմանաւորն է՛ ծիծաղական. ամ՟ մարդ է՛ զարմանաւոր. ապա ուրեմն ամ՟ մարդ է՛ ծիծաղական. յայսմ տեղւոջս համանեցուցանելիք զծիծաղականն պատճառաւն իւրով. յ՟. զարմանաւորութեամբ. որ է՛ պատճառ ծաղելոյն. Ապացուցութի վասն զին՝ է՛ որ յայտնապէս ցուցանէ զեզրակացութիւն գործովք նր՟. որպէս. ամ՟ ծիծաղականն է՛ զարմանաւոր. ամ՟ մարդ է՛ ծիծաղական. ապա ուրեմն ամ՟ մարդ է՛ զարմանաւոր. աստ համանեցուցանի զարմանաւորն գործովն իւրով. յ՟. ծիծաղականաւն.

Տրամաբանական համաբանութիւն, որ և կարծեցական ասի. զորմէ պատմէ Արիստոտէլ ՚ի գիրսն Թօփիկոց. յ՟. տեղականաց. է՛ որ եզրակացուցանէ ՚ի կարծեցական առաջարկութեանց, և որք ոչ են յայտնապէս ճշմարիտք. այլ ըստ կարծեաց.

Խաբէականն է՛ որ Թուի ունել յառաջարկութեանցն զճշմարիտ մակաբերութի եզրակացութեան. բայց ոչ ունի. զոր օրինակ. սպիտակն է՛ պատահումն. ձիւն է՛ սպիտակ. ապա ուրեմն ձիւն է՛ պատահումն. կամ այս. մարդ է՛ տեսակ. սոկրատ է՛ մարդ. ապա ուրեմն սոկրատ է՛ տեսակ. որ է՛ սուտ. վն զի սոկրատն անհատ է. այլ ոչ տեսակ. և ձիւնն գոյացութի ոչ պատահումն. այսք են խաբէութիւնք. զի միջնորդ եզրն ոչ նոյնապէս ենթադրի ՚ի մեծագունին ո͞պ ՚ի փոքրագունին. այլ այլազգաբար. քանզի սպիտակն ՚ի մեծագունին՝ առեալ է իբր թէ վերացեալ եզր. յ՟. փոխանակ սպիտակութե. և ՚ի փոքրագունին՝ իբր թէ թանձրացեալ. յ՟. փոխանակ սպիտակ ենթա-

կայից ։ և մարդն ՚ի մեծագունիցն առնանի ընդհանրապէս, փոխանակ մարդկային տեսակին. իսկ ՚ի փոքրագունիցն մասնաւորապէս, փոխանակ պետրոսի ։ այդպիսի խաբէութիւնք յոլովք են. զորս ամ յառաջբերէ աշխատասէրն ՚ի գիրքն էլէնկոսն ։ տես անդ ։

Ծայրանականն՝ է՛ ներքոյ յայտնապէս երևելի մակաբերութիւն եզրակացութեան ։ և այս յայնժամ պատահի, երբ միջնորդ եզր նախադասութեան. մեծ ծայր. և փոքրն՝ գոն տարբերոց և եզրականն եզերք ։ որպէս. պետրոս ընթանայ. այս մարդս է պետրոս. ապա ուրեմն այս մարդս ընթանայ ։ և պատճառն է՛. զի ոչ ՚ի յեզրականն եզերացն առաւելապէս երևելի այն հաստատակ սկիզբն տրամաբանականացն. այ. թէ որք միանգամ համաձայնին ընդ միում ումեք. համաձայնին և ընդ միմեանս ։

Եղանականականն՝ է՛ որ բաղկանայ յառաջարկութեանց եղանակականաց ։ հի՛ բար. հարկաւոր է, ամ կենդանին գոլ զգայական. կարելի է՛, ումն բոյս գոլ կենդանի. ապա ուրեմն կարելի է՛, ումն բոյս գոլ զգայական ։

Ստորադրականն՝ է՛ որ շարադրի յառաջարկութեանց ստորադրականաց ։ որպէս. եթէ օր գոյ, գոյ արեգակն. իսկ եթէ գոյ գիշեր, ոչ գոյ օր. ապա ուրեմն եթէ գոյ գիշեր, ոչ գոյ արեգակն ։ Արդ՝ քանզի գ գոն տեսակքն ստորադրական նախադասութեան. որք ՚ի վերոյ ասացեալ է՛ յերկրորդ մասին. սակս այսորիկ և եռեակ է՛ ստորադրական հաւաքաբանութիւն ։ այ. թեական. շաղկապական. և զատական ։ տես անդ ։

Հաւաքաբանութիւն ՚ի հոլովականացն. է՛ որ շարամանի ՚ի հոլովական եզերաց. այլ ոչ յուղղականացն ։ որպէս. յորում ներ գոյ միտք, ներքոյ և կամք. իսկ ՚ի մեզն գոյ միտք. ապա ուրեմն ՚ի մարդն գոյ և կամք ։

Հաւաքաբանութիւն յուղղականացն՝ է՛ որ յուղղական եզերա

ընդունելի : որպէս . կենդանին բանական է՝ համածառոյ ընդու-նակ . մարդ է՝ կենդանի բանական . այսմ ուրեմն մարդ է՝ համածառոյ ընդունական .

Յարաբերականն յանկարելին՝ է՝ ներքուստ ի հակառա-
թէ ուրացեալ հեռաւորութեն, և ի միջէ հա՜ս-
նեալ յառաջարկութէ՝ եզրակացուցանելոյ
զհակառակն մի ա հա՜մանեալ առա-
ջարկութեն : որ՛ ի վերոյ
ցուցաւ .





# ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ՎԻՃԱԲԱՆՈՒԹԻՒՆՔ.

Որք յետ Տրամաբանութեան անդիպին։

# DISPVTATIONES PHILOSOPHICAE

*Poſt Logicam Inſtitutionem occurrentes.*

Առաջին Վիճաբանութիւն.
Յաղագս էակի մտածութե։

Առաջին խնդիրք.
Թէ զինչ իցէ էակ մտածութե։

## De Ente Rationis.

## DISPVTATIO PRIMA.

*Quid ſit ens rationis?*
Quæſtio Prima.

Նախ գիտելի է՝, զի էակ մտածութեն եռապատիկ իմանի։ Նախ՝ վա̄ իւրի ուրուք կարծելոյ և ՚ի միտս ածելոյ։ Եւ ըստ բանումս այսմիկ՝ քար իմացեալ ՚ի մտաց. առի էակ մտածութե։ Երկրորդ՝ վա̄ ներգործութե մտաց որ իմացուածս առի, և ներբաւրամադրեալ բան մտաց. և կոչի էակ մտածութե, զի յեռու ՚ի միտս, և է՛ գործ նորին։ Երրորդ և մասնաւանդ՝ վա̄ իւրեն այնր, որ ըստ էնթակայացեալ իւրի՝ ոչինչ է՛, և ո՛չ էակ. բայց երևի ՚ի միտս իբրև զէակ, և իբրև զիր ինչ դրական։ Եւ ըստ այսմ բանի՝ չինեմք զէակ մտածութե, յորժամ զկտարին, որ է պակասութի լուսոյ և ոչինչ, մտօք ըմբռնեմք իբրև



զիև

ղսնաւութիւն ինչ գրաւական. այդպիսի սնոտութիւնդ՝ կարծեալ գոլ զխառ̂նածն այն, առ ի տիրաբար և իսկագոյն էակ մտածութեան. զի է՛ սոսկ մտածութիւն, և ոչինչ ըստ էութականացեալ իրի. Թէ_ պէտ էակ ինչ միայն ըստ մակամտածութեան. սակս որոյ առ ՚ի չինել զայդպիսի էակ մտածութեան, պարտ է՛ հարկաւորապէս զմիտս խաբել և սուտ. համարելով իբրև զէակ ինչ և կարելի՝ զայն որ. է՛ ոչինչ և անկարելի. ԵՐՐՈՐԴ՝ յաղագս երրորդ մտա_ ծութեան էակիս այսորիկ՝ լինի վճռաբանութիս առաջինկայս. Եւ խնդրի թէ զինչ իցէ.

ԱՌԱՋԻՆ եզրակացութիւն. Էակ մտածութեան ոչ է՛ արտա_ քին յարանունութիւն. որպէս կարծեն ոմանք. ԱՊԱ՝ վն̃ մեկնու_ թեան եզրակացութեանս այսորիկ՝ գիտելի է՛. զի յարանունութիւն է՛ երկեակ. մինն ներքին. միւսն արտաքին. Ներքին յարա_ նունութիւն է՛ այն որ բղխէ ՚ի վերայ էութականին ուրուք ՚ի ներքուստ. այ̃. ՚ի տեսակէ ուրեմնէ, որով այն էութականն ներ քապէս տրամակայի. զոր օրինակ. որպէս ներքնապէս յարա_ նուանի սպիտակ՝ ՚ի սպիտակութենէ որ յենու ՚ի վերայ նորին. կամ աչքն ներքնապէս յարանուանի տեսանօղ՝ ՚ի տեսութենէ որ յենու ՚ի վր̃ աչացն. և կամ միտքն նմանապէս յարանուանի ճանաչօղ՝ ՚ի ճանաչմանէ որ ներքնապէս յենու ՚ի վր̃ մտացն. և սոյնպէս զայլոցն.

Յարանունութիւն արտաքինն է՛ այն որ բղխէ ՚ի վր̃ էութա_ կայինն ուրուք ոչ ՚ի ներքուստ, այլ յարտաքուստ. այ̃. ՚ի յար տաքին տեսակէ ուրեմնէ, յորմէ այսպիսի կամ այնպիսի յարա_ նուանի այն էութականն. զոր նմն. որպէս արտաքնապէս յարա_ նուանի տեսանեալ՝ ՚ի տեսութենէ որ յարտաքուստ եզրանայ առ նա. և ոչ յենու ՚ի յորմն, այլ ՚ի յաչս. և կամ քար արտաքնա_ պէս յարանուանի ճանաչեցեալ՝ ՚ի յարտաքին ճանաչմանէ, որ առնուանի ՚ի վր̃ մտաց, ոչ ՚ի վր̃ քարին. և կամ պետրոս յարա_

ճկէ　　　　　　　　　　նուա_

նոսանս աջակողմն՝ ՚ի յառաջքին յաջմէ միւս մարմնոյ։

Եզր՝ համանեցուցանեմք զառաջադրեալ եզրակացութիւն. քանզի առաջքին յարանուանութիւն թէ ճանաչեցելոյն, թէ տեսելոյն, և այլ. է՛ իրական էակ. ապա ուրեմն ոչ է՛ էակ մտածութեան. Հետևութիւս այս՝ յայտ է՛. զի էակ մտածութեան ոչ է՛ էակ ինչ ըստ ինքնակայացեալ իրի. այլ է՛ ոչինչ երևեցեալ ՚ի միտս իբրև զէակ. վասն որոյ է՛ հակադրեալ ընդ էակին իրականի, որ ըստ ինքնակայացեալ իրին էակ ինչ է՛։ Արդ ուրեմն էակ մտածութեան ոչ կարէ գոլ առաջքին յարանուանութիւն որ է՛ իրական էակ. ցուցանի առաջարկութիւն. վասն զի առաջքին յարանուանութիւն ճանաչեցելոյն ոչ զանազանի յառաջքին ճանաչմանէ յորմէ բղխէ. այլ է՛ սոսուգապէս նոյն ինքն ճանաչումն մտաց՝ եզրացեալ առ յինքնակայն որ յարանուանի ճանաչեցեալ։ Իսկ նոյն ճանաչումն է՛ իրական էակ. գոլով իրական ներգործութիւն մտաց. ապա ուրեմն և իրական էակ պարտ է՛ գոլ առաջքին յարանուանութիւն ճանաչեցելոյն. ապա ոչ է՛ էակ մտածութեան. և սոյնպէս ասեմ յաղագս նոյն առաջքին յարանուանութեան։

Բայց առարկեցես. թէ յորժամ որմն յարակոչի ճանաչեցեալ, կամ տեսեալ, և այլ. յարանուանութիւնք ճանաչեցելոյն, կամ տեսելոյն՝ ոչ է՛ իրական ինչ ՚ի վերայ որմոյն. ապա ուրեմն է՛ էակ մտածութեան։

Պատասխանեմք. մեկնելով զառաջարկութիւն. թէ յարանուանութիւն ճանաչեցելոյն կամ տեսելոյն՝ ոչ է իրական ինչ ներքին ՚ի վերայ որմոյն. ընդունիմ. ոչ է՛ իրական ինչ առաջքին եզրացեալ առ որմն. ուրանամ. զի յարակոչումն այն ճանաչեցելոյ, կամ տեսելոյ՝ իրական իմն է՛, որմոյն ոչ ներքին. այլ արտաքին. և ոչ այլ ինչ է՛, եթէ ոչ իրական ճանաչումն մտաց, կամ տեսութիւն աչաց՝ յարտաքուստ եզրացեալ առ որմն, որ

առանց

տուսոյ ճանաչեցեալ, կամ տեսեալ։ զի ամ յայտնութիւն
Թէ արտաքին, Թէ ներքին՝ ոչ երբէք զանազանի ՚ի տեսանել յա-
րանօրութենէն, յորմէ ելեալ իսկ։

Երկրորդ եզրակացութիւն։ Եւսկ մտածութեան ոչ է ոչինչ՝ ճանաչեցեալ իբրև զոչինչ։ որպէս կարծեն ոմն ումանք։ Գրդ վն մեկնութեան դիւրելի է․ զի բացասութիւնք, և պակասութիւնք որք են ոչինչ, թէպէտ ոչ կարեն ճանաչիլ ուղղապէս ՚ի մտաց, որպէս են իսկ․ վն զի ուղիղ առարկեալ ներթականս մտաց՝ է միայն էակն. և ոչ կարէ գոլ ոչինչն․ բայց սակայն կարեն ճանաչիլ որպէս են իսկ ՚ի մտաց անուղղակիաբար օր. անուղիղ ճանաչմամբ զոր օրինակ. ճանաչելով ուղղապէս զմարդն զօրութ է մարդոյ ճանաչեցելոյ ճանաչեմք անուղղակիաբար զոչմարդն օր. զբացասութիւն մարդոյ։ կամ ճանաչելով ուղղապէս զլոյսն․ զպատկերաւն լուսոյ ճանաչեցելոյ ճանաչեմք անուղղակիաբար զխաւարն, որ է լուսոյ պակասութիւն։

Առարկեսցես. Թէ ճանաչելութիւն է յատկութիւն էակին. իսկ՝ ոչինչն ոչ է էակ. ապա ուրեմն ոչինչն ոչ է ճանաչելի։

Պատասխանեմք. մեկնելով զմեծագոյնն ներհակութեան, Թէ ճանաչելութիւն ուղղակին՝ է յատկութիւն էակին միայն. ընդունիմ։ ճանաչելութիւն անուղղակին՝ է յատկութիւն էակին միայն. ուրանամ։ քանզի այդպիսի անուղիղ ճանաչելութիւդ պատշաճի և ոչընչին. զի ոչինչն թէպէտ ոչ է ճանաչելի ուղղապէս. օր. յատկական պատկերաւն, զոր ոչ ունի. սակայն ճանաչելի է՝ անուղղապէս. օր. պատկերաւն էակին. զի ճանաչելով զէակն, զօրութ է էակին ճանաչեցելոյ իմանամ թէ զինչ է՝ ոչ էակն։

Դրդ հաստատեսցուցանեմք ՚ի վերոյ նշեալ եզրակացութիւն, քանզի էակ մտածութեան չինի ՚ի մտաց յորժամ ճանաչելին ոչ որպէս է՝ իսկ, այլ այլապէս. վն որոյ առ․ էակ, մտածութեան


կար

հարկաւ որ է՝ սկսաւութիւն և մասաց վախճանութիւն. իսկ՛ երբ ճանաչի ոչինչն իբրև զոչինչ. ճանաչի իսկ որպէս է՝ իսկ, և ոչ այլապէս. և միտքն ճանաչօղ ոչ խաբի, և ոչ սխալէ. այսմ աւրէնս ոչինչն ճանաչեցեալ իբրև զոչինչ՝ ոչ է՝ էակ մտածութիւն.

Առարկեսցես. թէ էակ մտածութիւնն ոչ ունի զայլ լինելութիւն, բայց միայն զլինելն առարկեալ 'ի միտս. իսկ՛ ոչինչն ճանաչեցեալ իբրև զոչինչ՝ ոչ ունի զայլ լինելն, բայց յառարկմանէ 'ի միտս. այսմ աւրէնս է՝ էակ մտածութիւն.

Պատ͞ոխ. մեկնելով զխնդրագրեալսն. թէ ոչինչն ճանաչեցեալ իբրև զոչինչ՝ ունի զառարկութիւն 'ի միտս իբրև զէակ. ուրանամ. իբրև զոչինչ որպէս է՝ իսկ. ընդունիմ. վ͞ս որոյ ուրանամ զհետևութիւնն.

Երրորդ եզրակացութիւն. էակ մտածութիւնն ոչ այլ ինչ է, քան թէ ոչէակն, և անկարելին՝ իմացեալ իբրև զէակ, և կարելի. զո͞ր օրինակ. յորժամ միտքն՝ զկուրութիւն որ է՝ պակասութիւն տեսութեան և ոչինչ՝ իմանայ իբրև զիր ինչ յեղեալ 'ի վ͞ր աչացն. շինէ զէակ մտածութիւն. կամ թէ յորժամ յերկուց կատարեալ և առողջ էութեանց եղջերուին և քաղին՝ իմանայ զմի պարզ եղեալ էութիւն, որ եղջերուաքաղ կոչեցի. և եթէ կատարեալ եղջիւր, և կատարեալ քաղ 'ի մի պարզ էութէ, և ոչ յերկուս. այս եղջերուաքաղս այսպէս իմացեալ՝ գոյր էակ մտածութիւն. զի գոյր անկարելի էակ իմացեալ որպէս կարելի.

Բայց աստ՝ ցուցանի եզրակացութիւնս. զի էակ մտածութիւն է որ ոչ ունի զայլ լինելն. բայց միայն զլինելն առարկմամբն 'ի միտս, որով մերժեսցի իբրև զէակ. իսկ՛ եղջերուաքաղս անկարելի. և կուրութիւն որ է՝ ոչինչ՝ իմացեալք իբրև զկարելի ինչ, և զկարական էակ. ոչ ունին զայլ լինելն բայց 'ի լինելութեանն առարկմամբն 'ի միտս. այսմ աւրէնս են էակ մտածութիւն.

## Երկրորդ խնդիր.

## Միթէ էակ մտածութեան գոյ ըստ ենթակայացեալ իրի. թէ միայն ըստ մակամտածութե.

## *Vtrum detur ens rationis à parte rei; an verò solum per intellectum.*

## Quæstio Secunda.

Առաջին եզրակացութիւն։ Էակ մտածութեան ո՛չ կարէ գոլ ըստ ենթակայացեալ իրին։ ցուցանի. քանզի էակ մտածութեան ներընդդունի զերկուս հակասականս. ուրեմն այլ ոչ գոյ, և ո՛չ կարէ գոլ 'ի կողմանէ իրին։ Առաջարկութիւն ցուցանի. վա՛ն զի էակ մտածութեան է՛ ոչէականն իմացեալ իբրև զէակ. որպէս. խաւարն իբրև զսևութի։ իսկ՝ էակն և ոչէակն՝ են հակասականք։ այլև էակ մտածութեան պարունակէ զերկուս հակասականս։ Հետևութիւն ևս ցուցանի. զի յերկուց հակասականացն՝ հարկաւ որպէս միոյն է՛ ճշմարիտ, և միւսն սուտ. և ո՛չ կարէն միանգամայն գոլ երկոքեանն ճշմարիտ ըստ ենթակայացեալ իրին։ արդ ուրեմն էակ մտածութեան, որ ընդունի զհակասականսն, ոչինչ է՛ 'ի կողմանէ իրին. և ո՛չ ճշմարիտ ինչ։

Առարկեցես. թէ գործն արտադրեալ 'ի յիմացական պատճառէ՝ է՛ իրական գործ. իսկ՝ միտքն որ արտադրէ զէակ մտածութեան՝ է՛ իրական պատճառ նորին. ապա ուրեմն այդպիսի գործն իւր՝ պարտ է՛ գոլ ևս իրական, և գոլ 'ի կողմանէ իրին։

Պատասխանեմք, մեկնելով զմեծ առաջինն. թէ իրական պատճառն արտադրէ զիրական գործ. եթէ գործն արտադրի 'ի նմանէ բնական և իսկական արարողութ., որպէս հուր՝ արտադրի 'ի հրոյ. ընդունիմ։ եթէ արտադրի պակասութ. և մոլորութ.

րութե. ուրանամ = արդ՝ էակ մտածութեն ոչ լինի ՚ի մտաց խոկական արարողութե, այլ պակասական ճանաչմամբ. և ոչ է մտաց բնական ներգործութի, այլ մոլորական պակասութի. զի միտքն շինէ զէակ մտածութեն ստեղծելով, և ճանաչելով զինքն այլայլս, և ոչ որպէս է իսկ =

Երկրորդ եզրակացութի = Էակ մտածութեն գոյ ըստ մակամտածութե. դր. ըստ ներգործութե մտաց = ցուցանի. զի էակ մտածութեն ոչ է սոսկ ոչինչ. զի սոսկ ոչինչն ոչ ասի էակ մտածութե = այլ ուրեմն է իմացեալ էակ ինչ: բայց ոչ էակ ինչ իրական և ըստ ենթակայացեալ իրին, որպէս ՚ի վերոյ ցուցաք. այլ մտածական և ըստ մակամտածութե = դր. ՚ի կողմանէ իրին է ոչինչ և ոչէակ. բայց երևի էակ և իր ինչ ՚ի կողմանէ մտաց, որում է առարկեալ իբրև զէակ ինչ =

Առարկեցես. թէ ՚ի մէջ երկուց հակասականաց ոչ կարէ լինել միջնորդ. զի հարկաւորապէս մինն է ճշմարիտ, և միւսն սուտ. այլ ՚ի մէջ նոցա ոչ լինի ճշմարիտ միջնորդ = իսկ՝ էակ իրական, և ոչ էակ իրական՝ են հակասականք = այլ ուրեմն ՚ի մէջ նոցա ոչ կարէ գոլ միջնորդ, որ էակ մտածութե իցէ = զի այդպիսի էակ մտածութեդ ոչ էր իրական էակ, և ոչ էր սոսկ ոչինչ այլ արդեօք էր միջնորդ ՚ի մէջ նոցա, որ ամենևին է անկարելի՝ ևս ըստ մակամտածութեն =

Պատասխանեմք. մեկնելով զմեծ ադոյնն հաւաքաբանութեն այսորիկ. թէ ՚ի մէջ երկուց հակասականացն ոչ կարէ գոլ միջնորդ պարզ. ընդունիմ = ոչ կարէ գոլ միջնորդ՝ յերկոցունցն բաղադրեալ. և կրկին մեկնեմ. ոչ կարէ գոլ ՚ի կողմանէ իրին. ընդունիմ = ՚ի կողմանէ մտաց. ուրանամ = զի կարող է միտքն բաղադրել զոչէակն ընդ էակին. որպէս զխաւարն ընդ սևութե. և այսպէս շինել զմի էակ մտածութե ոչ պարզ, այլ բաղադրեալ յերկուց հակասականացն այնոցիկ:

Դարձեալ առարկեցես. Թէ ոչ կարէ միտքն հաւանել համ֊
միանգամայն երկուց հակասականաց. այսպէս ուրեմն ոչ կարէ բաղադրել զնոսա ճանաչմամբ. և շինել զէակ մտածութեան. Հետևութիւն՝ յայտ է. ցուցանի առաջարկութիւն. քանզի յոր ժամ միտքն գիտէ, թէ խաւարն է՛ ոչինչ և պակասութիւն լուսոյ. ոչ կարող է հաւանել թէ է՛ սևութիւն: և պատճառն է՛, զի առարկեալ ենթակայ մտացն է՛ էակ որպէս ճշմարիտ. վ̄ որոյ ոչ կարէ միտքն բերել ՚ի սուտն՝ հաւանելով:

Պատասխանեմք. ընդունելով զառաջարկութիւն, և ես զցուցումն նորին. բայց ուրանալով զեզրակացութիւն. զի յոր ժամ միտքն բաղադրէ ճանաչմամբ զերկուս հակասականս. ըս̄. զոչէակն ընդ էակին. ոչ հաւանի երկոցունցն. զի ոչ գիտէ զոչէակն. ըս̄. զխաւարն զոր ոչինչ, և սոսկ պակասութի լուսոյ. այլ համարէ զնա զոր զէակ ըս̄. սևութիւն. և այսու բերէ ՚ի սուտն ոչ որպէս սուտ, այլ որպէս ճշմարիտ ըստ կարծեաց նորին. և վ̄ այսորիկ ոչ գիտաւն մարդ, այլ ապէտ միայն շինէ զէակ մտածութեան:

## Երրորդ խնդիր.

### Թէ յումմէ պատճառէ շինի էակ մտածութեան.

### *A quo intellectu possit fieri ens rationis?*

### Quæstio Tertia.

Առաջին եզրակացութիւն. մարդկային միտքն կարէ շինել զէակ մտածութեան. ցուցանի ըստ ասացելոցն ՚ի վերայ. քանզի շինել զէակ մտածութեան՝ ոչ այլ ինչ է՛. բայց թէ ճանաչել զոչէակ իբրև զէակ. իսկ բազումս ապէտս մարդիկք այսպէս ճանաչեն. ապա ուրեմն շինեն զէակ մտածութէ:

Առարկեցես. Թէ միտքն ոչ շինէ զբոլոր առարկեալ ենթա֊

ՃՀ կայն,

կայն . այլ միայն խորհի զնմա . իսկ՝ էական մտածութեան է՝ առար
կեալ ենթակայ մտաց . այսմ ուրեմն ոչ շինի , այլ միայն խորհի
՚ի մտաց =

Պատասխանեմք . մեկնելով զմեծագոյնն հաւաքաբանութեան . թէ միտքն ոչ շինէ զիւր առարկեալ ենթակայն , այլ միայն խորհի զնմա ՚ի ձեռն տեսական ճանաչմանն . ընդունիմ = ՚ի ձեռն գործնական ճանաչմանն . ուրանամ = զի գործնական ճանաչումն իմանայ զենթակայն ոչ խորհելով որպէս տեսականն , այլ շինելով զնմա ՚ի միտս = և այդպիսի ճանաչմամբ շինէ միտքն զէական մտածութեան =

Երկրորդ եզրակացութիւն : հրեշտակական միտքն թէ բարի թէ չար հրեշտակացն՝ շուրջ զբնական ենթակայիւք ոչ կարեն շինել զէական մտածութեան = բայց շուրջ զգերբնական ենթակայիւքն կարեն շինել զնոսա =

Առաջին մասն եզրակացութեան ցուցանի . վն զի հրեշտակքն ճանաչեն զամ բնական ենթակայսն յայտնապէս և հասկացողական ճանաչմամբ , որպէս էն իսկ = այսմ ուրեմն ոչ կարեն ճանաչել զնոսա այլապէս և աղտաբար՝ շինելով շուրջ զնոքօք զէական մտածութեան =

Երկրորդ մասն՝ ևս ցուցանի . զի հրեշտակն ոչ ունի ՚ի միտս իւրեանն զնկարածեալ պատկերսն գերբնական ենթակայիցն . վն զի բնական միտքն իւրեանն ոչ պահանջէ զճանաչումն նոցա , որք են գեր քան զիւրեանն բնութիւն = այսմ ուրեմն ոչ ճանաչէ զայնպիսի ենթակայսն յայտնապէս և հասկացողական ճանաչմամբ . այլ միայն արտաքրստական ճանաչմամբ և անյայտաբար . ՟յր . առանձաբանելով ՚ի վն նոցա , որպէս առանձաբանեմք մեք ՚ի վն իւրն զոր ոչ ճանաչեմք յայտնապէս = և թէպէտ մծ երևեցուցանէ հրեշտակացն զգերբնական ենթակայսն ոմանս . բայց ոչ զամենեսեանն = այսմ ուրեմն ՚ի ճանաչել

զա-

զգոյանալոյն ենթակայոյն՝ կարէ հրեշտակն խաբել . և շինել զէակ մտածութեան :

Երրորդ. Եզրակացութի : միտքն ած այնն ոչ կարէ շինել զէակ մտածութեան : ցուցանի . քանզի ոչ կարէ ած ճանաչել զանկարելին իբրև զկարելի . կամ զոչէակն իբրև զէակ : ուրեմն ապա ոչ կարող է շինել զէակ մտածութեան : Առաջարկութին ցուցանի . զի ած այնն միտքն զամ ինչ թէ կարելի, թէ անկարելի . թէ էակ, թէ ոչէակ՝ ճանաչէ յայտնապէս, որ պէս են իսկ : ապա ուրեմն ոչ կարէ ճանաչել զնոսա այլապէս, և սխալաբար . և ոչ շինել զէակ մտածութեան : Հետևութին ցուցանի . վն զի եթէ այսպէս էր . ապա ած այնն միտքն կամ համաձայնէր միանգամայն երկուց հակասականաց, որ է անկարելի բան . կամ խաբէր, զոր քաւ լիցի ասել :

Առարկեցես . թէ ած ճանաչէ զէակ մտածութեան շինեալ ՚ի մէնջ . ապա ուրեմն և ինքն շինէ զնա : Եզրակացութիս ցուցանի . քանզի էակ մտածութեան է ոչ էակն ճանաչեցեալ իբրև զէակ . արդ ուրեմն ած ճանաչելով զէակ մտածութեան մեր, ճանաչէ զոչէակն իբրև զէակ . ապա և շինէ զնա :

Պատասխանեմք . մեկնելով զառաջարկութին . թէ ած ճանաչէ զէակ մտածութեան մեր՝ պարզնական ճանաչմամբ . ժ . համարելով էակ զայն որ է ոչէակ . ուրանամ : ճանաչէ տեսական ճանաչմամբ . ընդունիմ : ժ . հայելով միայն ՚ի յէակ մտածութեան մեր և իմանալով զնա որպէս է իսկ : վն որոյ խորհի զմեր սխալութի, և խաբէութի . բայց ինքն ոչ խաբի, և ոչ սխալէ :

# ԵՐԿՐՈՐԴ ՎԻՃԱԲԱՆՈՒԹԻՒՆ.

## Յաղագս Ընդհանրին.

### Առաջին խնդիր.

### Թէ զինչ իցէ Ընդհանուր. եւ որքանաբար իմացի.

## De Vniuerſali.

## DISPVTATIO SECVNDA.

### *Quid, & Quotuplex ſit Vniuerſale?*

### Quæſtio Prima.

Ընդհանուրն առ հասարակ իմացեալ, է՛ մի ինչ յարաբերեալ առ բազումս. եւ զորքանապատիկ նշանակութիւնս ունի: Առաջինն ասի ընդհանուր ՚ի պատճառել. եւ է՛ պատճառ ինչ որ զբազումս զանազան գործս արտադրծ է: որպէս. Ածն, որ է՛ հասարակաց պատճառ: կամ Արեգակն՝ յոլովից գործոյն արտադրելոց:

Երկրորդն ասի Ընդհանուր ՚ի նշանակել. եւ է՛ մի ձայն որ նշանակէ զբազումս այլատեսակս: հն զան. շուն, որ նշանակէ զաստղ. զձուկն. զկենդանի հաչողականն. եւ զշնացօղն:

Երրորդն ասի Ընդհանուր ՚ի հաղորդել. եւ է՛ մի անհատ էութին, որ հաղորդի բազմաց: որպէս. Աստուածային էութինն, որ է՛ մի Թուով, եւ հաղորդեալ երից անձանցն:

Չորրորդն ասի Ընդհանուր համեմատականն. եւ է՛ մի ինչ, որ գոյ ՚ի բազումս համեմատաբար, ոչ փաղանունութեամբ· հն կէն. առողջութի, որ գտանի համեմատաբար ՚ի կենդանւոջ. ՚ի դեղի. եւ ՚ի զարկի բազկին:

Հինգերորդն ասի Ընդհանուր փաղանունականն. ՚ի լինել

կամ

կայ մ՚ի ստորոգել. և այս է՛ խակացեալս և ընդունակ է քառ ընդհանուր: զորօրէն յայտնութեան ծառելոյ եւս: որպէս. մարդկայնն էութեան, որ է՛ մի՝ անհատական, և գոյ 'ի բազում անհատս մարդոյ. զորոյն և ստորոգի փաղանունաբար:

Արդ՝ այդպիսի հինգերորդ ընդհանուրդ սահմանն յարեստանէ 'ի յետժնեբորդ գիրքն համաբնականացն այսպէս. Ընդհանուրն է՛ մի ինչ որ բնաւորեցաւ գոլ 'ի բազումս ոչ հոմանունաբար, այլ փաղանունաբար: Եւ յառաջին գիրքն պէրիարմէնեաս առէ նոյն փիլիսոփայն. թէ ընդհանուրն է՛ որ բնաւորեցաւ զյոլովից ստորոգիլ:

Իսկ՝ արդ մեկնի 'ի մէնջ առաջասացեալ սահմանն ընդհանուրին: Ասի՝ մի ինչ, փոխանակ սեռի: և այս բառիւս՝ հատանէ ընդհանուրն ընդ եզականնն, որ եւս մի է: արդ՝ մինդ իմանի կատարելապէս մի. այս փաղանունաբար. այլ ոչ մի համեմատաբար, կամ հոմանունաբար: քանզի որք միանգամ համեմատք կամ հոմանունք. ոչ մի կատարելապէս: զի ոչ ունին միմեանս զմի բան գոյացութեան, այլ զբազումս: մի որոյ և միութիւնք բազումք 'ի բազումս. այլ ոչ մի 'ի բազումս, որպիսի արդար է գոլ ընդհանուրն փաղանունականն:

Ասի՝ որ բնաւորեցաւ գոլ 'ի բազումս և այլ. փոխանակ տարբերութեան. զի այսու տարբերեցի ընդհանուրն յեզականէ որ անհատ, և բազմաց ոչ հասարակ:

Ասի՝ ոչ հոմանունաբար, այլ փաղանունաբար. զի հոմանունականն, և համեմատականն ընդհանուրն, որ ոչ գոյ 'ի բազումս ըստ նոյն բանի՝ չեք յատկապէս ընդհանուր: Արդասացեալ ասացուք. թէ որպիսի ինչ եղէ ընդհանուրն միութիւն. և բնաւորութիւն գոլոյ 'ի բազումս:

## Երկրորդ խնդիր.

### Թէ ո՞րպիսի պարտ է՛ գոլ Ընդհանրին միութիւն.

### *Quænam ſit Vnitas propria Vniuerſalis.*

### Quæſtio Secunda.

Վասն բացատրութե՟ խնդրոյս առաջնկոյս՝ նախ գիտելի է՛, եթէ միութիւն՝ է՛ անբաժանութիւն իրին ՚ի յիւրեան ինքեանն, և բաժանութիւն յամենայնէ յայլմէ. դր. որինչ է՛ մի-պարտ է՛ գոլ անբաժանեալ յիւրեան ինքեանն, և բաժանեալ յամենայնէ յայլմէ.

Առարկեսցես. թէ միութիւն՝ է՛ անբաժանութիւն ՚ի յիւրեան ինքեանն. ապա ուրեմն է՛ բացասութի, և ոչինչ. զի անբաժանութիւն՝ է՛ բացասութի բաժանման. ապա արդեօք՝ որինչ իք մի. իք բացասական, և ոչ դրական ինչ.

Պատասխանեմք, մեկնելով զառաջին եզրակացութիւն. թէ միութիւն է՛ բացասութի հիմնեալ ՚ի վր դրական իրի. ընդունիմ. է՛ սոսկ բացասութի թարց դրական հիման. ուրանամ. սակս որոյ որինչ իք մի. իք դրական ինչ որոյ վր հիմնի բացասութի բաժանման ՚ի յիւրեան ինքեան. զի եթէ բաժանեալ էր յինքենէ յիւրմէ. ո՛չ էր մի.

Երկրորդ՝ գիտելի է՛. եթէ միութիւն է՛ երկեակ. տեսակական. և թուական, որ և անհատական. տեսակական միութիւն է՛ միութի բնութե ուրուք հասարակի, և յայլոց հասարակ բնութեց որոշելոյ. զոր օրինակ. մարդկային բնութիւն է՛ մի տեսակապէս. դր. տեսակական միութէ. զի ըստ իւր տեսակական հասարակութեն՝ անորոշեալ է՛ յիւրեան ինքեանն, և որոշեալ յայլոց բնութեց առիւծու, ձիոյ, արծուոյ, և այլ. Եւ դարձեալ՝ տեսակական միութիւն է՛ կրկնակի. մինն սեռի, որ պատկանի սեռական բնութե. ո՛րպէս. կենդանոյ,

նւոյ . մարմնոյ . և այլ ։ Իսկ՝ միւսն՝ տեսակի, որ պատկանի տե_
սակաւոր էութեան . որպէս . մարդոյ , առիւծու , և այլ ։

Չորրորդ՝ Թուական միութիւն է՝ միութիւն միոյ եզական անհա_
տի , որ է՝ բաժանեալ յայլմէ անհատէ ։ զոր նման ։ Պղատոն է՝
մի Թուով և անհատական միութեամբ , և Թուով տարբերի՝ ի
Սոկրատայ ։ բայց տարբերի յայն առիւծէ Թուապէս և տե_
սակաբար . զի ոչ միայն Թուով, և անհատական տարբերութեամբ.
այլ ևս տեսակաւ և տեսակական տարբերութեամբ. զի ունի զա_
նազան էութիւն ։

Երրորդ գիտելի է՝ . զի տեսակական միութիւն կրկին ստո_
րաբաժանի՝ ի ֆիզիքայինն որ էական , և մետաֆիզիքայինն որ
համաէական ։ ֆիզիքայինն տեսակական միութիւն է՝ միութիւն
էութեան ուրուք , որ ունի զիրական գոյութիւն ըստ ենթակա_
յացեալ իրի ։ և այսպէս է՝ մի տեսակապէս՝ էութիւնն պղատոնի,
զանազանեալ՝ ի էութենէ առիւծու ։

Իսկ՝ մետաֆիզիքայինն տեսակական միութիւն է՝ միութիւն
էութեան ուրուք հասարակի , որպէս՝ ի վերոյ ասացաք , և վե_
րացելոյ՝ ի վայրագունեցն. որ ոչ է՝ մի ըստ ենթակայացեալ իրի.
այլ միայն ըստ մտաւորութեան . և ստորոգի ընդ միով սահ_
մանաւ զբազում անհատ վայրագունից ։ զի միտքն վերացու_
ցանէ զմի սահման՝ ի բազում անհատից զնման էութիւնս ու_
նողաց . և զայս մի սահմանն ստորոգէ զիւրաքանչիւրոյ՝ ի նո_
ցանէ ։ Եւ այսպէս մի կոչեմք զմարդկայինն ընդհանուր էութիւն
զոր և սահմանեմք՝ կենդանի բանական , ՝ի յառիւծական կամ
ձիական ընդհանուր էութենէ տեսակապէս զանազանեալ. և
այս ստորոգի զբազում անհատ վայրագունիցն , զպետրոսէ ,
զպօղոսէ , և այլ ։

Չորրորդ՝ պատասխանեմք առ խնդիրսն, Թէ միութիւն ընդհան
րին՝ է միայն մետաֆիզիքայինն տեսակական միութիւն՝ բազմաց

հաղորդելի բնութէ, որ է՛ մօտ վերացեալ ՚ի բազում վայրա֊գունից ։ եւ ցուցանի. քանզի ընդհանուրն է՛ մի ինչ հաղորդե֊լի բազմաց. ուրեմն ապա՛ նորա միութիւն է՛ միայն տեսակա֊կան միութի բնութէ ուրուք ՚ի բազմաց հաղորդելոյ ։ որպիսի է՛ մետաֆիզիկայն տեսականական միութիւն՝ թէ սեռի. որգոն. կենդանւոյ, որ է՛ վերացեալ ՚ի յոլովից տեսակաց՝ ՚ի մարդոյ, ՚ի ձիոյ, յառիւծէ, եւ այլ. զորոցն եւ ստորոգի կենդանին ։ թէ տեսակի. որգոն. մարդոյ, որ է՛ վերացեալ ՚ի յոլովից անհատից՝ ՚ի պետրոսէ, ՚ի պօղոսէ, եւ այլ. զորոցն եւ ստո֊րոգի մարդն ։

## Երրորդ խնդիր.

## Թէ որպիսի ինչ պատրաստ է՛ գոլ ընդհանրին բնաւո֊րութի գոլոյ ՚ի բազումս ։

## *Quænam ſit in natura vniuerſali aptitudo eſſendi in multis?*

## Quæſtio Tertia.

Սակս գիտելի է. զի բնական կարողութի, որ եւ ասի բնաւ֊որութի՝ է՛ երկեակ ։ մինն ներգործական. եւ միւսն կրո֊ղական ։ Ներգործական կարողութիւն է՛ զօրութի ինչ արտա֊դրիչ գործոյ ։ որպէս զօրութի հրոյ, որով կարէ հուրն արտա֊դրել զայլ հուր ։ եւ յաղագս այսորիկ ոչ է՛ բան ՚ի ներկայումս ։ Կրողական կարողութիւն է՛ որով մինն կարէ առնուլ ՚ի վր ի֊րեան ինքեան զմիւսն. հն՛ կէն. բնաւ֊որութի փայտի առ ՚ի յառ֊նուլ ՚ի վր իւրեան զջերմութի ։ Արդ՝ լինի երբեմն, թէ մինն ունիցի զերկոսին կարողութիս առ միւսն ։ զոր օրինակ. աչքն է՛ ներգործական եւ կրողական կարողութիւն առ տեսութի. զի

բնաւորի առ ՚ի յարտադրել զանեսութի, և առնուլ զնա ՚ի վր
ներեանն ։

Երկրորդ գիտելի է. թէ կրողական կարողութին անմիասին
՚ի դրական ; և բացասական ։ Դրականն է, որով մինն օժարի
առ միւսն, նէր կատարելի լինչ առ կատարիչն իւր. հն բար.
աչքն ունի զդրական բնաւորութի առնլոյ ՚ի վր ներեան զտես_
սութին. զի տեսութեն կատարի ներքսապէս ըստ բնական
պահանջմանն ներեան ։ և գոյացութին դրապէս բնաւորի են
Թակայիլ պատահմանցն. զի նոքօք կատարի ներքսապէս ըստ
բնական օժարութեն իւրոյ ։

Բացասական կարողութին, որ նոկապէս ասի անհակայու_
թի. է որով մինն կարէ առնուլ ՚ի վր ներեան զմիւսն ոչ օժա_
րութե այլ անհակայութե. զի թէպէտ ոչ պահանջէ զնա բնաւ_
որական օժարութե. ոչ գոլով կատարելինուլա ։ սակայն ոչ
ունի զհակակայութի առնմ. այլ ունի զինքն անզանազանա_
պէս առ ՚ի յառնուլ զնա, կամ ոչ առնուլ ։ այսպէս քանակու_
թին ունի զբացասական կարողութի առ բաժանումն. որմն առ_
ողխաակութի. փայտ առ ջերմութի ։ զի դոքա ոչ պահանջեն
կատարիլ յայսպիսեացս. և ոչ ունին զհակակայութի առ_
նոսին ։

Հ.Երդ՝ պատասխանեմք առ խնդիրսն. թէ ընդհանրին
բնաւորութի գոլոյ ՚ի բաղումն է, դրական կարողութի. ոչ
բացասական ։ ցուցանի. քանզի ընդհանրական բնութին ներ
անկատար լինչ՝ յարտաբերի առ յանհատութիւն որպէս առ կա_
տարիչս ներեանն ըստ բնական պահանջմանն իւրոյ. առմ ու_
րեմն ունի զդրական կարողութի առ նոսա ։ Նախակացութիւ
յայտ է ըստ ասացելոցն ՚ի վերոյ ։ առաջադրկութին ցուցանի.
զի անհատութին է լրումն բնութե, որ նովաւ լինի եզական,
և առաւելն գոյացութի. վն որոյ և կատարելագոյն ըստ պա_
հան

հանձմանն իւրեան ։ այլա ուրեմն հասարակ էութիւն օտարի դրանէս առ յանհատութիւն որպէս առ ներքին կատարիչս իւրեան ներքնանն. այլ ունի դիւրական էաւորութիւն զալոյ ՚ի նոսա. և ոչ բացասական, որպէս կարծեն ոմանք ։

Ձուարկեմ հակառակքն. թէ էաւորութիւն առ բաժանումն ոչ է դրական կարողութիւն, այլ բացասական, որ է անհակայութիւն ։ զոր օրինակ քանակութիւն ոչ օտարի դրանէս առ բաժանումն. այլ միայն ոչ ներհակական բաժանել ։ այլա ուրեմն և կարողութիւն, զոր ունի ընդհանուր էութիւն առ հատել, և բազմանալ անհատութեք. ոչ է դրական կարողութիւն, այլ բացասական, և անհակայութիւն ։

Պատասխանեմք, ընդունելով զառաջարկութիւն. և ուրանալով զհետևակացութիւն ։ և բան զանազանութեան է. զի զի քանակութիւն ոչ կատարի յորժամ բաժանի ՚ի մասունս. սակս որոյ և ոչ օտարի դրանէս առ բաժանելն ։ բայց ընդհանուր էութիւն յորժամ անհատանայ, կատարի ներքնապէս անհատութեքն ըստ էական պահանջմանն իւրեան. վա՛ որոյ էաւորութիւն նորին առ անհատութիւն՝ է դրական օտարութիւն. և ոչ սոսկ անհակայութիւն ։

## Չորրորդ խնդիր.

### Մի թէ էութիւն զանազանի յանհատութենէ իւրեանն ։ Եւ որքանաբար լինի Զանազանութիւն ։

### *An Natura distinguatur ab hæcceitate : & quotuplex sit Distinctio?*

### Quæstio Quarta.

Նախ գիտելի է. թէ զանազանութիւնն է՝ այն, որով մինն ոչ է միւսն ։ և բազմապատիկ լինի ։ Զանազանութեանցն՝

թեցն՝ ոմն է՛ ըստ ենթակայացեալ իրի . ոմն ըստ մակամտա-
ծութե = Զանազանութի ըստ ենթակայացեալ իրին՝ լինի ,
յորժամ միմն ոչ է՛ միւմն ՚ի կողմանէ իրին , ոչ միայն ՚ի կողմա-
նէ մտաց = որպէս . ՚ի պետրոս հոգի զանազանի ՚ի մարմնոյ ըստ
ենթակայացեալ իրի. զի հոգի ոչ գոլ մարմին՝ ոչ է՛ գործ մտաց,
և ոչ լինի մտաւբար միայն . այլ և ս ճշմարտապէս և ՚ի կողմա-
նէ իրին = Զանազանութի ըստ մակամտածութեն՝ լինի , յոր-
ժամ միմն ոչ է՛ միւմն ըստ ներգործութե մտաց միայն . այլ ոչ
ևս ՚ի կողմանէ իրին = հի. բար . ներ այ՝ ողորմութի և արդա-
րութի զանազանին ըստ մակամտածութե միայն . ոչ ըստ են-
թակայացեալ իրին. զի ամ կատարելութիւնք այ ՚ի կողմանէ իրին
և ճշմարտապէս մի են ամենևին , և պարզ ինչ էակ , որ վասն
պատճառական իւր գերազանցութեն համեմատի բազմաց. սակս
որոյ մեք բազմապատիկ զանազան իմաստմբք իմանամք զնոսա՝
բաց ՚ի յանձնաւորութեցն , որք ներ այ զանազանին ՚ի կողմա-
նէ իրին վասն առընչական հակադրութեն զոր ունին առ մի-
մեանս = որպէս մակ ածաբանութեն յառաջ ընձեռութե ճշ-
խաբանեցեալք =

Դարձեալ՝ Զանազանութի ըստ ենթակայացեալ իրին
բաժանի ՚ի յիրական, և յեղանակական = Իրական զանազա-
նութիւն է՛ որով իրն զանազանի ՚ի յիրէ, մինչ զի երկոքեան կա-
րեն ՚ի միմեանց բաժանիլ. և գոլ բաժանեալք, կամ բնականա-
բար . որպան . բանական հոգի և մարմին = կամ գերբնաբար .
հի կէն . գոյացութի և քանակութիւն = Եղանակական զա-
նազանութիւն է՛ որով իրն զանազանի ՚ի յեղանակէ իւրմէ . մինչ
զի թէպէտ իրն կարող լինի գոլ բաժանեալ ՚ի յեղանակէ յայնմա-
նէ . ոչ սակայն կարէ եղանակն գոլ բաժանեալ յիրէն իւրեան .
ոչ բնականաբար, և ոչ ածային կարողութե = զոր նման . պէ-
տրոս զանազանի եղանակաբար ՚ի յընթացմանէ իւրեան, որ ոչ

է իր, այլ եղանակն նորին. զի թէպէտ կարող է պետրոս գոլ առանց ընթացմանն այնորիկ. բայց սակայն ո՛չ կարէ ընթացումն այն գոլ թարց պետրոսի, ոչ բնականաբար, և ո՛չ գերբնաբար:

Եւ դարձեալ՝ Զանազանութիւն ըստ մակամտածութեան՝ երկեակ է. միոյն հիմնեալ և ճշմարիտ. միւսն անհիմնեալ և սուտ. Զանազանութիւն ըստ հիմնեալ մակամտածութեան է, որ ունի զհիմն ՚ի կողմանէ իրին, թէպէտ ինքն լինի ՚ի կողմանէ մտաց. վ̃ որոյ ո՛չ է սոսկմտացածին. Եւ այս լինի, յորժամ մի պարզ էակ ունի զօրութիւն բազում կատարելութեանց, և համեմատի բազում էակաց. յայնժամ միտքն ունի զհիմն ճանաչելոյ ՚ի նմա զմի կատարելութիւն, ոչ ճանաչելով զմիւսն. և այսպէս ճանաչէր զնոյն անբաժանելի էակ ո՛չ լիապէս, այլ անլրաբար. կամ կարէր միտքն ճանաչել զնա լրաբար, ճանաչելով ՚ի նմա զա̃մ կատարելութիւնս նորին բազում զանազան իմացմամբք. թէպէտ էակն այն՝ մի պարզ իցէ. զո՞ր օրինակ. վ̃ զի մի պարզ էութիւն այ՝ համեմատի անթիւ կատարելութեանց. ո̃պ. բարութե. իմաստութե. ողորմութե. արդարութե. և այլ. միտքն ունի զհիմն ճանաչելոյ զնա բազում զանազան իմացմամբք. և այսպիսի զանազանութիւն՝ ասի ըստ հիմնեալ մակամտածութե, զի ունի զինքն ՚ի կողմանէ մտաց. թէպէտ զհիմն ունի ՚ի կողմանէ իրին. և ո՛չ է սուտ ճանաչումն, այլ ճշմարիտ. զի յորժամ ճանաչեմ մեք այ զողորմութիւն հրաժարելով զմիւսս ՚ի յարդարութենէ. ո՛չ սխալեմ. զի ո՛չ իմանամ թէ ողորմութիւնն այ ո՛չ է արդարութիւն. որ սուտ էր: այլ միայն իմանամ զողորմութիւն առանց իմանալոյ զարդարութիւն. որ իմացումն ասի հրաժարական և ճշմարիտ. ո՛չ բացասական և սուտ. զի ո՛չ բացասէ զողորմութիւն զարդարութենէն. այլ միայն հրաժարի յարդարութենէ:

Զանազանութիւն ըստ անհնմնեալ մակամասնութեանն է
որ ոչ ունի զհետս ինչ ՚ի կողմանէ իրին, այլ է՛ սակ մնացա-
ծին և սուտ ճանաչումն = Իբրու զաղափարաւ. յորժամ իմա-
նամ զանազանութիւն ՚ի մէջ մարդոյ, և կենդանւոյ բանա-
կանին որ է՛ մարդոյ էութիւն = կամ յորժամ իմանամ թէ ներ
այ ողորմութիւն ճշմարտապէս ոչ է՛ արդարութիւն, որպէս ՚ի
մեզ = և զայլ ինչ նման =

Երկրորդ գիտելի է. զի յոլովք են նշանակք զանազանու-
թեանց ։ Նախ յորժամ յերկուց՝ մինն է՛ պատճառ, և միւսն պատ-
ճառելի = կամ մինն առընչական առ միւսն = կամ մինն այսպէս
կարէ բաժանիլ ՚ի միւսոյն, մինչ զի երկոքեանն կարեն բաժա-
նեալք լինել, թէ բնականաբար, թէ գերբնաբար = յայնժամ
նշան է՛ թէ գոյ իրական զանազանութիւն ըստ էնթակայա-
ցեալ իրին ՚ի մէջ նոցա։ Նա պատճառն է՛. զի ոչ կարէ նոյն պատ-
ճառել զինքն իւր։ և ոչ կարէ նոյն առընչական առ ինքն իւր։ և
ոչ կարէ նոյն իր բաժանիլ յինքենէ իւրմէ = այսպէս զանազանի
հոգի ՚ի մարմնոյ. քանակութիւն ՚ի գոյացութենէ. հայր ՚ի յոր-
դւոյ. տէր ՚ի ծառայէ և այլ =

Դարձեալ. յորժամ յերկուց՝ մինն կարէ լինել առանց
միւսոյն. բայց ոչ այս միւսն կարէ գոլ առանց նորա, ոչ բնա-
կանաբար, և ոչ գերբնաբար = յայնժամ նշան է՛ եղանակա-
կան զանազանութեան։ որպէս լինի ՚ի մէջ իրի և եղանակի նորա.
որգոն. ՚ի մէջ մարդոյ և ընթացմանն նորա. կամ ՚ի մէջ քա-
նակութե և ձևոյ. և այլ = զի կարէ գոլ մարդն առանց ընթաց-
մանն. և քանակութիւն առանց այսր ձևոյ = բայց ոչ հակա-
դարձաբար. զի ոչ կարէ այս անհատ ընթացումն գոլ առանց
այս մարդոյս. և ոչ այս անհատ ձևս գոլ առանց քանակու-
թեանս այսմիկ =

Դարձեալ. զանազանութիւնն ներգործութեց, իմացմանց,



և սահ

և սահմանաց՝ ոչ է՛ բաւական նշան զանազանութեան ըստ էն-
թակայացեալ իրին ։ քանզի ա̃ծ է՛ մի պարզ սկիզբն . Թէպէտ
արտադրէ զբաշխումն զանազան գործս ։ և միայն է մի սոսկ
զօրութիւն . Թէպէտ ունի զանազան ներգործութիւս . օ̃ր .
զպարզ ըմբռնումն, զդատումն, և զտրամաբանութիւնն ։ Նա́
և կարեմք իմանալ զանազան իմացմամբք, և բացատրել զա-
նազան սահմանօք զողորմութիւնն և զարդարութիւնն ա̃յ, որք
մի են ըստ էնթակայացեալ իրին ։ նոյնպէս և զբանականու-
թիւն և զկենդանականութիւնն մարդոյ. Թէպէտ սոքա՛ ՚ի մարդն
ոչ զանազանին ՚ի կողմանէ իրին, այլ են մի իրական էութիւն
մարդոյ ։ ուրեմն ապա́ զանազանութիւն ներգործութեանցն ,
իմացմանց, և սահմանատրութեանցն՝ ոչ միշտ նշանակէ ըզզա-
նազանութիւնն ՚ի կողմանէ իրին ։

Երրորդ՝ պատասխանեմ առ խնդիրսն ընդդէմ ոմանց փիլի-
սոփայից . Թէ էութիւնն ոչ զանազանի ըստ էնթակայացեալ
իրին ՚ի յայտութենէ . օ̃ր . յանհատութենէն իւրմէ ։ ցուցանի .
քանզի եթէ էութիւն ըստ էնթակայացեալ իրի զանազանեալ
էր յայտութենէն իւրմէ . էութիւն և այտութիւն էին արդեօք
երկու իրական էակք ։ ապա՛ էութիւն ըստ ինքեան առանձնա-
բար իմացեալ՝ գոյր մի իրական էակ անկախապէս յայտութե-
նէն . արդ ուրեմն ըստ ինքեան առանձնաբար իմացեալ՝ գոյր
այս և անհատ անկախապէս յայտութենէ և յանհատութենէ ։
որ է՛ անհնարին բան ։ ցուցանի այս յետին եզրակացութիւս . զի
զիւրաքանչիւրոյ միոյ իրական էակէ կարեմք ճշմարտապէս
ասել . Թէ է՛ այս և անհատ ։ Եւ դարձեալ . եթէ էութիւն
և անհատութիւն էին երկու իրական էակք, և ոչ մի . ապա՛ էին
երկու եզական իրք . զի իւրաքանչիւր իրական էակն գոյ ըստ
ինքեան մի եզական իր ։ ապա ուրեմն էութիւն գոյր մի եզա-

կան և անհատ իր 'ի յինքեան. և ոչ 'ի զանազանեալ անհատութենէ ։

Յառաջելոցս հետևի թէ էութիւն զանազանի 'ի յայսութենէ և յանհատութենէ, միայն ըստ հիմնեալ մակամտածութեան ։ ցուցանի. զի կարէ միտքն ճանաչել 'ի պետրոսի զէութիւննորա. այսինքն. զկենդանի բանականն. ոչ ճանաչելով զայսութիւննորին. այսինքն զպետրոսութիւնն. որ և ասի անհատութիւն ։ Նա և կարէ իմանալ զայսութիւն պետրոսի. հրաժարելով 'ի էութենէ նորին ։ Ապա ուրեմն էութիւնն և այսութիւնն զանազանին ըստ հիմնեալ մակամտածութեան ։

Առարկիցես. թէ պետրոս ըստ էնթակայացեալ իւրն միանի պօղոսի ըստ էութեան, գոլով երկոքեանն կենդանի բանական. և տարբեր է նմին ըստ անհատութեան. այսինքն. ըստ պետրոսութեան ։ Ապա ուրեմն անհատութիւն ըստ էնթակայացեալ իւրն զանազանի 'ի էութենէ ։ Եզրակացութիւնս ցուցանի. վասն զի ոչ կարեն երկուք ըստ նոյն կատարելութեան համաձայնիլ և տարբերիլ ընդ միմեանս ։

Նախ պատասխանեմ առ ձեռնարկութիւն, ուրանալով զառաջարկութիւն ։ Քանզի այդպիսի նմանութիւն և տարբերութիւն ոչ լինի ըստ էնթակայացեալ իւրն. այլ է միայն գործ մտաց ։ զի միտքն ճանաչէ զէութիւն պետրոսի իբրև զանազանեալ յանհատութենէ. այսինքն. 'ի պետրոսութենէ, յորմէ ոչ է՛ իրապէս զանազանեալ ։ և այսպէս իմանայ 'ի մէջ պետրոսի և պօղոսի զբանն համաձայնութեան և տարբերութեան ։

Երկրորդ պատասխանեմ զի թէպէտ և տամ զառաջարկութիւն. բայց տարակուսին մեկնեմ զեզրակացութիւն ։ Թէ ապա ուրեմն 'ի պետրոսի էութիւնն և անհատութիւն զանազանին ըստ էնթակայացեալ իւրն հիմնապէս և զօրութեամբ. ընդունիմ.

տեսակաւ որպէս և ներգործութիւն. ուրանալ։ Ըդ. պէտրոս թէպէտ ներգործութիւն է՝ մի անգամնողան էակ. բայց սակայն համեմատի զօրութիւն երկուց զանազան կատարելութեանց բնութեան և այսութեան. վասն որոյ զհետեւ տայ մտաց և զանեղի ճանաչելոյ՝ ի նմա զերկուս կատարելութիւնս զայդոսիկ իբրև զանազանեալս. և ըստ միոյն տայ խոստովանել զբանն համաւարութեան. ըստ միւսոյն զբանն տարբերութեան.

Բայց արդէնևս պարտ է գիտել. եթէ զորինչ եմ ասացեալ յաղագս բնութեան և այսութեան զանազանելոյ. զնոյն և ասեմ ՚ի վր զանազանութեան համաբնական ստորոգացն էակին. զի սոքա և ոչ զանազանին ՚ի միմեանց ըստ ենթակայացեալ իրին. այլ միայն ըստ հիմնեալ մակամտածութեան. եղբրդ համաբնական ստորոգանքն իրին են կատարելութիւնք. ոմանք նորին վերագոյնք և վայրագոյնք ըստ նմանութեան ստորոգացւիքեաու գաղափարաւ, ՚ի մարդն համաբնական ստորոգանքն են սոքա. էակ. գոյացութիւն. մարմին. բոյս. զգայուն. շնչաւոր. բանական. այս։ Եւ թէն առաջագոյնքն բաղադրեն զմարդոյ էութիւն, որ է կենդանի բանական. իսկ միւնն յետին պատկանի առ ան հատութիւնն մարդոյ, որ է այսութիւն. դոքա յամենեքեանդ ՚ի պետրոս ոչ են ՚ի կողմանէ իրին զանազանեալ էակք. այլ մի սոսկ էակն պետրոսի, որ վս իւր կատարելութեան համեմատի բաղմաց. որպէս. էակութեան. պատահմանցն. գոյացութեան հրեշտակին. մարմնոյն քարինն. բուսոյն ծառոյն. զգայնոյն որդոյն. շնչաւորութեան անխուծու. բանականութեան պօղոսի. և այսութեան ամ իւրաց. վս որոյ զանազանին դոքա ՚ի պետրոս զօրութիւն միայն և ըստ հիմնեալ մակամտածութեան. ոչ ներգործութիւն և իրապէս։

## Հինգերորդ խնդիր.

### Մի՞ թէ գոյ Ընդհանուրն ըստ ենթակայացեալ իրի. կամ թէ միայն ըստ մակամտածութէ.

### *Vtrum detur Vniuersale à parte rei: an verò solum per intellectum.*

### Quæstio Quinta.

Առաջին գիտելի է՛ առասպելական կարծիքն Պղատոնի. որ ասէր, գոլ ըստ ենթակայացեալ իրին 'ի ներքոյ լուսնա_ կան երկնին զնմ ընդհանուր բնութիւն իրացն զատուցեալս յան հատիցն. յորոցն իւրաքանչիւր անհատն հաղորդէր զէութիւն իւր. Բայց այսպիսի կարծիքս է՛ սուտ. քանզի բնութիւն ոչ է՛ անհատիցն արտաքին ինչ, այլ ներքին. զի ստորոգի զնոցանէ. և ստորոգելն է՛ ստորասել թէ մինն ներգոյ ումեմն, և ոչ արտա_ քոյ. Իսկ 'ի ումեմն ոչ կարէ գոլ ըստ ենթակայացեալ իրին ընդհանուր բնութիւն ինչ զատուցեալ յանհատիցն. որպէս Պղատոնն առասպելէր.

Երկրորդ գիտելի է՛ կարծիքն այլ ոմանց փիլիսոփայից. որք ասեն, գոլ զընդհանուր բնութիւն ոչ զատուցեալս յան հատիցն, այլ զմիացեալս ընդ նոսա. զոր օրինակ. մարդկայ_ նն բնութիւն. ասեն. մի է՛ ամենեքին նմա անհատան մարդոյ. և այսպէս կարծեն. համարելով եթէ բնութիւն զանազա_ նեալ է՛ ըստ ենթակայացեալ իրին յանհատութեացն. ուստի հետևաբար վարդապետեն, զմի բնութիւն գոլ 'ի բազում անհատս.

Առաջին եզրակացութիւն. ոչ գոյ ըստ ենթակայացեալ իրի մի ընդհանուր բնութիւն 'ի բազում անհատս. ցուցանի. քանզի բնութիւն ոչ զանազանի ըստ ենթակայացեալ իրին յան հատութեացն. որպէս ցուցաք 'ի վերոյ. ապա ումեմն բազմա_

ցեալ է՝ էութիւն, որպէս և են բազմացեալ անհատութիւքն. և ոչ է՝ մի ՚ի բազումս =

Երկրորդ ապացուցանի. քանզի եթէ գոյր մի էութիւն ՚ի յոլով անհատս. այդպիսի էութիւն ունէր զամենայն զօրութիւնս. իսկ այս է՝ սուտ = ապա ուրեմն և սուտ է՝ առաջեայն = Մեծագոյնն ցուցանի· զի այնպիսի էութիւն ունէր զօրութիւն առնլոյ ՚ի վերայ ինքեանն զանհատութիւս զբազումս և զբազումս մինչ և յանհունս. վասն զի կարէ ած արտադրածել զբազում և զբազում անհատս նոյն էութեան մինչ և յանհունս = ուրեմն ապա այն մի էութիւն զամենայն զօրութիւնս ունէր =

Հաստատի նոյն մեծագոյնն. քանզի եթէ այն մի էութիւն զչափաւոր զօրութիւն ունէր. զայնչափ անհատութիւս կարէր արդեօք առնուլ ՚ի վերայ ինքեանն, և ոչ աւելի = բայց միշտ էնականաբար զանհատութիւս յոլովագոյնս կարէր առնուլ, և զայս մինչ և յանբաւս = ապա ունէր զամենայն զօրութի՛ = զոր ասելն է յոյժ անդէպ =

Առարկիցես. թէ պետրոս և պօղոս են մի տեսակաւ. և տարբերին թուով միայն = արդ ուրեմն ունին զմի ընդհանուր էութիւն, և ոչ զերկուս = եզրակացութիւս ցուցանի, զի պետրոս և ցլապղուխ տարբերին թուով և տեսակաւ. սակս այսորիկ ունին զերկու էութիւս: իսկ պետրոս և պօղոս են մի տեսակաւ = ուրեմն ունին զմի էութիւն =

Պատասխանեմք, մեկնելով զեզրակացութիւն. թէ արդ ուրեմն պետրոս և պօղոս ունին զմի էութիւն՝ կատարեալ և նոյնական միութեամբ. ուրանամ = անկատար և նմանական միութեամբ. ընդունիմ = զի էութիւն պետրոսի և պօղոսի ոչ է՝ մի ամենևին, այլ մի նմանապէս. որ է. ունին զերկու նման էութիւնս = և այս է ասել, եթէ ոչ տարբերին տեսակաւ, այլ թուով միայն: բայց պետրոս և ցլապղուխ ունին զերկու էութիւս

թիս ո՛չ նմանս, այլ աննմանս. և վա՛ այսորիկ տարբերին թուով և տեսակաւ։ Երրորդ՝ ուրուրեք է նմանութիւն. անդ ո՛չ է կատարեալ միութիւն. այլ բազմութիւն. զի ո՛չ կարէ մինն գոլ նման իւրեան ինքեանն, այլ միւսոյն։

Դարձեալ առարկիցես. թէ պետրոս և պօղոս ո՛չ են տարբերք ըստ էութեան. զի ունին զնոյն սահման, և զնոյն էութենական ստորոգիցեալս. այսինքն. կենդանի բանական։ ապա՛ ուրեմն և զնոյն էութիւն. զի սահմանն է յայտնիչ էութեան ենթակայ իրին։

Պատասխանեմք, մեկնելով զհետևութիւն. թէ ապա՛ ուրեմն ունին և զնոյն էութիւն՝ համաբնական. այսինքն. վերացեալ մտօք յանհատութենէն, և զնոյն ըստ մակամտածութեան. ընդունիմ։ ունին զնոյն էութիւն՝ բնական, և զնոյն ըստ ենթակայացեալ իրին ուրանամ։ զի սահմանն է գործ մտաց. և է յայտնիչ էութեան իրին ըստ որում էութիւն իմանի ՚ի մտաց որպէս ինչ զանազանեալ ՚ի յանհատութեանցն։ և այսպէս սահմանի ՚ի պետրոս և ՚ի պօղոս էութիւնն նոցա վերացեալ մտօք յանհատութեցն. այսինքն. ՚ի պետրոսութենէ և պօղոսութենէ. որ նոյն է գործ մտաց. զի ըստ ենթակայացեալ իրին էութիւն ո՛չ զանազանի յանհատութենէ։

Դարձեալ առարկիցես. թէ աստուածային բնութիւն ունի զկատարեալ միութիւն և գոյ ՚ի բազումս. այսինքն. յերիս անձինս։ ապա՛ ուրեմն է ճշմարիտ ընդհանուր. ապա՛ գոյ ընդհանուրն ըստ ենթակայացեալ իրին։

Պատասխանեմք մեկնելով զառաջարկութիւն. թէ աստուածային բնութիւն ունի զկատարեալ միութիւն՝ տեսակական միոյն, որ պատշաճէր առ ընդհանուրն. ուրանամ։ ունի զկատա-րեալ միութիւն՝ անհատական, որ անդիմանայ ընդհանրին. ընդունիմ։ վա՛ որոյ ո՛չ ասի իսկապէս ընդհանուր բնու-

թիւն , թէպէտ գոյ 'ի բազում . զի է՛ մի ոչ միայն տեսակաւ , այլ և թուով . զի հայր , որդի , և հոգին սուրբ՝ են մի թուով ա͞ծ , և ոչ երեք . որպէս երեք անհատք մարդոյ՝ են երեք մարդիկք ։ քանզի , որպէս 'ի վերոյ ցուցաք , ընդհանրին միութիւն՝ պարտ է՛ գոլ միութիւն տեսականին միայն , թուով բազմացեալ . և ոչ միութիւն անհատական և թուական , որ ոչինչ կերպիւ կարէ բազմանալ ։

Երկրորդ եզրակացութիւն . գոյ ընդհանուր բնութիւն ըստ մակամտածութեան ։ ցուցանի . զի թէպէտ բնութիւն ոչ զանազանի յանհատութենէ ըստ էնթակայացեալ իրին . բայց սակայն զանազանի 'ի նմանէ ըստ հիմնեալ մակամտածութեան . որպէս 'ի վերոյ ցուցաք ։ այլ ուրեմն կարէ միտքն ճանաչել 'ի պետրոս և 'ի պօղոս զբնութիւնն , ոչ ճանաչելով զանհատութիւն ն͞ց . զպետրոսութիւն և զպօղոսութիւն ։ այլ այսպիսի բնութիւն մտօք վերացեալ յանհատութեանցն՝ մնայ մի ըստ մակամտածութեան . զի անհատութիւնքն էին պատճառ բազմութեան նորին ։ նա և ունէր զբնաւորութիւն գոլոյ 'ի բազում անհատութիւնս յորոց վերացեալն էր ուրեմն այլ մնայր ընդհանուր ։ զի ընդհանուրն է՛ մի տեսականին կամ սեռական բնութիւն , որ բնաւորի բազմանալ 'ի յոլով անհատս ։

* *
*

# ԵՐՐՈՐԴ ՎԻՃԱԲԱՆՈՒԹԻՒՆ.

Յաղագս համառընչութեան։

Առաջին խնդիրք.

Թէ զինչ իցէ համառընչութիւն. եւ 'ի քանի սեռս բաժանեսցի։

## De Relatione.

## DISPVTATIO TERTIA.

*Quid, & Quotuplex sit Relatio?*

Quæstio Prima.

Պարտ մնալս գիտել. զի էականքն՝ ոմանք են բացարձակք. և ոմանք առընչականք. բացարձակ էական է այն զոր կարեմք իմանալ առանց վերաբերութե առ այլ. որպէս. քար. համառընչականն է, զոր ո՛չ կարեմք իմանալ թարց յարաբերութե առ այլ. որպէս. հայր, որ իմանի վերաբերութե առ յորդի։

Երկրորդ գիտելի է. զի յառընչականացն՝ ոմանք են ըստ կոչմանն. և ոմանք ըստ գոլոյ. համառընչականքն ըստ կոչմանն են նոքա, որք ո՛չ ունին զառընչութի առ այլ. թէպէտ իմանին, և բացատրին այնպիսի առընչութե. զոր նման. թէպէտ ամենակարողութին որ է ամենեւին բացարձակեալ 'ի յառընչութենէ առ ստեղծուածսն. զի ոչինչ կերպիւ կարէ կախել 'ի ստեղծուածոյն. սակայն իմանի և բացատրի 'ի մէնջ վերաբերութե առ ստեղծուածսն. վա որոյ այնպիսի ամենակարողութին ասի առընչական ըստ կոչմանն։

Համառընչականքն ըստ գոլոյ՝ են նոքա որք ունին զճշմարիտ



առըն

առընչութիւն առ այլ։ Եւ սոյնպիսի առընչութիւն ըստ գոլոյն՝ կրկին ստորաբաժանի՝ ի գերազանցական, և ստորոգութենական։ Գերազանցական առընչութիւն է՝, որով միմեանց առ միւսն անմաքրապէս. որ. վս գործելոյ կամ կրելոյ զինչ շուրջ զնովաւ։ զոր օրինակ, արեգակն և լոյսն նորին առ միմեանս գերազանցական առընչութ. և անմաքրապէս. զի լոյս նայի առ յարեգակն որպէս առ պատճառն իւր արտադրողական և պահողական։ և արեգակն նայի առ լոյսն զոր գործէ, որպէս առ պատճառն իւր վախճանական. զի արեգակն եղև և լինի վս լուսոյ։ Եւ ասի գերազանցական առընչութի. զի գերազանցի զամ իրօք, և պատշաճինոցն որպէս էութենական ինչ. և ոչ զանազանի ի նոցանէ ըստ էնթակայացեալ իրին. նմ և ոչ հաստատէ ինքեանն զպատուկ ստորոգութիւն. այլ գերազանցի զամենայնիւքն. զի իւրաքանչիւր էակ թէ գոյացութիւն, թէ որակութի, թէ քանակութի, և այլ՝ նայի անմաքրապէս էութ. առ ած յորոյ նախախնամութենէն միշտ կախի։ վս որոյ իւրաքանչիւր գերազանցական առընչութիւնն պատկանի առ յիւրաքանչիւր ստորոգութիւն. յորմէ և ոչ զանազանի։

Ստորոգութենական առընչութիւն՝ է՝ որով միմեանց առ միւսն մաքրապէս, ոչ վս գործելոյ, կամ կրելոյ զինչ շուրջ զնովաւ։ և այսպիսի մաքուր առընչութիւն բաղկացուցանէ զպատուկ ստորոգութիւն, որ և առընչումն ասի. զորմէ այժմ է բանս. Եւ նովին հայր մաքրապէս նայի առ յորդի. տէր առ ծառայ. կրկնապատիկն առ կէսն. և այլ։

Երրորդ գիտելի է. թէ ի սոյնպիսի առընչականս՝ վեց կարեմք իմանալ. որ. առընչութիւն. առընչակցութիւն. էնթակայ. հիմն. պատճառ հիմնելոյ. և եզր։ առընչութիւն է՝ տեսակ ինչ որով էնթակայ ասի այսպէս կամ այնպէս առըն

 չացեալ

չարեալ առ այլ։ Որպէս. հայրութիւն, որով մարդ առն հայր որդւոյ, և առընչանայ առ յորդին։ Առընչակցութիւն է միաւորումն որ է առընչութեան հաստուցական։ Ինչ քան. որդիութիւն, որ է հաստուցականն հայրութեան։ Ենթակայ՝ է այն, որ յառաջամասնեալն առընչացեալ։ Որպէս. ծնօղ, որ կոչի հայր. կամ ծնեալ որ առն որդի։ Հիմն է այն, որոյ վերայ հիմնի առընչութիւն։ Ինչպէս. որակութիւն է հիմն առընչութեան նմանութեան, կամ աննմանութեան։ Քանակութիւն է հիմն առընչութեան հաւասարութեան կամ անհաւասարութեան։ Ծնողական զօրութիւն է հիմն հայրութեան, և այլ։ Պատճառ հիմնելոյ է թեութիւն առանց որոյ ոչ բղխէր առընչութիւն։ Որպէս. ծնողական արարողութիւնն է պատճառ հիմնելոյ զառընչութիւն հայրութեան. վասն զի է թեութի առանց որոյ ոչ լինէր հայրութիւն ի ծնօղն։ Եզր՝ է այն առ յոր եզրանայ առընչութիւն։ Ինչպէս. որդին է եզր հայրութեան, զի ծնօղն հայրութեամբ նայի առ յորդին։ և հայր է եզր որդիութեան. զի առ հայր եզրանայ որդիութիւն ծնելոյն։

Զորրորդ գիտելի է. եթէ առընչութիւն ունին զներգոյն, և զարտագոյն։ Զոր օրինակ. հայրութիւն ունի զներգոյն ըստ որում յենու ի վերայ ենթակային. այսինքն. ծնողին։ և ունի զարտագոյն ըստ որում առընչանայ առ յեզր. այսինքն. առ յորդի։

Հինգերորդ գիտելի է. եթէ առընչութիւն է երկեակ։ Մինն՝ հակադարձ. միւսն՝ անհակադարձ։ Հակադարձն է, որ լինի ի մէջ երկուց, որք առ միմեանս առընչանան հակադարձաբար։ Որպէս. առընչութիւն ի մէջ ծառայի և տեառն. կրկնապատկին և կիսոյ. հօր և որդւոյն։ Անհակադարձն է, որով մինն առընչանայ առ միւսն. բայց ոչ հակադարձաբար։ Որպէս. առընչութիւն, որով մակացութիւն յարաբերի առ մակացելի. բայց մակացելին ոչ յարաբերի առ մակացութիւն. զի իմացումն

առընչմանայ առ յիմացեալ էնթակայ . բայց էնթակային , որ իմանի , ոչ առընչմանայ առ յիմացումն . և տեսութիւն առընչմանայ առ տեսանելին . բայց ոչ տեսանելին առ տեսութիւն . նա́ և առընչութիւն , որով ստեղծուածն առընչմանայ առ ստեղծօղն . բայց ոչ ստեղծօղն ած առ ստեղծուածն .

Առաջին եզրակացութիւն . Ստորոգութենական առընչութիւն սահմանի յարիստոտելէ այսպէս . Թէ Առինչ այնպիսիք ասին , որք միանգամայն ինքեանք որինչ էնն , այլոց գոլ ասին . և կամ որպէս զի առր և իցէ այլապէս՝ առ այլ = իր . Առինչ է՛ այն , որ զորինչ ունի , է՛ առ այլ . և ոչ զայլ ինչ ունի , բայց միայն ընդայիլ առ յեղը մաքրապէս .

Երրորդ՝ առինչունականացն յատկութիւնք են այսքան . նախ թէ առընչականքն ասին հակադարձաբար = որպէս տէր՝ է՛ ծառայի տէր . և ծառայ՝ տեառն ծառայ = կրկնապատիկն՝ կիսոյն կրկնապատիկ և կէսն՝ կրկնապատկին է՛ կէս . Երկրորդ՝ եթէ առընչականքն գոն միանգամայն բնութեամբ = իր . յորժամ լինի որդի , լինի և հայր . և երբ լինի հայր լինի որդի . Երրորդ՝ եթէ գոն համանգամայն ճանաչմամբ = իր . ոչ ճանաչի հայր , եթէ ոչ յարաբերութեամբ առ յորդի . և ոչ ճանաչի որդի , եթէ ոչ յարաբերութեամբ առ հայր . բայց այդպիսի յատկութիւնք միայն հակադարձ առինչունականացն ընտանեբար պատշաճին և ոչ անհակադարձացն , եթէ ոչ ըստ արտաքին բացատրութեան միայն . զի թէպէտ մակացելին բացատրեցի յարաբերութեամբ առ մակացութիւն . բայց սակայն ոչ գոյ համանգամայն բնութեամբ և ճանաչմամբ ընդ մակացութեան . և ոչ հակադարձի ընդ նմին . եթէ ոչ ըստ արտաքին յարանունութեան միայն = զի թէպէտ մակացութիւն յարաբերի առ մակացելի . վասն որոյ ոչ կարէ գոլ և ոչ իմանիլ թարց մակացելեոյն = բայց սակայն մակացելի՝ կարէ գոլ , և իմանիլ առանց մակացութեան . և է՛ նախկնագոյն բնութեամբ , և ճանաչմամբ , քան

զմակացութի . սակս որոյ և ոչ յարաբերի առ նա . զի մակա-
ցելոյն 'ի բաց բարձելոյ , ընդ նմին 'ի բաց բառնի մակացու-
թիւն : իսկ մակացութեան շարաբարձելոյ , ոչ շարաբառնի
մակացելին :

Երկրորդ եզրակացութիւն . Երեք են սեռք առընչութեանց ըստ Եւրիստոտէլի 'ի հինգերորդ գիրքն համաբնաբանութեան . Առաջին սեռն է առընչութեանց , որք են հիմնեալք 'ի միութե և թիւ : օր. որոց պատճառն հիմնելոյ է միութիւն կամ թիւ . և դոքա բաժանին յերիս տեսակս . քանզի ոմանք են հիմնեալք 'ի վր միութե կամ թուոյ գոյացութե . և յայնժամ միութին հիմնէ զառընչութիւն նոյնութե . իսկ թիւն՝ զառընչութիւն զանազանութե : որպէս . Պետրոս և Պօղոս առընչանան առ միմեանս առընչութ նոյնութե . իսկ Պետրոս և առիւծ՝ առընչութ զանազանութե : զի դոքա նմանին , և տարբերին ըստ գոյացութեան : Եւ ոմանք են հիմնեալք 'ի վր միութե կամ թուոյ որակութե . և այնժամ միութին հիմնէ զառընչութիւն նմանութե . իսկ թիւն զառընչութիւն աննմանութե : որգոն . երկու սպիտակքն առընչանան առ միմեանս առընչութ նմանութե . իսկ սպիտակն և սեաւն՝ առընչութ աննմանութե : զի դոքա նմանին և տարբերին ըստ որակութեան : Եւ ոմանք են հիմնեալք 'ի վր միութե կամ թուոյ քանակութե . և յայնժամ միութին հիմնէ զառընչութիւն հաւասարութե . իսկ թիւն՝ զառընչութիւն անհաւասարութե : որպակ . երկու թզաչափքն առընչանան առ միմեանս առընչութ հաւասարութե : իսկ միթզաչափն և երկութզաչափն . կամ կրկնապատիկ և կէսն՝ առընչութ անհաւասարութե : զի դոքա նմանին և տարբերին ըստ քանակութե :

Երկրորդ սեռն է առընչութեանց , որք են հիմնեալք 'ի յառնել և 'ի կրել . օր. որոց պատճառն հիմնելոյ է արարողութիւն , կամ

 կրո-

կրողութիւն ։ և այսպէս յետ պատճառելութեան՝ պատճառն
առընչանայ մաքրապէս առ գործն իւր որ է պատճառեալ. և
գործն առ պատճառ ։ որպէս. հայր առ յորդի. և որդի առ
հայր ։

Երրորդ սեռն է հիմնեալ ՚ի չափն, և չափելին ։ բայց յայսմ
տեղւոջս չափութիւն ոչ իմանի ըստ քանակութեան. այլ ըստ
օրինակի և օրինակելոյ ։ և այսպէս յարաբերի մակացութիւն
որ է չափելի, առ մակացելի որ է չափն ։ որպէս, բժշկութիւն
արհեստ առ բժշկելի մարմին ։ ճանաչումն առ ճանաչելի են-
թակայն ։ տեսութիւն առ տեսանելին. և այլ ։ զի դոքա ստո-
րաչափին . ՃԻ . զտեսակն առնուն ՚ի յենթակայիցն իւրեանց ։
Թէպէտ մակացելի ենթակայքն ոչ ստորաչափին և ոչ տեսա-
կան որին ՚ի մակացութեանցն ։ վ՞ որոյ այս երրորդ սեռս է անհա-
կադարձ առընչութեանցն ։

## Երկրորդ Խնդիր.

### Միթէ ստորոգութենական առընչութիւնք գոյ իրականս ինչ ՚ի վերայ ենթակայի. կամ թէ միայն արտաքին յարաբերութիւն ։

### *An dentur Relationes prædicamentales à parte rei?*

### Quæstio Secunda.

Առաջին եզրակացութիւն ։ Առընչութիւնքն առաջին սեռ-
ին ոչ են իրականք, և ոչ գոն ըստ ենթակայացեալ իրին.
այլ են սոսկ ինչ արտաքին յարաբերութի ՚ի վերայ ենթակային ։
է ընդ դէմ ոմանց փիլիսոփայից ։ ցուցանի . քանզի եթէ այն-
պէս էին . ապա իւրաքանչիւր իր ունէր զանբաւ առողական
զօրութի զի կարող էր առնուլ ՚ի վերայ իւրեանն զանթիւ առըն-
չութիւնս միմեանութէ կամ անմիմեանութէ. նոյնութէ կամ զանա-
զանու-

զանութեան . և այլ . վերաբերութիւնք առ անթիւ էակս նմանս
կամ աննմանս, զոր կարող էր առնել Աստուած ։ իսկ այս է սուտ ։
ապա ուրեմն և այն, յորմէ այս հետևի ։ փորձառութիւնն յայտ է.
զի զօրութիւն պարտ է համեմատիլ էութեան, որոյ է զօրու-
թիւն . ապա բանական էութիւն զբանական զօրութիւն ունի,
և ոչ զանբանն ։

Դարձեալ ցուցանի . քանզի եթէ այսպիսի առընչութիւնք
էին իրականք. մինն հետևէր զմիւսն մինչ և յանհունս. որ է յայտ
անտեղի ։ վասն զի իրական նմանութիւն, որ ՚ի վերայ միոյ սպիտակին.
հետևէր զառընչութիւն աննմանութեան ՚ի մէջ ինքեանն և սպի-
տակ ենթակային իւրեանն . և դարձեալ ՚ի մէջ նմանութեան և
աննմանութեան գոյր այլ աննմանութիւն ։ և յետոյ ՚ի մէջ երկուց
աննմանութեանցն գոյր նոր նմանութիւն ։ և այսպէս առաջա-
բերին առքան մինչ և յանբաւս ։

Դարձեալ ցուցանի ։ զի մի որևէ սպիտակ գոլ նման միւս
սպիտակ որումն . կամ գոլ աննման միւս սևոյ որումն . ոչ այլ
ինչ է . բայց միայն համանշանել զմիւս որևէ սպիտակ , որպէս
է ինքն. կամ զսևոյն, որպէս ոչ է ինքն ։ ուրեմն ապա նմանու-
թիւն կամ աննմանութիւն ոչ է իրական ինչ՝ որումն ներքսապէս
վերաբերեալ. այլ միայն արտաքին յարանունութիւն ինչ, որով
մի որևէ սպիտակ յարանուանի նման կամ աննման . ըստ որում
նմա համաձայնի միւս ընդդիմակիցն սպիտակ կամ սևոյ ։

Դարձեալ ցուցանի . զի եթէ Աստուած ապականէր ՚ի վերայ միոյ
սպիտակին զայդպիսի իրական առընչութիւն . յայնժամ սպի-
տակն այն ևս կոչիւր նման միւս սպիտակին , կամ աննման
միւս սևին . որպէս ասիւր առաջն ։ ապա ուրեմն ա՛նիրաւ ինչ
է խնամալ ՚ի վերայ սպիտակին զիրական վերաբերեալ էակն , զի
նովաւն կոչեցի նման , կամ աննման ։ ապա այսպիսի առըն-
չութիւնս նմանութեան , նոյնութեան , հաւասարութեան , և այլ . ոչ է


իրա-

իրական ինչ ներքին տեսակ, որով ենթակայն փոփոխեսցի ներքնապէս · այլ միայն արտաքին յարակոչութիւն՝ նման անկեալ յարտաքուստ ՚ի միւսոյն ընդորդակցէն ։

Երկրորդ. Եզրակացութի ։ Առընչութիւն երրորդ սեռին, որ է՛ չափելեացն առ չափն, և անհակադարձ. է՛ իրական. բայց ոչ է՛ ստորոգութենական, այլ գերազանցական ։ Ցուցանի. քանզի մակացութիւն չափելի, որ է՛ ունակութիւն ինչ, հեշտացուցանէ ըզզօրութիւնն մտաց առ ենթակայն իւր մակացելի, որ է՛ չափն իւրեան, նա՛ և կախի ՚ի մակացելեացն որպէս ՚ի պատճառէ ։ ապա ուրեմն ոչ նայի առ մակացելի ենթակայն մաքրապէս, որպէս առ սոսկ եզր ։ ապա ոչ ունի ստորոգութենական առընչութի առ մակացելին. այլ գերազանցականն ։

Երրորդ եզրակացութիւն ։ Ստորոգութենական առընչութիւն երկրորդ սեռին, որ է՛ հիմնեալ ՚ի յառնել և ՚ի կրել. է՛ իրական ներքին ինչ տեսակ. և ոչ արտաքին յարանուանութիւն ։ Ցուցանի. զի արարողական զօրութիւն, որ է՛ գերազանցական առընչութիւն առ գործն իւր պատճառելի. փոփոխի ներքնապէս յորժամ գործն այն պատճառելին լինի պատճառեալ ։ ապա ուրեմն արարողական զօրութիւն, որ էր առաջին միայն գերազանցական առընչութիւն առ կարելի և պատճառելի գործն. յետոյ յորժամ գործն է՛ պատճառեալ, առնու ՚ի վր իւրեանն զիրական ինչ. իմ. ստորոգութենական առընչութիւն, որովն փոփոխեսցի ներքնապէս և առընչասցի մաքրապէս առ գործն պատճառեալ ։ Եզրակացութիւս այս՝ յայտ է ։ Ցուցանի առաջարկութիւն, ներքոյ միոյ ստորակայութիւն ։ քանզի ամ առընչութի թէ գերազանցական, թէ ստորոգութենական՝ ունի ըզբովանդակ լինելն իւր օժարեալ առ յեզր ։ ապա յորժամ եզրն փոփոխի. փոփոխի ևս առընչութիւն ներքնապէս ըստ լինելոյն իւրեանն ։ արդ՝ յորժամ գործն, որ է՛ եզր

ասա

տրամաբանական զօրութեան անցանէ 'ի գործոյ կարելւոյն և պատ-ճառելւոյն՝ առ գործ ներկայական և պատճառեալ. փոխանակ իսկ արդեօք. այսպէս ուրեմն պարտ է՛ եւս փոփոխել ներքսապէս զօրութիւն այն որ էր գերազանցական առընչութիւն առ նա. և առնուլ 'ի վր̄ իւրեանն զիրական ինչ տեսակ. դ̄. զստորո-գութենական առընչութիւն, որով յարաբերեցի մաքրապէս առ եզրն պատճառեալ.

Հաստատի եւս առաւել երրորդ եզրակացութիւս վն̄ զի 'ի յա̄ծայինս այնպիսի առընչութիւնք են իրականք. այսպէս ուրեմն և 'ի մարդկայինս. Առաջարկութիւն ցուցանի. զի 'ի յա̄ծայ-ինս հայրութիւն ոչ միայն է՛ գերազանցական առընչութիւն բաղկացուցիչն հօրն և սկզբն որդւոյն. այլ է՛ եւս ստորոգու-թենական առընչութիւն. որ յարաբերէ մաքրապէս զծնօղն առ ծնեալն. որպէս ճառելի է՛ 'ի յա̄ծաբանութեն. հետևու-թիւն յայտ է՛ յարացուցին. քանզի եթէ 'ի յա̄ծայինս առընչու-թիւնք հիմնեալք 'ի յառնել և կրել՝ ոչ են արտաքին յարանու-նութիւն. այլ իրական կատարելութիւն. այսպէս ուրեմն և նոյն պէս են 'ի մարդկայինս.

Առարկեսցես ընդդէմ առաջին եզրակացութեն. թէ ոչ կա-րէ ենթակայն անցանել 'ի միոյ հակառակէն առ միւսն. եթէ ոչ փոփոխի՝ առնլով 'ի վր̄ իւրեանն զնոր իրական տեսակ. զոր օրինակ. ոչ կարէ որմն 'ի յոչ սպիտակէ լինել սպիտակ. եթէ ոչ փոփոխի իրական սպիտակութեամբ որ յենու 'ի վր̄ նորին. իսկ՝ մի որմն սպիտակ՝ յորժամ դնի միւսն սպիտակ, անցանէ 'ի յոչ նմա-նէ առ 'ի գոլ նման. ապա ուրեմն փոփոխի ներքսապէս, առնլով 'ի վր̄ իւրեանն զիրական առընչութիւն նմանութեն. այսպէս առընչութիւնք առաջին սեռին, որք են հիմնեալք 'ի վր̄ միու-թե և թուոյ՝ գոն իրականք, և ոչ արտաքին յարանուանութի.

Պատասխանեմք. մեկնելով զմեծագոյնն թէ ոչ կարէ ենթա-

 կայն

կայն անցանել 'ի միոյ հակառակէն առ միւսն. եթէ ոչ փոփոխի կամ ներգոյապէս կամ արտաքոյապէս. ընդունիմ = եթէ ոչ փոփոխի միշտ ներգոյապէս միայն. ուրանամ = զի յորժամ որմն 'ի յոչ տեսանելոյն անցանէ առ տեսանել, ոչ լինի 'ի նմա ներքին փոփոխումն, այլ արտաքին. զի. փոփոխի միայն ներգոյապէս աչքն տեսանողի. և յարտաքին տեսութենէն յարանուանի որմն նորապէս տեսանել առանց ներքին իւր փոփոխման = սոյնպէս ասեմք, թէ որմն յարանուանի նորապէս նման առանց ներքին փոփոխմանն իւրեան, զի նոր փոփոխումն միայն լինի ներգոյապէս 'ի միւսն արտաքին սպիտակ լծորդն, որ նորապէս դնի. և առաջին ոչ էրն =

Դարձեալ առարկեցես ընդդէմ երկրորդ եզրակացութեան. թէ ոչ միայն մակացութիւն առընչական առ մակացելի. այլ և մակացելի առընչական առ մակացութիւն = ապա ուրեմն առընչութիւն երրորդ սեռին, որ է հիմնեալ 'ի վերայ չափոյ և չափելոյ՝ է հակադարձ առնինչ, և ոչ անհակադարձ = Ճշմարտութիւն ցուցանի. զի ոչ կարէ իմանալ մակացելին առանց իմանալոյ զմակացութիւն. որգոն. ոչ կարէ իմանալ բժշկելի մարմին առանց իմանալոյ զբժշկութիւն. ապա ուրեմն և մակացելի առընչական առ մակացութիւն =

Պատասխանեմք, ուրանալով զառաջարկութիւն = և առ ցուցումն նորա ասեմ. թէ կարէ իմանալ իրն որ է մակացելի, առանց իմանալոյ զմակացութիւն. որգոն. կարեմք իմանալ զմարմինն որ է բժշկելի, թարց իմանալոյ զբժշկութիւն. վասն որոյ մակացելին ոչ առընչական առ մակացութիւն = թէպէտ ոչ կարէ իմանալ մակացելի ըստ որում է մակացելի, առանց իմանալոյ զմակացութիւն. զի յարաբերի մակացելի 'ի մակացութենէ = որպէս որմն որ է տեսանել, կարէ իմանալ առանց իմանալոյ զտեսութիւն. բայց որմն տեսանել ըստ որում կոչի տեսանել, ոչ կարէ

իմանել անձանց իմանալոյ. զոէսութիւն յորմէ այսպէս յարա_
նուանի = և ստորոտ ոչ հետևի. թէ որչափ որ է տեսեալ
առընչական առ տեսութիւն. և ոչ թէ իւրն մակացելի առընչա_
նայ առ մակացութիւն = այլ միայն հետևի թէ յարակոչումն մա_
կացելւոյն է՝ արտաքին յարանունութիւն և ոչ զանազանեալ ի յար
տաքին մակացութենէ, յորմէ առնանի = զի յարանունութիւն ոչ
զանազանի ի տեսակէ յարանունողէն =

Դարձեալ առարկեցես ընդ դէմ երրորդ եզրակացութեան.
քանզի եթէ մի սպիտակն ասի նման միւսումն առանց ներքին
փոփոխման, և ոչ ըստ իրական առընչութեան որ իցէ ի վր նո_
րին. այլ միայն ըստ արտաքին յարանունութեան, որ բղխէ ի միւ_
սոյն նոր եղեալ սպիտակէն. որպէս ի վերոյ ասացաւ = ապա և
նոյնպէս ասել, թէ ծնողն առանց ներքին փոփոխման ասի հայր
որդւոյ. և ոչ ըստ իրական առընչութեան որ իցէ ի վր ծնողին.
այլ միայն ըստ արտաքին յարակոչմանն, որ բղխէ ի նոր եղեալ
որդւոյն = ապաուրեմն հայրութիւն ոչ է իրական առընչութի.
այլ է միայն արտաքին յարանունութիւն; որպիսի է առըն
չութիւն նմանութեան, հաւասարութեան, և այլ:

.. Պատասխանեմք, ուրանալով զհետևութիւն յարացուցոյն=
և քան զանազանութեան է. զի ծնողական զօրութիւն, առաջ
քան զհայրութիւն, է միայն գերազանցական առընչութիւն առ
ծնանելի որդին, որպէս առ պատճառելի եզրն իւրեան = վն
որոյ յորժամ այն պատճառելի եզրն փոփոխի, և լինի պատ
ճառեալ և ծնեալ. պարտ է և ինքն գերազանցական առընչու_
թիւն փոփոխիլ ներքսապէս, և առնուլ ի վր իւրեանն գիրական
մաքուր յարաբերութիւն առ նա. ըստ. զառընչութիւն հայրու_
թեան = զի բոլոր գոյութիւն առընչութեան ոչ այլ ինչ է, քան թէ
յօժարութիւն առ եզր իւր. սակս որոյ առ փոփոխումն եզրին
հետևի և սա փոփոխումն առընչութեան = բայց ոչ համանմանին նոյն

ւլէս. 'ի յառընչութիւն նմանութեան ։ զի մի սպիտակն՝ առաջ քան զլինել նման. և առաջ քան զդնիլն միւսոյ սպիտակին, ոչ է զերազանցական առընչութիւն առ միւս կարելի սպիտակն։ այլ յորժամ այս միւս սպիտակս դնի. և փոփոխի 'ի ներհայական. ոչ պատ է, զառաջին սպիտակն լինել ներքսապէս փոփոխակից. և լինել նման ըստ երական առընչութեան. այլ միայն ասի նման ըստ արտաքին նոյն յարաբանութեան ։

## Երրորդ խնդիր.

Մի թէ ստորոգութենական առընչութիւն զանազանի ըստ էնթակայացեալ իրին 'ի հիմանէն իւրմէ ։

## An Relatio Prædicamentalis diſtinguatur à fundamento?

## Quæſtio Tertia.

Պատասխանեմք ընդ դէմ այլ ոմանց փիլիսոփայից. թէ զանազանի այսպիսի առընչութիւն 'ի հիմանէ իւրեանն եղանակական զանազանութեամբ ։ ցուցանի. զի կարող է լինել հիմն առանց առընչութեան այսորիկ. և ոչ կարէ լինել առընչութիւն առանց հիմանն իւրեան ։ այլ և որպէս զանազանին 'ի միմեանց ըստ էնթակայացեալ իրին եղանակական զանազանութեամբ ։ առաջարկութիւն ցուցանի. զի յորժամ դնի եզր. բղխի առընչութիւն 'ի հիմանէ. և յորժամ եզր բառնի, բառնի և ս 'ի հիմանէն առընչութիւն ։ զոր օրինակ. յորժամ դնի ծնեալն որ է եզր, բղխէ հայրութիւն 'ի ծնողական զօրութենէ. և յորժամ ծնեալն 'ի բաց բառնի, շարժ բառնի և հայրութիւն. առողջ մնալով ծնողական զօրութեան. այլ և որպէս հայրութիւն զանազանի ըստ իրի 'ի ծնողական զօրութենէ եղանակական զանազանութեամբ ։

ւղղափառեն ասեմք. Թէ հայրութիւն ոչ զանազանի ՚ի հիմա-
նէ. յ̅ւ. ՚ի ծննդական զօրութենէ. այլ միշտ նոյնացեալ է՛ ընդ-
նմին, և միշտ ներընկալեալ ՚ի նմանէ. բայց յայնժամ յարանո-
ւանէ զծնօղն՝ հայր. յորժամ դնի որդի, և ոչ առաջն. և Թէպէտ
առաջն գոյր ՚ի ծնօղն հայրութիւն ըստ իրի նոյնացեալ ընդ-
ծննդական զօրութեան. սակայն ոչ գոյր ըստ յարանունութեան.
զի ոչ ծնեալ էր որդի.

Իսկ՛ արդ՝ ոչ ասի այս իրաւաբար. մի՞ զի ոչ կարէ գոլ տէ-
սակ ինչ ՚ի յէնթակայի, եթէ ոչ յարանուանէ զէնթակայն այս-
պիսի կամ այնպիսի. զո՞ր նմանն. ոչ կարէ գոլ սպիտակութիւն ՚ի
յորմն. եթէ ոչ յարանուանէ զորմն՝ սպիտակ. և ոչ կարէ գոլ
քանականութիւն նոյնացեալ ընդ մարդոյ. եթէ ոչ յարանուա-
նէ զմարդն՝ քանական. և պատճառն է՛. զի տեսակական
գործն յարանունութէ ոչ զանազանի ՚ի տեսականին պատ-
ճառէ, յորմէ բղխէ. ապա ո՛չ կարէ գոլ ՚ի ծնօղն հայրութիւն
ըստ իրի. եթէ ոչ յարանուանէ զծնօղն՝ հայր.

Յասացելոցս՝ նախ հետևի. Թէ հիմն առընչութեան պարտ
է զանազանիլ ըստ էնթակայացեալ իրին ՚ի յեզրէ. զի ուրու-
րեք գոյ առընչութիւն, գոյ և հակադրութիւն. իսկ՛ ոչ կարէ
միիր գոլ ինքեան իւրեանն հակադրեալ. ապա ո՛չ կարէ առըն-
չանալ առ յինքն իւր. այլ առ զանազանեալն ՚ի յինքենէ.

Երկրորդ՝ հետևի. Թէ արարողական և նիւթական պատ-
ճառն առընչութէ է՛ հիմն յորմէ բղխէ առընչութիւն. իսկ
եզր՝ ոչ է՛ պատճառ նորին, և ոչ սկիզբն յորմէ. այլ սոսկ Թէու-
թի առանց որոյ ոչ բղխէր ՚ի հիմանէ առընչութի. որպէս պատ-
ճառ տեսութեան է՛ աչքն. իսկ լոյսն ոչ է՛ պատճառ նորին, այլ
սոսկ Թէութիւն. առանց որոյ ոչ արտադրեալ էր տեսութին
՚ի յաչաց.

Երրորդ հետևի. Թէ էութիւնն առընչութեան է՛ յարաբե-

ռել զհիմն առ յեզր ներգործութեամբ, ոչ զօրութեամբ ։ Եւ պատճառն է. զի առընչութիւն ոչ է իր, այլ եղանակ իրին ։ Իսկ՝ էութիւնն եղանակին կայանայ ՚ի ներգործութեամբ եղանակացուցանել զիրն որոյ է՝ եղանակ. ոչ զօրութեամբ միայն ։ Վասն որոյ ոչ կարէ եղանակն գոլ զատեալ ՚ի յիրէ զոր եղանակացուցանէ. ոչ բնականաբար և ոչ Աստուածային կարողութեամբ ։ զի էութենաբար ունի զներգործութեամբ կախիլն ՚ի յենթակայէ իւրեանն ։

Առարկեցես. թէ կարէ Աստուած բաժանել զպատահումն ՚ի յենթակայէ. որպէս ՚ի հաղորդութեան պահէ զքանակութիւն հացին առանց ենթակայի. ըստ. առանց գոյացութեան հացին ։ ապա ուրեմն կարէ և ս պահել զառընչութիւն բաժանեալ ՚ի հիմանէ ։ Իսկ՝ այդպիսի զատեալ առընչութիւն ոչ յարաբերէր ներգործութեամբ զհիմն առ յեզր, այլ զօրութեամբ միայն. ըստ. կարէր յարաբերել. թէպէտ ոչ յարաբերէր ։ ապա առընչութիւն ոչ ունի էութենաբար՝ զներգործութեամբ յարաբերելն. թէպէտ ունի զայս բնականաբար ։

Պատասխանեմք, մեկնելով զառաջարկութիւն. թէ կարէ Աստուած պահել առանց ենթակայի զիրական պատահումն. որգոն. զքանակութիւն. զպիտակութիւն. զջերմութիւն. և զայլն յայսպիսեացդ. ընդունիմ ։ զի դոքա են իրք, և ոչ կախին էութենաբար յենթակայիցն իւրեանց, այլ միայն բնականաբար ։ զի թէպէտ ոչ կարեն գոլ բնականաբար զատեալք ՚ի նոցանէ. սակայն կարեն գերբնաբար և սքանչելեօք ։ Վասն որոյ կարէ գոլ քանակութիւնն առանձին, և ոչ առնել զքանակ ։ կամ սպիտակութիւն, և ոչ առնել ներգործութեամբ սպիտակ ։ և այլ ։ Չկարէ Աստուած պահել առանց ենթակայի զեղանակական պատահումն. որպէս. զառընչութիւն. զշարժումն. զձևն. զտեսութիւն. զծանուցումն. և զայլն յայսպիսեացդ. ուրանամ ։ զի դոքա ոչ են իրք, այլ եղանակք իրաց. և էութեամբ կախին յենթա-

կայիցն

կայիցն խուբեանց։ սակս այսորիկ ոչ կարէ գոլ շարժումն, և ոչ առնել ներգործութի՛ զշարժեալ։ ոչ ձևն, եթէ ոչ առնէ զձևացեալ։ ոչ տեսութիւն, ոչ առնելով զտեսանօղ։ ոչ առինչ, եթէ ոչ ներգործութի՛ առնէ զառընչացեալ։ զոր նման. ոչ կարէ գոլ կենդանի բանական, որ է՛ էութիւն մարդոյ. և ոչ առնել զմարդն ։

Չորրորդ հետևի. Թէ ստորոգութենական առընչութի՛ն պահանջէ զեզր ներկայ և եդեալ արտաքոյ պատճառաց ներկայապէս: և ոչ կարէ առընչանալ առ յեզր կարելի միայն, կամ ապագայ ։ ցուցանի. զի յայնժամ հայրութիւնն բղխէ՛ ՚ի ծնօղն, և յարանուանէ զծնօղն՝ հայր. յորժամ լինի եզր. Ոի. որդի ։ և ոչ առաջն յորժամ կարելի է՛ որդի, կամ ապագայ ։ այսմ ուրեմն ստորոգութենական առընչութի՛ն պահանջէ զգոյութիւն եզրին. ոչ զկարելութիւն միայն, կամ զապագայութիւն ։

Առարկիցես. Թէ գերազանցական առընչութի՛ն կարէ առընչանալ առ կարելի եզր ։ ուրեմն այսմ կարէ և սոյնպէս առինչն ստորոգութենական ։ եզրակացութի՛ն՝ յայտ է՛ յապացուցի՛։ ցուցանի առաջարկութի՛ն. զի ա՛մ զօրութիւնն է՛ գերազանցական առընչութիւն առ կարելի ներգործութի՛ս իւր ։ որպէս միտքն՝ է՛ գերազանցական առընչութի՛ առ յիմացումն կարելի : և այսպէս զայլոց զօրութե՛ցն ։

Պատասխանեմք, ընդունելով զառաջարկութի՛ն. և ուրանալով զեզրակացութիւն ։ և պատճառ զանազանութե՛ն՝ է՛. զի՛ զի գերազանցական առինչն ոչ զանազանի ՚ի հիմանէ. այլ է՛ նոյն հիմն ըստ որում կարող է՛ գործել կամ կրել զինչ շուրջ զեզրա՛. և այսպէս նայի առ յեզրն կարելի անմաքրապէս, որպէս առ յարատադրելի ՚ի հիմանէ, կամ առ յարատադրօղն նորա ։ բայց ստորոգութենական առինչն զանազանի ՚ի հիմանէ.

և նոյն առ յեղը մաքրայլես, որպէս առ յարատադրեալն. և նդէ ալ արտաքոյ պատճառացն իւրեանն ։

## Չորրորդ Խնդիր.

### Մի թէ ըստ բազմութեան եզերաց՝ բազմանան առընչութիւնքն ՚ի վր հիմանն ։

### *An multiplicetur Relatio ad multiplicationem terminorum.*

### Quæſtio Quarta.

Նան՝ պատասխանեն ոմանք փիլիսոփայք. բազմանալ թուով զառընչութիւն առ թուական բազմութիւն եզերաց ։ Իբրու զաղափարաւ. յորժամ թուով բազմանան որդիքն, բազմանան և թուով հայրութիւնքն ՚ի վր նոյն ծնողին ։ զի առ առաջին հայրութիւն ծնօղն առընչանայ առ յառաջին որդի, և ոչ առ երկրորդն. զի երկրորդն ոչ տակաւին էր եղեալ ։ ապա ուրեմն առ նոր դրութիւն երկրորդ որդւոյն՝ եղև այլ նոր հայրութիւն ՚ի ծնօղն ։ և յորժամ երկու հայրութիւնքն յարաբերին առ յերկուս որդիս ։ և նոյնպէս ասեն առ դրութիւն երրորդ որդւոյն, և այլոցն ։

Բայց ըստ դէմ սորին է ։ քանզի եթէ առընչութիւնքն բազմանայցեն թուով ըստ թուական բազմութեան եզերացն. հետևէր թէ հիմն ունէր զանբաւ առողական զօրութիւն ։ Իսկ այս է յոյժ անտեղի. զի բաւական էնութիւն զբաւական զօրութիւն պարտ է ունել ։ ապա ուրեմն և այլ հաւաստեցուցանեմք զհետևութիւն մեծագունին. վր զի կարէ հիմն. որպէս. արեգական որ տարածել հետևաբար զբազում և զբազում կործս մինչ և յանհունս ։ արդ ուրեմն կարէր հիմն առնուլ ՚ի վր իւրեանն զբազում և զբազում առընչութիւն մինչ և յանհունս, որպէս առընչանայր

չանայր առ գործս այնոսիկ . զոր կարող էր ած ՚ի միասին պահել = Եւ Թէպէտ արտադրելիչ զօրուԹիւն հիմանն ո՛չ գոյր անբաւ . զի արտադրէր զայնպիսի գործս անբաւս հետեւաբար մի ըստ միոջէ = սակայն առողական զօրուԹիւն գոյր անբաւ . զի զբազմագոյն և զբազմագոյն առընչուԹիւս մինչ և յանբաւս միանգամայն առնոյր և պահէր ՚ի վր̅ իւրեանն = զոր օրինակ . Թէպէտ կարէ բաւական միտքն հոգւոյն կամ հրեշտակին արտադրել մինչ և յանհունս հետեւաբար և մի ըստ միոջէ զբազում խմացմունս . բայց սակայն ո՛չ կարէ զամենեսեանն միանգամայն առնուլ և պահել ՚ի վր̅ իւրեանն .

Պատասխանեն այլ ոմանք փիլիսոփայք . Թէ առընչուԹիւն ո՛չ բազմանայ Թո՛ւով , այլ նոյն անփոփոխ մնայ առ բազմուԹիւն Թո՛ւոց և նիւԹոց եղերաց = վս̅ որոյ ըստ կարծեացն դոցա՛ ծնօղն առաջին հայրուԹէն , որով առընչանայր առ յառաջին որդին , առընչանայ և ս առ յերկրորդն ; յերրորդն , և առ յայլսն =

Արդ՝ վս̅ մեկնուԹէ այդպիսի կարծեացդ . նախ գիտելի է՛ Թէ եզր կամ առարկեալն է՛ երկեակ = մինն առ նիւԹոց և իբր առ յոր . իսկ՝ միւսն՝ տեսակաց և իբր ըստ որում = առաջինն է՛ այն , առ յոր նայի և շարակարգի զօրուԹիւն ինչ = որ գոն . նիւԹոց առարկեալն տեսողական զօրուԹեն՝ է՛ սպիտակուԹիւն . սեւուԹիւն . և այլ = առ յորս շարակարգի այնպիսի զօրոԹիւն = երկրորդն է՛ այն , ըստ որում զօրուԹիւն շարակարգի առ յեզր նիւԹոց = որպէս . տեսակաց առարկեալն տեսողական զօրուԹեն՝ է՛ գոյն , ըստ որում այն զօրուԹիւն շարակարգի առ սպիտակուԹիւն, սեւուԹիւն, և այլ = զի աչքն տեսանէ զնիւԹոց առարկեալն իւր . այս̅ . զսպիտակն , ո՛չ ըստ որում է՛ սպիտակ . զի կարէ և ս տեսանել զսեւն որ ո՛չ է՛ սպիտակ . այլ ըստ որում է՛ գունաւոր = յաղագս որոյ գոյ_

նաւորն է՝ տեսակարար առարկելոյն տեսանելեացն. զի ՚ի նմա_ նէ տեսանելիքն առնուն զիւր տեսակն և նովին զանազանին տե_ սակաւ յայլոց զգայարանացն։ իսկ՝ սպիտակն, սեաւն, և այլքն՝ են նիւթաւոր առարկեալք. զի ըստ զանազանութե այդոցիկ՝ ոչ զանազանի զօրութիւն տեսակաւ.

Աստուստ հետևի. թէ յորժամ բազմանան նիւթաւոր առ_ արկեալքն. ոչ բազմանան զօրութիւնք։ իսկ՝ յորժամ բազմանան տեսակաւոր առարկեալքն, բազմանան և զօրութիւնքն։ որպէս. սեռական զօրութիւն՝ մի է. զի մի է՝ գունաւորն. թէպէտ գունաւորին տեսակք են բազումք. ոպ. սպիտակ, սեաւ, և այլ։ դարձեալ՝ լսողական զօրութիւն է՝ մի. զի մի է՝ նորին տեսա_ կաւոր առարկեալն. ոպ. հնչումնաւորն։ թէպէտ նիւթաւ_ որքն են բազումք. ոպ. հնչումն զանգակին. ձայն մարդոյ. թընդ_ մունքն գազանաց. և այլ։ դարձեալ՝ ճաշողական զօրութիւն է՝ մի. զի մի է՝ ճաշակելին. թէպէտ տեսակք սորին յոլովք. ոպ. դառն. քաղցր. և այլ։ նոյնպէս առնմ յաղագս այլոց զօրութեանցն։ և պատճառն է, զի զօրութիւնն առնու զիւր տեսակն, և զիւր զանազանութիւն ՚ի տեսակաւոր առարկելոյն իւրեանց, այլ ոչ ՚ի նիւթաւորէն։

Ըստ նմին գաղափարի տրամաբանեն նոքա ՚ի վ̄ր առընչու_ թեան։ և ասեն, թէ առընչն ունի ևս զերդ տեսակաւոր, և զնիւթաւոր։ հն բար. տեսակաւոր եզր հայրութեն՝ է՝ ծնեալ գոյացութիւն. ոպ. որդի։ իսկ՝ նիւթաւորքն՝ են պետրոս որդի, պօղոս որդի, և այլ։ որոյ սակս առ բազմութիւն նիւթաւոր եզերաց, ոչ բազմանան ՚ի ծնօղն հայրութիւնք. այլ առաջին հայրութիւն, որ նախ յարաբերէր զծնօղն առ պետրոս առաջին որդի, նոյն իսկ անփոփոխ մնալով՝ յարաբերէ զնոյն ծնօղն առ պօղոս երկրորդ որդի, և առ յայլսն. զի թէպէտ բազմանան նիւթաւոր եզերքն. ոչ բազմանայ բանն ծնելոյն, որ է եզր

տեսակաւոր ։ զո՛ր նման . յորժամ բազմանայ նիւթաւոր առարկեալն սպիտակին , սեւին , և այլ . ո՛չ բազմանայ տեսողական զօրութիւն . զի ո՛չ բազմանայ բանն գոյնաւորին , որ է տեսակաւոր առարկեալն տեսանելեացն ։

Իսկ արդ՝ դոյա՛ կարծիքն պակասի արդեօք ըստ բազմաց ։ նախ՝ զի թէպէտ այնպիսի տրամաբանութիւն ճշմարտապէս լինի ՚ի վերայ զօրութեանց , որք են պերազանցական առընչութիւնք առ յառարկեալ եղեալս իւրեանց . վասն որոյ կարեն անփոփոխք տարածիլ առ ՚ի նոյնիլ և ս զկարելի եղեալս, առ յորս անմիջապէս յարաբերին, որպէս կարողութիւնք . ո՛չ որպէս ներգործական մասունք առընչութիւնք ։ բայց սակայն ո՛չ ճշմարտի ՚ի վերայ ներգործութեանց . և մանաւանդ ՚ի վերայ ստորոգութենական մասանց առընչութեանց զի այսք ոմնք են եղանակք իրաց, և ո՛չ իրք որպէս են զօրութիւնքն ։ և էութիւն կախին ՚ի յեզրէ որ ներկայ և եղեալ յարտաքոյ պատճառաց . ո՛չ ՚ի յեզրէ որ կարելի միայն ։ ուստի՝ որք միանգամ են նիւթաւոր եղերք զօրութեան , և ո՛չ սեռակացուցանեն ըզզանազան զօրութիւնս . լինին տեսակարար եղերք ներգործութեանց . և տարբերացուցանեն զներգործութիւնս տեսակաւ . զի զօրութիւնն ըստ հանրականագոյն իմն է՛, քան զներգործութիւն ։ զո՛ր օրինակ . սպիտակն և սեւն , որք են նիւթաւոր եղերք տեսողական զօրութեան , և ո՛չ տարբերացուցանեն ըզզանազան տեսակաւ զօրութիւնս . լինին տեսակաւոր եղերք տեսութեանց , և տարբերացուցանեն ըզզանազան տեսակաւ տեսութիւնս . զի տեսութիւնն սպիտակին՝ տարբերի տեսակաւ ՚ի տեսութենէ սեւին ։ նա՛ և տեսութիւնն միոյ սպիտակին՝ անփոփոխ մնալով ո՛չ կարէ գոլ տեսութիւն երկուց սպիտակաց . զի այս՝ կատարելագոյն է՛, քան զայն . թէպէտ եւ կոչին ընդ նոյն տեսակաւ . և տարբերին միայն թուով ։ ըստ սմին օրինակի , բազում հայրութիւնք թուով տարբերին ՚ի մի-



մեաց

մեայ, և կարէն ստացանիլ առ մի Թուով ծնողական զօրութիւն, որ անփոփոխ մնալով՝ յարաբերի գերազանցապէս առ բազում արտադրելի որդիս։ բայց ոչ կարէ հայրութիւնն միոյ որդւոյ, անփոփոխ մնալով՝ գոլ հայրութիւն երկուց որդւոց. զի այս՝ կատարելագոյն, քան զայն. թէպէտ երկոքինն ընդ նոյն տեսակաւ. և տարբերք միայն Թուով։

Եւ դարձեալ՝ ոչ կարէ նոյն իր՝ անփոփոխ մնալով անցանել ՚ի միոյ հակասականէն առ միւսն. որգոն. ոչ կարէ նոյնն ոչ սպիտակ, անփոփոխ մնալով՝ լինել սպիտակ։ ուրեմն այսմ հայր պետրոսի առաջին որդւոյն, որ այժմ է՝ ոչ հայր պօղոսի. զի այս մինչ տակաւին ոչ ծնաւ. ոչ կարէ յետոյ լինել հայր նորին ՚ի ձեռն առաջին անփոփոխ հայրութեան։ զի նոյնն նոյն մնալով, միշտ զնոյն առնէ, և ոչ երբէք զանազան։ այսպէս առաջին հայրութիւն, որ առաջին առնէր զծնօղն՝ հայր միոյ որդւոյ, և ոչ երկուց. յետոյ անփոփոխ մնալովն՝ ոչ կարէ հայրացուցանել զնոյն ծնօղն զերկուց որդեաց։

Չորրդ. աստէնիւն՝ եղիցի մեր առաջին եզրակացութիւն. նէրում հաստատեմք. թէ առ բազմութիւն Թուաւոր և նիւթաւոր եղերայն՝ ոչ բազմանան Թուով առընչութիւնք ՚ի մի հիմանն. այլ միայն Թուով փոփոխին։ Օր. առաջին հայրութիւն որ առընչացուցանէր զծնօղն առ յառաջին որդի. ՚ի ծնելն երկրորդին ապականի, և ՚ի տեղի նորին բղխէ միւսն կատարելագոյն, որ առընչացուցանէ զծնօղն համանգամայն առ յերկոսին որդիսն։ և ՚ի ծնելն երրորդ որդւոյն՝ ապականի և միւս հայրութիւն այս. և բղխէ երրորդն կատարելագոյն, որով առընչանայ ծնօղն համանգամայն առ յերեքեանս։ և նոյնպէս հետևաբար յաղագս այլոցն։ նա և հակադարձաբար, յորժամ յերից որդեաց՝ մինն մեռանի. ապականի կատարելագոյն հայրութիւն առ նոսա. և բղխէ միւսն անկատարագոյն, որ առ

յերկուս մնացեալսն։ ցուցանի. քանզի՛ ի դնելն երկրորդ սպիտակին առաջին ասացն, ապականի տեսութիւնն առաջնոյն. և դնի նոր կատարելագոյն տեսութիւն որով այլքն տեսանեն համանգամայն զերկոսեն սպիտակն։ և հակադարձաբար, յոր ժամ յերկուց սպիտակացն՝ մինն բառնի, և միւսն մնայ․ ապականի տեսութիւն երկոցունցն. և դնի նոր տեսութիւն անկատարագոյն, որ առ միւսն մնացեալ։ այսմ սոյնպէս ասելի է՝ յաղագս առընչութեացն։

Երկրորդ եզրակացութիւն։ առ բազմութիւն տեսակաց որ եզերացն՝ բազմանան տեսակաւ առընչութիւնքն։ ցուցանի. զի իւրաքանչիւր յարաբերութիւն առնու զտեսակն իւր ՚ի տեսակաց որ եզրէ։ այսմ ուրեմն ՚ի բազմանալն տեսակաց որ եզրի, բազմանայ և տեսակաց առընչութիւն։ առաջարկութեան հաստատի լինել մակածութեամբ. քանզի հայրութիւն. որդիութիւն. նմանութիւն. հաւասարութիւն. և այլքն յայդպիսեացդ՝ են առընչութիւնք տեսակաւ զանազանեալք. զի եզերք նոցին տեսակաւ զանազանին։ վասն զի հայրութիւնն է՝ առ ծնեալն. որդիութիւն՝ առ ծնօղն. նմանութիւն՝ առ յորակութիւն. հաւասարութիւն՝ առ քանակութեան. նոյնութիւն՝ առ գոյացութեան. և այլ։ Եւ դարձեալ ցուցանի յարացուցիւ. զի տեսութիւն սպիտակին, և տեսութեան սևին. իմացումն գոյացութեան, և իմացումն պատահման՝ զանազանին և բազմանան տեսակաւ. զի եզերք նոցին տեսակաւ զանազանին և բազմանան։ Նմանապէս ասելի է՝ ուրեմն յաղագս առընչութեացն։ և պատճառն է. զի առ ինչն՝ որ ինչ է՝ իւրն. առ յեզր է՝։

## Հինգերորդ խնդիր.

### Ամ՛ թէ առընչութիւն եզերանայ առ բացարձակ եզր. կամ թէ առ յառընչակցութիւն։

### *Vtrum Relatio terminetur ad Correlationem : an verò ad rationem absolutam termini.*

### Quæstio Quinta.

Գիտելի է. զի եզրն առընչութեան զերկուս նշանակէ. մի. զառընչակցութիւն. և զհիմն առընչակցեալ, որոյ վերայ է նոր առընչակցութիւն։ որպէս՝ որդի, որ է եզր հայրութեան, զեր կուս նշանակէ. զծնեալ գոյացութիւն. և զորդիութիւն, որ է առընչակցութիւն հայրութեան, և որով ծնեալ գոյացութիւն յարանուանի որդի։ Արդ՝ խնդրի. թէ յերկուցս այսոցիկ՝ առ յո՞րն եզերանայ հայրութիւն. մի թէ առ ծնեալ գոյացութիւն, որ է եզր բացարձակ. կամ թէ առ յորդիութիւն. որ է առընչակցութիւն։

Պատասխանեմք. եթէ առընչութիւն եզերանայ առ յեզր բացարձակն. ընդ դէմ ոմանց փիլիսոփայից, որք ասեն, եզերանալ առ յառընչակցութիւնն։ Նախ ցուցանի. քանզի ՚ի յանհակադարձ առընչականսն՝ առընչութիւն եզերանայ առ բացարձակն։ այսպէս և նոյնպէս լինի ՚ի հակադարձ առընչականսն։ եզերակցութիւն՝ յայտ է յարացուցիւ։ և ևս հաստատի առաւել. զի եթէ մտ. այլականէր ՚ի ծնեալ գոյացութեան զորդիութիւնն. գոյր տակաւին ծնօղն՝ հայր նորին. և ծնողին հայրութիւն եզերանայր առ բացարձակն, ոչ առ յառընչակիցն։ այսպէս և այլ ցուցանի առաւելութիւն. զի մակացութիւն առընչանայ առ մակացելի, որ է բացարձակեալ ՚ի յառընչակցութենէ առ մակացութիւն։ և տեսողութիւն առընչանայ առ տեսողօղն մտ., որ է բացարձակեալ ՚ի յառընչակցութենէ առ տեսողութիւնս։

Դար

Դարձեալ հաւանեցուցանի պատասխանին․ քանզի եզր առընչութե՟՝ է առաջագոյն բնութ՟, քան զառընչութ՟ին․ զի այս կախի ՚ի նմանէ․ և ո՛չ ՚ի սմանէ այն։ Թէպէտ ո՛չ է՛ առաջագոյն՝ ժամանակաւ․ զի յայնժամ բղխէ առընչութիւնն ՚ի վ՟ր հիման․ յորժամ դնի եզր։ Իսկ առընչակցութիւնն, որ ՚ի վ՟ր եզրին, ո՛չ է՛ առաջագոյն բնութ՟, քան զմիւսն առընչութ՟ի․ զի ըստ Արիստոտէլի՝ առընչակցութ՟իք գոն համանգամայն բնութ՟․ զի մինն ո՛չ կախի ՚ի միւսոյն որպէս ՚ի յեզրէ։ Ապա՛ ուրեմն առընչակցութ՟ին ո՛չ է՛ իսկ՝ եզր առընչութե՟․ զի եզրն է՛ բնութ՟ նախկնագոյն քան զառընչութիւնն։

Եւ Դարձեալ ցուցանի․ վ՟ զի ծնօղն ո՛չ է՛ հայր որդիութեն, այլ ծնեալ գոյացութեն․ զի ծնեալն բղխէ ՚ի հօրէ, և ո՛չ որդիութիւնն, որ բղխէ ՚ի հիմանէ իւրեանն․ ըս՟․ ՚ի ծնելոյն։ Ուրեմն ապա՛ հայրութ՟ին ո՛չ նայի ստորոգ․ առ յորդիութիւն, այլ առ ծնեալ գոյացութիւն։ Եւ մի մարդ ո՛չ է՛ նոյն ընդ նոյնութեն որ ՚ի վ՟ր միւսոյն․ զի մարդն է՛ գոյացութիւն․ և առընչակցութ՟ին նոյնութե՟՝ է՛ պատահումն։ այլ է՛ նոյն ընդ միւս մարդոյ որ է՛ բաղադրեալ հիմն նոյնակցութեն այնորիկ։ Ապա՛ ուրեմն առընչութ՟ի նոյնութեն նայի առ բաղադրեալ եզր․ ոչ առ յառընչակցութիւն։

Եւ զնոյն ասեմ յաղագս նմանութե՟, հաւասարութե՟, և այլոց առընչութեցն։

* *

*

# ՉՈՐՐՈՐԴ ՎԻՃԱԲԱՆՈՒԹԻՒՆ.

## Յաղագս Ունակութեանց.

### Առաջին խնդիր.

### Թէ զինչ է Ունակութիւն. Եւ որն է ենթակայ նորին.

## De Habitibus.

## DISPVTATIO QVARTA.

### *Quid ſit Habitus: Et quodnam illius ſubiectum?* Quæſtio Prima.

Նախ գիտելի է. զի Ունակութիւն է մի տեսակ Որակութեան. և տարբերի ՚ի Տրամադրութենէ, որ է որակութիւն միւս տեսակին. զի ունակութիւն ըստ Արիստոտէլի է որակութիւն դժուարաշարժ. այս̄. դժուարապէս կորուսանելի և քակելի. որպէս. սովորութիւն, զոր շահէ մարդն առ ՚ի գործել զբարի. կամ զչարն. իսկ տրամադրութիւն է դիւրաշարժ. զի քակի դիւրապէս. որպէս. տրտմութիւն. առողջութիւն. ուրախութիւն նոյն մարդոյ. և կամ ջերմութիւն ՚ի մէջ փայտի.

Երկրորդ գիտելի է. եթէ ունակութիւն է երկեակ. հեղականն, և ուսումնականն. Հեղական ունակութիւն է զոր ած հեղու ՚ի մէջ մարդոյ, կամ հրեշտակին. հն քար. ածային շնորհք. լոյս փառաց. հաւատ. յոյս. սէր. և այլ. և յաղագս դորա ճառեն Աստուածաբանքն. և կամ մակացութիւնք, զորս եհեղ ած ՚ի մէջ մտացն Ադամայ, և Սողոմոնի. իսկ Ուսումնականն է, որ շահի բազմապատիկ ներգործութեամբք. և յաղագս սորա պատմեսցուք ՚ի ներկայիս.

Երրորդ գիտելի է'. թէ ունակութիւն սահմանի այսպէս։ Ունակութիւն է՝ որակութիւն ինչ դժուարաշարժ, որ տայ զդիւրութիւն, ոչ զկարողութիւն գործելոյ։ Ասի՝ դժուարաշարժ. զի ոչ արագական դիւրաւ այլ բազմապատիկ ներհական ներգործութեամբք։ Ասի՝ որ տայ զդիւրութիւն և այլ. զի ունակութիւնք միայն դիւրացուցանեն ըզզօրութիւն առ՚ի գործել։ և ոչ տան զկարանալն պարզապէս այլ զկարանալն դիւրապէս։ Եւ պատճառն է'. զի ունակութիւն արտադրի՚ի ներգործութեանց զօրութեան։ Սակս այսորիկ ոչ տան. այլ գտանեն ըզզօրութիւն կարօղ գործել։ Առ՚ի տարբերութիւն գերբնական ունակութեանցն լուսոյն փառաց, հաւատոյ, և այլ. որք տան զկարանալն պարզապէս. զի ոչ կարէ մարդ ճանաչել զԱ̅ծ հայեցողական ճանաչմամբ. և ոչ հաւատալ ամ̅սուրբ Երրորդութեան՝ առանց գերբնական հեղեալ ունակութեանցն լուսոյն փառաց. և հաւատոյ։

Առաջին եզրակացութիւն։ Գոն՚ի միտս, և՚ի կամս ունակութիւնք։ Ցուցանի քանզի այսպիսի զօրութիւնք յետ բազմապատիկ արտադրութեան ներգործութեանց իւրեանց՝ ստանան զդիւրութիւն՚ի ներգործել։ Այսպէս ուրեմն զունակութիւն. զի ունակութիւն ոչ այլ ինչ է'. եթէ ոչ դիւրութիւն զոր ստանայ զօրութիւն առ՚ի գործելոյ։ Առաջարկութիւն ցուցանի. զի միտքն յետ բազմապատիկ իմացմանց ստանայ զունակական մակացութիւն, որպէս, զարհեստս, զփիլիսոփայութիւն, զԱ̅ծաբանութիւն. և այլ. որովք դիւրապէս տրամաբանէ շուրջ զմակացելեօքն. շուրջ զարհեստաւորօք. շուրջ զբնական իրօք. շուրջ զաստուածով. և այլ։ Նոյն և կամքն բազում անգամ կրէ զդժուարութիւն՚ի ներգործել.՚ի կամել.՚ի յողորմել.՚ի սիրել.՚ի յատել՝ զէնթակայս ոմանս։ Եւ այսպէս յետ բազմապատիկ ներգործութեանց կամեցողութէ, ողորմութէ, ատելութէ, և այլ.



ստանէ

շահէ դիւրութիւն ողորմելոյ, առելոյ, սիրելոյ զնոյն ենթա_կայսն = արդ ուրեմն շահէ զունակութիս ողորմութե. սիրո_ղութե. առելութե. և այլ =

Երրորդ եզրակացութիւն = գոն եւս ունակութիք ՚ի ներքին ոմանս զգայական զօրութիս մարդոյ և անասնոյ. ըն. ՚ի յիշո_ղութիւն. ՚ի յերևակայութիւն. և ՚ի զգայական ցանկութիւն = ցուցանի. զի ըստ Արիստոտէլի ՚ի կիրքն յիշողութե՝ մարդ որ բազում անգամ սովոր է՛ յիշել. շահէ զունակութիւն դիւրա_պէս յիշելոյ = Եւ մարմնաւոր ցանկութիւնն մարդոյ՝ բազում անգամ հնազանդելով բանական կամաւորութեն. շահէ զու_նակութիւն դիւրապէս հնազանդելոյ = և նոյնպէս լինի ՚ի յեր ևակայութեն = Եւ պատճառն է՛. զի այսպիսի զօրութիք կրեն բազում անգամ զդժուարութիւն ՚ի ներգործել = որոյ աղագաւ կարեն բազմապատիկ ներգործութեք շահել զունակական դիւրութիւնն = Եւ զնոյն ասեմ յաղագս անասնոցն. զի և անա_սունքն հանապազորդ սովորութե բազմապատիկ ներգործու_թեց դիւրանան ՚ի յիշել. ՚ի յերևակայել. ՚ի ցանկանալ = այլ և ՚ի յայսպիսի ներքին զօրութիս իւրեանց շահին ունա_կութիքն =

Երրորդ եզրակացութիւն. ո՛չ գոն ունակութիք ՚ի յարտաքին զգայութիւնս. և ո՛չ ՚ի ներքին զօրութիս ոմանս. ըն. ՚ի զօրութիս աճողական, սննդական, շարժողական, և այլ = ցուցանի. քանզի այսպիսի զօրութիք են հաստատեալք ՚ի գործս իւրեանց. և միշտ գործեն նոյն կերպիւ = զի աչքն բազմապատիկ տե_սութե ո՛չ դիւրանան առ ՚ի տեսանել = և զնոյն ասեմ յաղագս այլոցն =

Առարկեսցես. թէ արհեստաւորքն յետ փորձողական սովո_րութե շահեն զդիւրութիւն շարժելոյ զձեռս, զոտս, և այլ_նս և ճանապարհորդքն սովորութե դիւրապէս երթան և առ_

մնոյ վարատանի. այլ ուրեմն և շարժողական զօրութիւնն շահէ զունակութիւն շարժութե =

Պատասխանեմք. թէ արդ հեստաւոր որքն շահեն զունակութիւն ոչ ՚ի շարժողական զօրութեն, այլ ՚ի միտս, որ ուղղաւորէ կշռեա կամ զտաս ՚ի շարժմանն: և ձեռքն կամ ոտքն դիւրաւս շարժին յեւս սովորութեն՝ ոչ վն ունակութեցն. այլ վն բազմապատիկ ներգործութեքն թուլանան ջիլքն հուրեանց. վն որոյ առաւել յարմարին առ շարժումն = և ՚ի ճանապարհորդս՝ վն սովորութեն երթալոյ, հաստատագոյն լինին մասունք մարմնոյ և ջիլքն հուրեանց. ուստի և ՚ի յերթալն՝ զօրաւորագոյն լինին =

## Երկրորդ խնդիր.

### Թէ զիարդ. և յորմէ պատճառէ արտադրին Ունակութիւնք =

### *Quomodò , & à qua causa Habitus producantur ?*

### Quæstio Secunda.

Առաջին եզրակացութիւն = Ունակութիւնք արտադրին ՚ի ներգործութեանց, որպէս ՚ի յարարողական պատճառէ: հաւանեցուցանի. քանզի յորժամ մի իր որպէս հետևի առ միւսն, որում ոչ ներհակական արտադրիչ զօրութիւն. որպէս զի ոչ գտնի միւն, եթէ ոչ եղեալ է միւսն. յայնժամ ասելի է՛ թէ այս միւսն է՛ պատճառ արտադրիչ նորա = արդ՝ առ ներգործութիւնս հետևի ունակութիւն. և ոչ ներհակական ներգործութեցն զօրութիւն արտադրիչ ունակութե = ապա ուրեմն ասելի է՛. թէ ունակութիւնք արտադրին ՚ի ներգործութեցն որպէս ՚ի յարարողական պատճառէ = փոքրագոյնն ցուցանի. զի ներգործութիւն կենդանւոյ, որպէս կենդանական ինչ է՛ պատճառականագոյն քան զունակութիւն, որ է՛ անկենդանա:

սակայն ո՛չ ներհակականական զօրութիւն արտադրիչ սորին. նա
և եթէ ո՛չ ընդին բազմապատիկ ներգործութիւնք. ո՛չ բառնի՛ ի
զօրութենէ դժուարութիւն գործելոյ. և ո՛չ ներածի դիւրու-
թիւն, և ունակութիւն. այլ ունակութիւն հետևի առ ներ-
գործութիւնս. մեծագոյնն՝ յայտ է. վա՛ զի այնպիսի տրամաբա-
նութիւն՝ հաստատի լինել, զոլ զերկրորդ արտադրիչ պատճառս
իւրոց. և ո՛չ միայն զառաջինն որ է՛ ած. զո՛ր օրինակ. հաստա-
տեցուցանեմք, զհուրն զոլ պատճառ հրոյ. զի մի հուր հետևի
առ միւսն, մինչ զի ո՛չ գնի մինն, եթէ ո՛չ նդեալ է՛ միւսն. և
միում հրոյ ո՛չ ներհակականական զօրութիւն արտադրիչ միւսոյն.
յորմէ ցուցանի. զմի հուր զոլ արտադրիչ պատճառ միւսոյն.
եւ եթէ այս տրամաբանութիւն՝ սուտ լինէր. ո՛չ կարէաք առ
դեօք այլ պատճառաւ հաստատեցուցանել զլինելութիւն
երկրորդ ստեղծեալ պատճառաց. այլ անելի էր ուրեմն. թէ
միայն առաջին պատճառն ած թարց լծորդութեէն երկրորդ
պատճառացն զամ գործս առանձնաբար արտադրէր. և
թէ երկրորդ պատճառքն ո՛չ լինէին ճշմարտապէս պատճառք,
այլ միայն թէութիւք առանց որոյ ո՛չ լինէր գործ յառաջին
պատճառէ. որ ամ յանդիմանայ միախորհուրդ վարդապե-
տութեէն փիլիսոփայից, և ածաբանաց.

Առարկեսցեն. թէ տեսութիւն աչաց՝ հետևի առ լոյսն. զի
եթէ ո՛չ գնի լոյսն, ո՛չ կարէ աչք տեսանել և սակայն ո՛չ հաս-
տատեցուցանի. թէ լոյսն է՛ արարողական պատճառ տեսութեէն.
այլ է՛ միայն թէութիւն առանց որոյ ո՛չ արտադրիւր տեսու-
թիւն 'ի յաչացն որպէս 'ի պատճառէ. արդ ուրեմն թէպէտ ու-
նակութիւն հետևի առ ներգործութիւնս. սակայն ո՛չ ցուցա-
նի բաւականաբար. թէ է՛ գործ արտադրեալ 'ի նոցանէ. որ
պէս 'ի պատճառէ.

Պատասխանեմք, ընդունելով զառաջարկութ̃ին. և ուրա-
նալով զեզրակացութ̃ին ։ և պատճառ զանազանութ̃են է ։ զի առաջին լուսոյն ներհակականի զօրութ̃ի արտադրիչ տեսութ̃են. որպէսզի յայտ է ։ բայց ներգործութ̃եցն ոչ ներհակականի զօրութեան արտադրիչ ունակութ̃է. որպէս 'ի վերոյ ցուցաք ։

Դարձեալ առարկիցես. թէ զօրութ̃ին է՛ և ս պատճառ ունակութ̃եցն ։ այսպէս ուրեմն ոչ միայն ներգործութ̃իցն ։ առաջարկութ̃ին ցուցանի. զի եթէ ոչ դնի զօրութ̃ին. ոչ դնին ունակութ̃իք ։

Պատասխանեմք, մեկնելով զառաջարկութիւնն. թէ զօրութ̃ին է՛ միջնորդական պատճառ ունակութ̃եցն. ընդունիմ ։ է՛ պատճառ անմիջական. ուրանամ ։ զի ունակութիւնն արտադրին անմիջապէս միայն 'ի ներգործութ̃եցն. իսկ միջնորդաբար 'ի զօրութենէ, որ է՛ պատճառ ներգործութ̃եցն ։

Դարձեալ առարկիցես ։ թէ ունակութ̃ին միաւորեալ ընդ զօրութ̃են արտադրեն դիւրապէս զներգործութիւնս ։ այսպէս ուրեմն ոչ կարէ ներգործութ̃ին արտադրել զունակութիւնն ։ ցուցանի եզրակացութ̃իս. զի ոչ կարեն երկուք գոլ առ միմեանս արարողական պատճառք. և պատճառել զմիմեանս ըստ նոյն սեռի արարողական պատճառի ։ թէպէտ կարեն պատճառել զմիմեանս ըստ զանազան սեռի պատճառին ։ որպէս. աչքն է՛ արարողական պատճառ տեսութ̃ե. և տեսութ̃ին է՛ վախճանական պատճառ աչացն. զի աչքն եղև, և լինի վա տեսութ̃ե, որ է՛ վերջնորդին ։

Պատասխանեմք, ուրանալով զառաջարկութ̃ին. զի ունակութիւնն ոչ արտադրէ զներգործութիւնս. այլ միայն դիւրացուցանէ զզօրութ̃ին առ 'ի գործել զայն, զոր ինքեամբ առանձնաբար կարող էր գործել թէպէտ դժուարութ̃է ։ ուստի ու-

նակութենէն գտանէ զզօրութիւն կարող . և ո՛չ տամ նմա՛ զկարողութիւն . այլ միայն է՛ թէութիւն առանց որոյ ո՛չ դիւրացեալս զօրութիւն ներգործէր ։

Դարձեալ առարկեցես . զի եթէ ներգործութիւն արտադրէր զունակութիւն ։ ապա՛ մինն առաջագոյն ներգործութիւն արտադրէր զունակութիւն ինչ ։ կամ ո՛չ ոք ներգործութիւն պատճառէր զնա՛ ։ զի մի ներգործութիւն հետևի առ միւսն . և յորժամ գոյ հետևօղն , ո՛չ գոյ նախընթացն , այլ ապականեցաւ ։ իսկ հետևութիւն է՛ սուտ . զի ունակութիւն ո՛չ լինի 'ի միոջէ ներգործութենէ . այլ լինի յետ բազմապատիկ սովորութեն ներգործութեց ։ ապա ուրեմն և այլ ։

Պատասխանեմք . եթէ ունակութիւն՝ թէ հոգևոր, որ յենու 'ի վր̄ հոգևոր զօրութեցն մտաց և կամաց · թէ մարմնաւոր , որ 'ի վր̄ մարմնաւոր զօրութեցն երևակայութե , ցանկութե , և մարմնաւոր յիշողութեն անասնոյ . ո՛չ է՛ պարզ ինչ և անբաժանելի ըստ սաստկութե . այլ է՛ որակութիւն բաղադրեալ 'ի բազում աստիճանաց սաստկութե ։ սակս այսորիկ առաջագոյն ներգործութիւն ո՛չ արտադրէ զունակութիւն կատարեալ և սաստկացեալ . այլ միայն սկզբնաւորէ զնա՛ ըստ առաջագոյն աստիճանի սաստկութեն այնորիկ զոր հետևաբար շահելոցն է՛ 'ի յայլ հետևօղ ներգործութեցն ։

Երկրորդ եզրակացութիւն ։ ներգործութիւն , որ վերաբերի առ նոր տեսակաւոր առարկեալն. սկզբնաւորէ զնոր ունակութիւն ։ բայց ներգործութիւն , որ վերաբերի առ նոր նիւթաւոր և թուաւոր առարկեալն . ո՛չ սկզբնաւորէ զնոր ունակութիւն. այլ սաստկացուցանէ զառաջինն ։ Այս եզրակացութիւն ունի զերկու մասն ; և վս̄ մեկնութե , գիտելի է՛ . զի ներգործութիւնքն զօրութե ուրուք՝ կամ վերաբերին առ բազում տեսակաւոր առարկեալս . դ̄. տեսակաւ զանազանեալս.

կամ

կամ առ բազում առարկեալս նիւթաւորս . իբր . թուով միայն զանազանեալս . զոր օրինակ . կարէ կամքն արտադրել զերկու կամեցողութիւնս վերաբերութեամբ առ յերկու առարկեալս տարբերս տեսակաւ . նի բար . առ խոնարհութիւն և ողջախոհութիւն ։ կամ վերաբերութեամբ առ յերկու առարկեալս տարբերս թուով միայն . որպէս . պատշաճաւորս առ նոյն խոնարհութիւն ։ Առըդ. սակս . թէ յորժամ բազմանան ներգործութիւնք առ բազում առարկեալս տարբերս տեսակաւ . բազմանան և ունակութիւնք ։ իսկ յորժամ բազում ներգործութիւնք վերաբերին առ բազում առարկեալս տարբերս թուով և նիւթաւորապէս միայն . ոչ բազմացուցանեն զունակութիւնս . այլ սաստկացուցանեն զառաջագոյնն սկզբնաւորեալ ։

Առըդ. ցուցանի առաջին մասն եզրակացութեան . զի ունակութիւնն ունի զինքն 'ի կողմանէ զօրութեան և մարէ ըստ նմանութեան նորին ։ իսկ զօրութիւնն առնու զիւր միութիւն 'ի տեսակաւոր առարկեալ էնթակայէն . որպէս 'ի վերոյ ասացաք ։ ապա ուրեմն և նոյնպէս ունակութիւն առնու զմիութիւն իւր ։ ապա՛ ներգործութիւն վերաբերեալ առ նոր տեսակաւոր առարկեալն , արտադրէ զնոր ունակութիւն ։

Երկրորդ մասն ցուցանի. զի ունակութիւնն ոչ առնու զիւր միութիւն 'ի նիւթաւոր առարկելոյն . այլ միայն 'ի տեսակաւորէն . որպէս տեսողական զօրութիւն ոչ առնու զիւր միութիւն 'ի սպիտակէ , կամ 'ի սևէ . այլ 'ի գունաւորէ , որ է նորին տեսակաւոր առարկեալն ։ ապա՛ ուրեմն նոր ներգործութիւնն վերաբերեալ առ նոր նիւթաւոր առարկեալն՝ ոչ արտադրէ զնոր ունակութիւն . այլ զնոյնն առաջագոյն սաստկացուցանէ .

## Երրորդ Խնդիրք.

### Թէ զիա՞րդ սաստկանան, և թուլանան Ունակութիւնք:

### *Quomodo intendantur, & corrumpantur Habitus.*

### Quæstio Tertia.

Առաջին եզրակացութիւն: ներգործութիւն թուլագոյն քան զունակութիւն. կամ որ է՛ այնչափ սաստիկ, որ չափ սաստիկ է՛ ունակութիւն. ո՛չ սաստկացուցանէ զնոյն ունակութիւն: ցուցանի. զի ո՛չ կարէ նմանն, կամ թուլագոյնն գործել՝ի միւս՝ նմանն, կամ՝ի սաստկագոյնն: որպէս. ջերմութիւն ըստ՝ երկու աստիճանին ո՛չ կարէ սաստկացուցանել զայլ ջերմութիւն հաւասար սաստկութեան, կամ զսաստկագոյնն: այսպէս ուրեմն ներգործութիւն որ ունի զերկու աստիճան սաստկութեան, ո՛չ կարէ սաստկացուցանել զունակութիւն հաւասար սաստկութեան, կամ զսաստկագոյնն: այլ պիտոյ է. զի ներգործութիւն՝ սաստկագոյն իցէ, քան զունակութիւն. զի կարասցէ զնոյն ունակութիւն սաստկացուցանել:

Առարկեսցես. թէ զօրութիւն ունակացեալ՝ արտադրէ զսաստկագոյն ներգործութիւն: այսպէս ո՛չ կարէ սաստկագոյն ներգործութիւն պատճառել զսաստկագոյն ունակութիւն: եզրակացութիւնս ցուցանի. զի շրջումն՝ ըստ փիլիսոփայից է՛ յոյժ անտեղի. բայց ասելն, թէ ներգործութիւնն սաստկանայ պատճառաւ ունակութեան. և թէ ունակութիւնն սաստկանայ պատճառաւ ներգործութեան է՛ շինել զշրջումն ընդդէմ ամ̄ փիլիսոփայից: ապա ուրեմն և այլ:

Պատասխանեմք, ուրանալով զառաջարկութիւն. զի ունակութիւն ո՛չ տայ զսաստկութիւն ներգործութեանց. այլ միայն տայ զօրութեան դիւրութիւն առ՝ի սաստկապէս ներգործել: վ̄ն որոյ սաստկութիւն ներգործութեան ո՛չ նշանէ՝ի յունակութենէ.

թեան. այլ 'ի կարողութեանն զօրութեանն, որ սաստկապէս և քաջութեամբ ներգործէ, թէպէտ դիւրապէս ունելով զունակութիւն. և դժուարապէս ոչ ունելով զնա:

Երկրորդ եզրակացութիւն: Ունակութիւնն թուլանայ և սաստկանայ ըստ ինքեան 'ի հակադրեալ ներգործութեանց. իսկ թուլանայ և սաստկանայ ըստ պատահման 'ի տարազոյգ ներգործութեանց: այս եզրակացութիւն ունի երկու մասն: Եւ վ̄ն մինութեն նախ գիտելի է. զի ունակութեանց՝ ոմանք են հակադրեալք. և ոմանք՝ տարազոյգք: որգոն. 'ի կամս ունակութիւնք սիրոյ և ատելութեան՝ են հակադրեալք. իսկ ունակութիւնք սիրոյ և յուսոյ՝ տարազոյգք: Եւ 'ի միտս ունակութիւնք գիտութեան և մոլորութեան՝ են հակադրեալք. իսկ ունակութիւնք երկրաչափութեան և աստեղաբաշխութեան տարազոյգք: և զնոյն ասեմ յաղագս ներգործութեանց, յորոց՝ ոմանք են հակադրեալք, և ոմանք՝ տարազոյգք:

Դարձեալ գիտելի է. զի որպէս 'ի նոյն ենթակայի կարեն գոլ միանգամայն երկու հակադրեալ որակութիւնք 'ի թոյլ, և ո՛չ 'ի սաստիկ. որգոն. 'ի նոյն մարմնի ջերմութիւն և ցրտութիւն 'ի թոյլ, և ոչ 'ի սաստիկ: այսպէս կարեն գոլ 'ի վ̄ն նոյն զօրութեան երկու հակադրեալ ունակութիւնք 'ի թոյլ, բայց ո՛չ 'ի սաստիկ: Եւ որպէս 'ի նոյն ենթակայի որչափ սաստկանայ ջերմութիւն. այնչափ թուլանայ և պակասի ցրտութիւն. զի սաստկութիւն միոյ՝ անմիաբանալի է ընդ սաստկութեանն միւսոյ հակադրեալ որակութեան, վ̄ն որոյ և արտաքսէ զնա 'ի նոյն ենթակայէ. նմանապէս և որչափ սաստկանայ 'ի վ̄ն նոյն զօրութեանն մի հակադրեալ ունակութիւն. նի բար. ատելութեանն. այնչափ թուլանայ և պակասի միւսն. որգոն. սիրոյ: զի վ̄ն հակադրութեանն սաստկութիւն միոյն՝ անմիաբանալի է ընդ սաստկութեանն միւսոյն:



Եւ

Եւ դարձեալ գիտելի է. զի թէպէտ կարեն գոլ համանգամայն 'ի վ՟ նոյն զօրութեան բազում տարազոյգ ունակութիւնք 'ի սաստիկ. որպէս. 'ի վ՟ նոյն մտաց բազում սաստիկ ունակութիւնք՝ քերականութեան. ճարտասանութեան. լօճիգային. բնաբանութեան. համաբնաբանութեան. աշխարհագրութեան. երկրաչափութեան. աստեղաբաշխութեան. ածաբանութեան. և այլ մակացութեանց, կամ արհեստից: սակայն ոչ կարեն բազմագոյն, և բազմադոյն. զի զօրութիւն՝ չափաւոր է. այլ և թերևս տկար. և ոչ կարէ պահել միանգամայն զայն չափ ունակութիւնս. վ՟ որոյ 'ի շահիլն նոր ունակութեան. թուլանայ և ապականի հինն:

Երկրորդ՝ ցուցանի առաջին մասն 'ի վերոյ եդեալ եզրակացութեան: քանզի նա ըստ ինքեան թուլացուցանէ և ապականէ զտեսակ ինչ 'ի վ՟ ենթակայի. որ արտադրէ 'ի վ՟ նորին զհակադրեալ տեսակն: հիկէն. հուրն որ արտադրէ 'ի փայտի զջերմութիւնն ըստ ինքեան ապականէ զնորին ցրտութիւն: նաև հակադրեալ ներգործութիւնք արտադրեն 'ի վ՟ զօրութեանն զնոր ունակութիւն հակադրեալ՝ հնոյն: ապա ուրեմն հակադրեալ ներգործութիւնք թուլացուցանեն և ապականեն ըստ ինքեանց զհին ունակութիւն: հւ զան. ներգործութիւնք ատելութեան ապականեն ըստ ինքեանց զունակութիւնս սիրոյ:

Երրորդ մասն ցուցանի. զի բազում տարազոյգ տեսակք՝ արտաքսեն զմիմեանս 'ի նոյն ենթակայէ ոչ ըստ ինքեանց, զի ոչ են հակադրեալք. այլ ըստ պատահման. զի ենթակայն իբր չափաւոր ինչ՝ ոչ է ներընդունակ զբազմապատիկ տեսակսն: ապա ուրեմն մի ունակութիւն թէպէտ ոչ հակադրի միւսում. սակայն ըստ պատահման թուլացուցանէ և քակէ զմիւսն. զի զօրութիւնն որպէս չափաւոր, անընդունակ է այսքան ունակութեանց: ապա տարազոյգ ներգործութիւնք՝ ներած ելով 'ի

զօրութիւն զնոր տարազոյգ ունակութիւն . թուլացուցանեն և քակեն ըստ պատահման զհինս տարազոյգ ունակութիւս . զի այսօրինակ ասէ փիլիսոփայն . թէ զգայութիւն որ ջանայ առ բազում . է՛ թոյլ առ յիւրաքանչիւրս ։

## Չորրորդ Խնդիրք .

### Յաղագս գիտնական ունակութեան և ներգործութեան ։ Մի՞ թէ գոյ գիտութիւն . և զինչ իցէ ։

### *De Habitu, & actu scientifico. Vbi, an detur Scientia; & quid sit?*

### Quæstio Quarta.

Պարտ է՛ նախ գիտել . թէ գիտութիւն անձառի 'ի յունակական . և 'ի ներգործականն ։ Ունակական գիտութիւն, որ ընտանեբար ասի մակացութիւն, է՛ ունակութիւն ինչ որ դիւրացուցանէ զզօրութիւն մտաց առ 'ի յարտադրել զգիտական ներգործութիւն իւր ։ Եւ արդ մակացութիւն որ գիտական ունակութիւն՝ տարբերի 'ի յարհեստէ . զի մակացութիւնն է՛ այն, որ 'ի ձեռն պատճառաց ապացուցանէ զընդհանուր սկզբունս իւր ։ այսպիսի է՛ լօճիգայ . բնաբանութիւն . համաբնաբանութիւն . բժշկութիւն . երկրաչափութիւն . և այլքն որք վարեն ապացուցական տրամաբանութեամբ ։ ո՛րգոն . լօճիգայ՝ ապացուցանէ պատճառօք . թէ սահմանն բաղկանայ 'ի սեռէ և տարբերութենէ . և զայլ ինչ սոյնպիսի ։ բնաբանութիւնն ապացուցանէ պատճառօք , թէ ապականելի մարմինն միացեալ 'ի նիւթոյ և տեսակէ ։ և նմանապէս զայլոց գիտական մակացութեանցն ։ Իսկ՛ արհեստ՝ է՛ ունակութիւն մտաց վերաբերեալ առ յարտաքին գործողութիւն . և ո՛չ ապացու-

ցանէ պատճառօք զեզրակացութիւն իւր: այսպիսի է պատկերահանութիւն. հիւսնութիւն. և այլ:

Եւ դարձեալ՝ դիտական մակացութիւն բաժանի 'ի տեսական, և գործնական: տեսական մակացութիւն է, որ հետացուցանէ զմիտս առ 'ի խորհիլ միայն շուրջ զառարկեալ ենթակայիւ իւրով: որպիսի է բնաբանութիւն. համաբնաբանութիւն. աստեղաբաշխութիւն. և այլ: Իսկ գործնականն է, որ պատճառօք խորհի զառարկեալ ենթակայն իւր վերաբերութբ առ 'ի գործ ինչ լինել: այսպիսի է լօճիգայ. բժշկութիւն. և այլ: զի լօճիգայ խորհի զառարկեալն իւր վերաբերութբ առ 'ի լինել զհաւաքաբանութիւն, որով միտքն ուղղաւորի առ 'ի տրամաբանել, և շահել զայլ մակացութիւնս: Նա՛ և արհեստ բաժանի 'ի յազատական, և ծառայական: ազատականն է երաժշտականութիւն. պատկերահանութիւն. քերականութիւն. դրչութեան արհեստ. և այլ: Իսկ՝ ծառայականն է. հիւսնութիւն. ոսկերչութիւն. դարբնութիւն. և այլ:

Առողջներգործական գիտութիւն, որ է՝ մասցներգործութիւն, սահմանի այսպէս. Թէ գիտութիւն է՝ ճանաչութիւն իրին ճշմարիտ, յայտնի, և անյերկբայ՝ 'ի ձեռն պատճառացն նորա: Առնի ճանաչութիւն՝ փոխանակ սեռի. և այսու հաւասարի գիտութիւն ընդ այլ ճանաչմունս, որք ո՛չ ասին իսկապէս գիտութիւնք: որպիսի է մոլորութիւն. կարծիք. հաւատ. և այլ:

Առնին այլքն 'ի բառից՝ փոխանակ տարբերութեան: քանզի ասի ճշմարիտ՝ առ 'ի տարբերութիւն մոլորական ճանաչմանն, որ ո՛չ է՝ գիտութիւն, այլ մոլորութիւն: ասի յայտնի՝ առ 'ի տարբերութիւն հաւատոյ, որ ո՛չ է՝ գիտութիւն, այլ անյայտ ճանաչութիւն. զի հաւատալն՝ է՝ ճանաչել զիրս ո՛չ 'ի ներքուստ, այլ յարտաքուստ. ՊՐ. զի ա՛ծ զնա՛ մեզ ծանուցանէ: Առնի անյերկբայ՝ առ 'ի տարբերութիւն կարծեաց, որ ո՛չ է՝ տիրապէս գի-

տութիւն , այլ յերկբայական ճանաչումն . զի յորժամ յերկբայանամք , նկատելով ոչ գիտեմք ։ Եւ աստ , 'ի ձեռն պատճառացն նորա՝ տու 'ի տարբերութիւն ճանաչմանն առաջին սկզբանց , և պատճառացն . որք ոչ կարեն ճանաչիլ 'ի ձեռն այլ պատճառաց ։ զոր օրինակ . ճանաչումն որով նմանամք , Թէ մարդ է՝ զարմանաւոր վն զի է՝ բանական . սա գիտութիւն . զի ճանաչեմք զարմանաւորութիւն 'ի ձեռն պատճառին իւրեանն . այ . բանականութեան ։ Իսկ ճանաչումն որով գիտեմք Թէ մարդ է՝ բանական , վասն զի է՝ զարմանաւոր . ոչ սոսկ տոյ և ընտանեբար գիտութիւն . զի բանականութիւն որ է՝ առաջին սկզբն բաղկացուցիչ մարդոյ , ոչ ճանաչի 'ի ձեռն այլ սկզբան . այլ 'ի ձեռն գործոյ իւրեանն , որ է՝ զարմանաւորութիւն ։

Ուստի նախ հետևի . ԵԹէ գիտութիւն է՝ գործ ապացուցութեան վն որ . ոչ ապացուցութեան վն զի . զի ապացուցութիւն վն որոյն եզրակացուցանէ զճանաչումն իւրն 'ի ձեռն պատճառացն նորա ։ Եւ ապացուցութիւն վն զի՝ 'ի ձեռն գործոյ ։ Երկրորդ՝ հետևի . ԵԹէ կարծիքն տարբերի 'ի հաւատոյ . զի զորինչ կարծեմք գիտեմք . յերկբայութեամբ և երկիւղիւ գիտեմք ։ Բայց զորինչ գիտեմք հաւատով . աներկբայութեամբ և հաստատութեամբ գիտեմք ։ վն որոյ հաւատն է՝ ճշմարիտ , Թէպէտ և անյայտ ։

Գ-րդ գիտութեան սահմանն ցուցանի . զի գիտութիւն պարտ է՝ տարբերիլ 'ի մոլորութենէ . ապա ուրեմն պարտ է՝ գոլ ճշմարիտ ։ Եւ տարբերիլ 'ի կարծեաց . ապա աներկբայ ։ Եւ տարբերիլ 'ի հաւատոյ . ապա յայտնի ։ Եւ տարբերիլ 'ի ճանաչմանէ առաջին սկզբանցն . ապա ուրեմն պիտոյ է՝ գոլ ճանաչումն իւր 'ի ձեռն պատճառացն նորա ։

Եւ դարձեալ պատասխանի առ խնդիրսն . Թէ գոյ գիտութիւն ըստ ենԹակայացեալ իւրի ։ ցուցանի . զի ամ մարդ ջնա-

իմանաբար ցանկանայ գիտել ։ այլ ուրեմն գոյ գիտութիւն ։ քանզի բնական ցանկութիւն ոչ կարէ գոլ ընդ վայր, իսկ եթէ այսպիսի ցանկութիւն ոչ երբէք հասանէր առ ՚ի ներգործութիւն, գոյր արդեօք ընդ վայր. այլ հասանի երբեմն առ ցանկացեալ գիտութիւն ։ Դարձեալ ցուցանի ընդ դէմ Հակառակին. վասն զի դու հակառակդ, որ գիտես թէ ոչ գոյ գիտութիւն. կամ գիտես զայդ յերկբայաբար և ոչ յայտնապէս ՚ի ձեռն պատճառացն նորա ։ և այդպիսի յերկբայական կարծիքդ ոչ է հաստատ ճանաչումն ճշմարտութեան ։ կամ գիտես զայդ ճշմարտապէս, յայտնապէս, անյերկբայաբար, և պատճառաւն իւրով ։ այլ դու իսկդ ունիս զգիտութիւն, զոր ուրանաս ։

Առարկիցես. թէ գիտութիւնն սկսի ՚ի զգայութենէն ։ զի ոչինչ գոյ ՚ի միտս, եթէ նախ ոչ եղև ՚ի զգայութիւն ։ իսկ զգայութիւնքն կարեն խաբել. զի բազում անգամ աչացն երևի փայտ ՚ի մէջ ջրոյ որպէս կորեալ, թէպէտ ոչ է այսպէս ։ այլ ուրեմն և միտքն խաբի ։

Պատասխանի. զի թէպէտ զգայութիւնն խաբի երբեմն, բայց ոչ միշտ ։ և յորժամ մոլորի մի զգայութիւն, որպէս, աչքն ։ կարէ ուղղել և ստուգել ՚ի միւսոյ, հի բար, ՚ի շօշափելեացն ։

## Հինգերորդ Խնդիր.

Մի թէ կարեն գոլ միանգամայն ՚ի միտս ներգործութիւնքն գիտութեան և կարծեաց ։ կամ գիտութեան և հաւատոյ վերաբերութեան առ նոյն առարկեալ ենթակայն ։

*An possit stare simul in intellectu scientia cũ opinione, aut cũ fide.*

Quæstio Quinta.

Նախ գիտելի է. եթէ ըստ ոմանց փիլիսոփայիցն կարեն գոլ համանգամայն ՚ի միտս ունակութիւն գիտութեան և

ունակ

ունակութիւն կարծեաց առնոյն առարկեալ ենթակայն. կամ թէ ունակութիւնքն գիտութեան և մոլորութեան. կամ թէ ունակութիւնքն գիտութեան և հաւատոյ։ և պատճառն է․ զի թէպէտ այսպիսի ունակութիւնքն են հակադրեալք. բայց սակայն գոն դրական ինչ. և ոչ ունին զհակասութիւն։ ապա ուրեմն կարեն գոլ երկոքինն միանգամայն 'ի միում, թէպէտ բնականաբար 'ի թոյլ. իսկ գերբնաբար երկոքեանն 'ի սաստիկ։ զո̃րնման. ջերմութիւն և ցրտութիւն թէպէտ են որակութիւնք 'ի միմեանց հակադրեալք. սակայն կարեն գոլ համանգամայն բնականաբար երկոքեանն 'ի թոյլ 'ի նոյն ենթակայի. և կարեն գոլ ևս 'ի սաստիկ ըստ ա̃ծային կարողութեան. զի ոչ ունին զհակասութիւն.

Երկրորդ գիտելի է. զի և առանց տարակուսութեան կարեն գոլ միանգամայն 'ի միում ունակութիւն գիտութե̃ և ներգործութի̃ կարծեաց. կամ ունակութի̃ մոլորութե̃ և ներգործութիւն գիտութե̃։ վ̃ս զի եթէ կարեն գոլ միանգամայն երկու հակադրեալ ունակութիւնք. ապա ևս առաւել մի ունակութի̃ ընդ հակադրեալ ներգործութեան։ զի սոքա զնուազագոյն հակադրութիւն ունին. քան թէ նոքա։ Առդ՝ բոլոր վիճաբանութի̃ որ 'ի մէջ փիլիսոփայիցն կայանայ 'ի ներգործութի̃ս. մի թէ երկու հակադրեալ ներգործութիւնքն կարեն գոլ 'ի միում համանգամայն։

Առաջին եզրակացութի̃։ ոչ կարեն գոլ միանգամայն 'ի միում ներգործութիւն գիտութե̃, և ներգործութի̃ կարծեաց վերաբերութե̃ առ նոյն առարկեալ ենթակայն. ոչ բնականաբար. և ոչ գերբնաբար։ ցուցանի. զի կարծիքն է այն որով միտքն ճանաչէ զիրն յերկբայաբար և տարակուսութե̃. որգոն. ճանաչէ թէ այն մարդն թերևս է պետրոս, մինչ զի կարող իցէ ոչ գոլ պետրոս։ և գիտութիւն է այն որով միտքն ճանաչէ հաս-

 տատա-

տատանալէս և անյերկբայաբար, թէ մարդն այն է՛ պետրոս ամենևին, մինչ զի ո՛չ կարէ ո՛չ գոլ պետրոս։ բայց ո՛չ կարէ միտքն ծանաչել միանգամայն թէ նոյն մարդն կարէ ո՛չ գոլ պետրոս, և ո՛չ կարէ ո՛չ գոլ պետրոս։ այլ ուրեմն ո՛չ կարէ ծանաչել զնոյն իրն միանգամայն կարծեօք և գիտութեամբ։ հետևութիւն՝ յայտ է։ փոքրագոյնն ցուցանի. քանզի ո՛չ կարէ միտքն համաձայնիլ միանգամայն երկուց հակասականաց, ո՛չ և՝ աստուածային ամենակարողութեամբ։ իսկ կարանալ ո՛չ գոլ պետրոս. և ո՛չ կարանալ ո՛չ գոլ պետրոս՝ են երկու հակասականք։ ուրեմն այլ ո՛չ կարէ միտքն համաձայնիլ նոցա համանգամայն։ սակս այսորիկ ո՛չ կարեն գոլ միանգամայն ՚ի միտս կարծիք և գիտութիւն առ նոյն առարկեալ ենթակայն. զի բերեն ընդ ինքեանս զհակասութիւն։

Առարկիցես. թէ հակասականքն են նոքա, յորոց մինն ստորասէ զոր ինչ բացասէ միւսն. վասն որոյ մինն է՛ ստորասական, և միւսն՝ բացասական: հն բար. գիտութիւն, և ո՛չ գիտութիւն. կարծիք, և ո՛չ կարծիք։ իսկ գիտութիւն և կարծիք՝ են երկոքեանն դրական ինչ. և ներհականք. ո՛չ հակասականք: այլ ուրեմն կարեն գոլ միանգամայն ՚ի միտս աստուածային կարողութեամբ։ զի աստուած կարէ գործել առ յարտաքս զամենայն ինչ որ ո՛չ ներընդունի զհակասութիւն։

Պատասխանեմք, մեկնելով զփոքրագոյնն. թէ գիտութիւն և կարծիք՝ ո՛չ են հակասականք ըստ ինքեանցն իւրեանց, և ներքսալես.ընդունիմ, վասն պատճառացն զորս առբերէ ձեռնարկութիւն։ ո՛չ են հակասականք ըստ եզրակացութեան, և արտաքսապես ուրանամ։ զի եզրակացուցանեն զերկուս հակասականս. և նոքօք միտքն համաձայնէր երկուց հակասականաց. որպէս ցուցաք ՚ի վերոյ. որ է՛ ամենևին անկարելի։

Երկրորդ եզրակացութիւն։ ներգործութիւն գիտութեան, և ներգործութիւն հաւատոյ կարեն գոլ միանգամայն գերբնաբար

՚ի նոյն

՚ի նոյն միտս առ նոյն առարկեալ ենթակային. ցուցանի. զինէր գործութիւն հաւատոյ զո՛չ ինչ ճանաչէ ՚ի վե՛ր իրքն որ հակառա_ կան իցէ առարկելոյն գիտութեան. այլ ուրեմն գիտութիւն և հաւատ՝ կարեն գոլ միանգամայն առ նոյն առարկեալ ենթակա_ յն. Առաջարկութիւն ցուցանի. զի հաւատն ճանաչէ զիւրն հաս տատապէս և անյերկբայաբար. որպէս և ճանաչէ գիտութիւն. զո՛ր օրինակ. կարէ փոխանակ ճանաչել զայ̃ գոյութիւն գիտու_ թեամբ ՚ի ներքուստ և արտաքնութեամբ. այ̃. ՚ի ստեղծուածոցն. զի որ է պատճառ ամ̃ ստեղծեալ պատճառացն. այն է ած̃. և կարէ ևս համանգամայն ճանաչել զնոյն ած̃ հաւատով ՚ի յար տաքուստ. այ̃. հաւատալով սբ̃ գրոցն. նորում ինքն ած̃ զինքն մեզ ծանուցանէ.

Առարկիցես. Թէ ոչ կարէ միտքն ճանաչել միանգամայն զնոյն իրն յայտնապէս և անյայտաբար. ուրեմն այլ ոչ կա_ րէ ճանաչել զնոյն իրն համանգամայն գիտութեամբ և հաւատով. զի գիտութիւն է՛ յայտնի ճանաչումն. և հաւատն է՛ ճանաչումն անյայտ.

Պատասխանեմ. մեկնելով զառաջարկութիւն. Թէ ոչ կա_ րէ միտքն ճանաչել զնոյն իրն համանգամայն յայտնապէս և անյայտաբար՝ ՚ի ձեռն միոյ միջնորդին, և բնականաբար. ըն_ դունիմ. ոչ կարէ ՚ի ձեռն երկուց միջնորդաց, և գերբնաբար. ուրանամ. այ̃. կարէ միտքն ՚ի ձեռն յայտնի արարածութեան ճանաչել գիտութեամբ և յայտնապէս զգոյն այ̃. և միանգամայն ՚ի ձեռն ասացելոյն ՚ի սբ̃ գիրսն ճանաչել զգոյն այ̃ անյայտա_ բար, և հաւատով. միանգամայն ասեմ՝ ոչ բնականաբար. զի յորժամ միտքն յայտնապէս բնականաբար զայն ճանաչէ. անդրադարձուցանէ զինքն առ այն յայտ ճանաչումն. վն̃ որոյ ոչ կարէ այդպէս անդրադարձեալ ճանաչել զնոյնն անյայտա_ բար. բայց միանգամայն կարէ զայդ գերբնաբար և ըստ ած̃այ

ին կարողութեն . զի կարէ մտ՟ արգելուլ զայնպիսի անդրադար-
ձութս մտաց 'ի վր՟ յայսմանի ծանուցմանն իւրեան = և յայնժամ
համանգամայն ծանուցէր զնոյն իրն յայտնապէս գիտութեն . և
անյայտաբար հաստատէր = զի յայտնապէս և անյայտաբար
ունին զենքեանս 'ի կողմանէ երկուց ծանուցմանցն, ոչ 'ի կողմանէ
ծանուցեցեալ իրին . սակս այսորիկ ոչ հակառակէր միմեանց երկուց
հակասականաց =

Յաւսացելոցս հետևի . եթէ ոչ կարէին գոլ համանգամայն 'ի
միասին ներգործութիւնք գիտութեան և մոլորութեան առ նոյն .
առարկեալ ենթակայն = և ոչ ներգործութիւնք մոլորութեան
և հաստատոյ = և ոչ ևս հաստատոյ և կարծեաց = զի միմեանց գի-
տութեն կամ հաստատոյ ծանուցէ զիրն գոլ այնպիսի ճշմարտա-
պէս և անյերկբայաբար . իսկ մոլորութեն ծանուցէ զնոյն իրն
ոչ գոլ այնպիսի . և կարծեացն ծանուցէ թէ կարէ ոչ գոլ այն-
պիսի = ապա հակառակէր երկուց հակասականացն . որ անհնա-
րին է մտ՟ իրօք =

## Վեցերորդ Խնդիր .

### Թէ յումմէ ենթակայէ ունակացութիւն . այս . ունակական գիտութիւն առնու զմիութիւն իւր =

### *A quonam habitualis scientia sumat, suam unitatem, et distinctionem?*

### Quæstio Sexta.

Վասն պատասխանատրութեան . նախ գիտելի է . զի ենթա-
կայ է եռակի = առաջինն ասի ենթակայ յենողութեան .
և է այն , որոյ վր՟ տեսակ ինչ յենու = որպէս . փայտ է ենթա-
կայ ջերմութեան . որպէս՝ սպիտակութեան . բնութին՝ յատկու-
թէց իւրեանն . և այլ = Երկրորդն ասի ենթակայ ստորոգու-

թեան. և է՛ այն զորմէ ստորոգեցեալն ստորոգի։ որզան՝ ի նախադասութենս՝ մարդ է՛ կենդանի. մարդ է՛ ենթակայ, զորմէ ստորոգի կենդանին։ Երրորդն՝ ասի ենթակայ մակացութեան, որ և տիրաբար կոչի առարկեալ. և է՛ այն, զորմէ ընձեռէ և ծառէ մակացութիւն. կամ այն, առ յոր եզրանայ ներգործութիւն մակացութեան ուրուք։ և յաղագս սորին է՛ բանս առաջիկայս։

Երկրորդ գիտելի է՛, եթէ առարկեալ ենթակայդ մակացութեան է՛ երկակի. մինն նիւթաւոր. և միւսն տեսակաւոր։ նիւթաւորն է՛ այն, առ յոր է՛ մակացութիւն։ հի բար. նիւթաւոր ենթակայ բժշկութեան է՛ մարմին, առ յոր նայի բժշկութիւն։ Իսկ՝ տեսակաւորն է՛ այն, ըստ որում մակացութիւն նայի առ նիւթաւորն։ հի զան. տեսակաւոր ենթակայ բժշկութեան է՛ առողջանալին, ըստ որում բժշկութիւն նայի առ մարմինն։ քանզի բժշկութիւն ո՛չ խորհի զմարմինն որպէս զի արդ և եղէ. այլ միայն ըստ որում առողջանալի է՛։

Երրորդ՝ պատասխանի առ խնդիրսն. թէ մակացութիւն առնու զմիութիւն ՚ի տեսակաւոր ենթակայէ. ո՛չ ՚ի նիւթաւորէն։ ցուցանի. զի մակացութիւնքն առնուն զմիութիւն իւրեանցն ՚ի նմանէ յորմէ և առնուն ըզզանազանութիւն։ Իսկ՝ առնուն զանազանութիւն իւր ՚ի տեսակաւոր ենթակայէ, և ո՛չ ՚ի նիւթաւորէն։ այսպէս ուրեմն և այլ։ փոքրագոյնն ցուցանի. քանզի մարմինն է՛ նիւթաւոր ենթակայ բժշկութեան, երկրաչափութեան, և բնաբանութեան։ զի ամ մակացութիւնքս այսոքիկ խորհին զմարմին։ և թէպէտ մարմինն է՛ մի նիւթաւոր ենթակայ սոցա. ո՛չ սակայն են սոքա մի մակացութի. այլ երեք զանազան։ ուրեմն այսպէս մակացութիւնն ո՛չ առնու զիւր միութի և զանազանութի ՚ի նիւթաւոր ենթակայէն։

Բայց երեքկին մակացութիւնքս զանազանին ՚ի միմեանցն. զի բժշկութիւն խորհի զմարմինն ըստ որում առողջանալի. երկրա_

մա չափու_

չափութիւն խորհի զմարմինն ըստ որում տարածանելի. և բնաբանութիւն խորհի զնոյն մարմինն ըստ որում բնական բաղադրեալ. ապա առնուն զխոր զանազանութիւն և զտեսականական միութիւն ի տեսակաւոր առարկեալ ենթակայէ, ըստ որում նային առ նոյնանունութեաւոր ենթակայն.

Հարցումն. միթէ ունակութիւն գիտութեան. այսինքն մակացութիւն է մի պարզ ունակութիւն. կամ թէ բաղադրեալ ի բազում մասնաւոր ունակութեանց.

Պատասխանի. թէ ոչ է մի պարզ ունակութիւն. այլ մի ըստ հաւաքմանն. այսինքն. մի բոլոր ունակութիւն, բաղադրեալ ի բազմաց մասնաւորաց. ցուցանի. զանզի բոլոր տեսակաւոր առարկեալ ենթակայ մակացութեան՝ ոչ է մի պարզ. այլ մի բաղադրեալ ի բազմաց մասնաւոր ենթակայից, տեսակաւ տարբերելոց. որպէս ի յառարկեալ ենթակայ բժշկութեան՝ որ է հիւանդութիւն գլխոյ. և որ հիւանդութիւն սրտի. ապա ի բոլորական ունակութեան բժշկութեան՝ որ է մասնաւոր ունակութիւն որ դիւրացուցանէ զմիտս առ ի գիտել զբժշկութիւն գլխոյ. և որ է մասնաւոր ունակութիւն որ դիւրացուցանէ առ ի գիտել զբժշկութիւն սրտի. և զնոյն ասեմ յաղագս այլ մակացութեանց. ապա ուրեմն բոլոր ունակութիւն միոյ մակացութեան՝ ոչ է մի պարզ. այլ մի հաւաքեալ ի բազմաց մասնաւորաց.

Ուստի հետևի. թէ տեսակաւոր առարկեալ ենթակայն բոլոր մակացութեան՝ ոչ է մի տեսակաւ. այլ մի սեռիւ, որ բաժանի ի բազում տեսակս. առ յորս վերաբերին բազում մասնաւոր ունակութիւնքն նոյն մակացութեան. Երկրորդ հետևի. թէ առարկեալ ենթակայն մտացն է ընդհանրականագոյն, քան զառարկեալն միոյ մակացութեան. զի միտն զբազում մակացութիւնս կարէ ունել. և առարկեալ ենթակայն մակացութեան՝ է ընդհանրականագոյն, քան զառարկեալն միոյ մասնաւոր ու-

նակու-

նակութեան . զի մակացութիւն 'ի բաղմաց մասանց որ ունա-
կութեանց բաղկանայ . և առարկեալ ենթակայն մասանց որ
ունակութեան է՛ ընդհանրականագոյն , քան զառարկեալն միոյ
ներգործութեան մտաց. զի մի պարզ ունակութիւն կարէ դիւ-
րացուցանել զմիտս առ բազում իմացմունս տեսականս տար
բերեցելոց ։ զոր օրինակ. առարկեալ ենթակայն մտացն է՛ էակ
թէ հոգևոր թէ մարմնաւոր. ըստ որում ճշմարիտ և իմանալի ։
բժշկութեան՝ է՛ մարմինն ըստ որում առողջանալի ։ միոյ մաս
նաւոր ունակութեան բժշկութեան՝ է՛ որգոն սիրտ առողջանալի ։
և միոյ ներգործութեան այդպիսի ունակութեան՝ է՛ որգոն գէ-
տել թէ զուրն վարդին առողջացուցանէ զսիրտն ։

Հարց՝ գիտասցիր . եթէ առարկեալ ենթակայն Լոգիկայինն
է՛ ներգործութիւն մտաց ըստ որում ուղղելի առ 'ի տրամաբա-
նութիւն . որպէս յայտ եղև 'ի վերոյ. յորժամ յաղագս տրամա-
բանութեան ընձեռեցաք ։ և առարկեալ ենթակայն համաբնա-
բանութեան՝ է՛ էակ ըստ որում վերացեալ 'ի զգալի նիւթոյ ։
վասն որոյ անցեալ չորք վիճաբանութիւնս այսոքիկ՝ առ մակացու-
թիւնս համաբնաբանութեան պատկանին . զորոյ կատարումն
շարադրեսցուք 'ի միւս գիրքն յորում և յաղագս բովանդակ բնաբա-
նութեան ընձեռեսցուք ։ և յետ այսորիկ հետևի երրորդ գիրքն
յաղագս աստուածաբանութեան ։ զորս յուսամ 'ի տէր յէսուս գծագրել հայ-
ոցդ. սիրելի իմ եղբարցդ. առաջնորդութեամբ սբ. աստուածածնին մա-
րիամայ . և օգնութեամբ ամենասուրբ երրորդութեան հօր, որդւոյ,
և հոգւոյն սրբոյ . որում փառք , իշխանութիւն , և պատիւ ,
այժմ և միշտ , և յաւիտեանս յաւիտենից . Ամէն .

# ԲԱՌԳԻՐՔ

## Ա̅Մ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԲԱՌԻՑ

*Հայոց եւ Լատինացւոց·*

# DICTIONARIVM

## ARMENO-LATINVM

*Omnium Scholaſticarum Dictionum.*



Ա

Ագահութի̅, թէ̅; Auaritia.
Ազատական արհեստ, liberalis ars.
ազգաբանութի̅, genealogia.
ազգական անուն, nomen patrium.
ազգակից, կցի; cognatus.
ազգակցութի̅, cognatio.
ազգապղծութի̅, inceſtus.
ածական, նի, նաց; adiectiuus.
ածանցական, deriuatiuus.
ակամայ, inuitus.
ակամաւ̂, inuitè.
աղեղնաւոր, րի, րաց; Sagittarius, ſign. cæl.
աղօտ, vel սուղ փաղառու-թի̅; ſyllaba breuis.
աղօտանալ, սղանալ, ամփոփիլ: breuem fieri, ſeu corripi.
աղտեղի, pollutus.
աղտեղութի̅, pollutio.
աղտեղանալ, pollui.

աղտեղղուցանել , polluere .

աճելութիւն ; աճումն , աճման = augmentatio , ſeu incrementum .

աճեցուցանել , augmentare .

աճել , creſcere .

աճողական զօրութիւն ; potentia augmentatiua .

ամ , ամի , ամաց . տարի , րւոջ ; annus .

ամանակ , կի , կաց ; vel ժամանակ = tempus .

ամառն , ռան ; æſtas .

ամառնային , նոյ ; æſtiuus .

ամբողջ , առողջ ; integer , ſeu ſanus .

ամբողջական , integralis .

ամենակալ , լի ; omnia continens ; proprium Dei .

ամենակարօղ , րողի , ղաց = omnipotens .

ամենակարողութիւն , omnipotentia .

ամենեւին , ամ իրօք = omnino .

ամիս , մսոյ : menſis .

այծեղջեւր , երոյ = Capricornus , ſign.cœl.

այլազգաբար , զանազանապէս = diuerſimodè .

այլակերպանալ , transformari .

այլակերպացուցանել = tranſformare .

այլակերպ , transformatus .

այլակերպութիւն , transfiguratio .

այլայլել , alterare .

այլայլելի , alterabilis .

այլայլութիւն , alteratio .

այլասեռ , եւ համասեռ ; hæterogeneus , & homogeneus .

այնքան , այնչափ : tantum , ſcilicet vt illud .

այսքան , այսչափ = tantum , ſcilicet vt hoc .

այսքանք , որքանք ; tot, quot .

այսքանիցս , որքանիցս ; toties , quoties .

այսութիւն , hæcceitas .

այրած գօտի , zona torrida .

անանջատելի , լոյ ; անբաժանելի ; indiuiſibilis .

անանջատաբար , անբաժանելապէս ; indiuiſibiliter .

անապական , incorruptibilis .

անասելի , ineffabilis .

անճառելի , inenarrabilis .

անարգել, reprobare.

անարգեալ, reprobatus.

անարգութիւն, reprobatio.

անարտադրելի, improducibilis.

անաւարտելի, interminabilis.

անբան, irrationalis.

անբանութիւն, irrationalitas.

անբաւ, illimitatus.

անբաւութիւն, illimitatio.

անբաւն բազմութեան, և մեծութեան; infinitum multitudinis,& magnitudinis.

անբաւն միագումար, և հետևական; infinitum cathegorematicum, & ſyncathegorematicum.

անբոյս, non vegetatiuus.

անգայտ, pyrrichius, pes carm.

անգայտհամբոյր, ionicus à minore, pes carm.

անգերազանց, non tranſcendentalis.

անգիր թընդմունք, voces illiteratæ.

անդադար, inquietus.

անդադարապէս, inquietè.

անդէպ; անտեղի. abſurdũ.

անդրադարձ, և ուղիղ; reflexus, & directus.

անդրադարձապէս, conuertibiliter, ſeu è conuerſo.

անդրադարձիլ, dici ad conuertentiam, ſeu conuerti ad inuicem.

անդրադարձումն, conuerſio ad inuicem.

անդրադարձումն ըստ հակադրութեան, conuerſio per contrapoſitionem.

անդրաշրջիլ, reflecti.

անդրաշրջումն, reflexio, ſiue intellectus, ſiue ſolis.

անեղ; անարար: non factus.

աներևոյթ, inuiſibilis.

անզանազան, indifferens.

անզանազանապէս, indifferenter.

անզանազանութիւն, indifferentia.

անզղջ. impoenitens.

անըզգայ, inſenſitiuus.

անըմբռնելի; անհասանելի; incompræhenſibilis.

անըմբռնելութիւն; անհասանելութիւն. incōprehenſibilitas.

անըսկիզբն , և անվախճան ։ carens principio, & carens fine.
անթիւ ; անհամար ։ innumerabilis.
անթողլի , irremiſſibilis.
անժամանակ , non temporalis.
ժամանակ, կի, կաց ։ tempus.
ժամանակաւոր, temporalis.
անծնեալ, ingenitus.
անծնանելի , innaſcibilis.
անխառն , immixtus.
անկանիլ ընդ զգայութե, cadere ſub ſenſu.
անկատար ; թերի ։ imperfectus.
անկարելի , impoſſibilis.
անկարելութի , impoſſibilitas.
անկարօտ , non indigens, ſeu non exigens.
անկեալ, և նորոգեալ բնութի ։ natura lapſa & reparata.
անկումն , և նորոգումն ։ lapſus , & reparatio.
անհաղորդելի , incommunicabilis.

անհաս , impertingibilis.
անհատ , տի , տից ։ indiuiduum.
անհատական , indiuidualis.
անհատանալ, indiuiduari.
անհատութի, indiuiduatio.
անհատաբար, indiuidualiter.
անհաւատ , infidelis.
անհաւատութի , infidelitas.
անհոլով , indeclinabilis.
անհուն ; անհունական ։ infinitus.
անհունութի , infinitas.
անձայն , և կիսաձայն գիր ։ muta & ſemiuocalis litera.
անձնատուութի , և հրաժարութի ։ commiſſio , & omiſſio.
անձնատուական, և հրաժարական մեղք ։ peccatum cōmiſſionis, & omiſſionis.
անձն , ձին ։ perſona.
անձնաւորութի , perſonalitas.
անձնաւորական; անձնական ։ perſonalis.
անձնաւորական միացումն , Vnio hypoſtatica.

անձնաւորապէս, perſonaliter.

անձնիշխանութիւն, liberum arbitrium, ſeu libertas voluntatis.

անձնիշխանութիւն տեսակաւորութե, և գործողութե։ libertas ſpecificationis, & exercitij.

անձնիշխան, liber, in ſenſu prædicto.

անձնիշխանապէս, liberè, in eodem ſenſu.

անճաշակ, ieiunus.

անմահ, immortalis.

անմահութիւն, immortalitas.

անմարմին, incorporeus.

անմեղ, innocens.

անմեղադրելի, inculpabilis.

անմիջապէս, և միջնորդաբար։ immediatè, & mediatè.

անյայտ, և շփոթեալ ճանաչումն։ obſcura, & confuſa cognitio.

անյայտապէս, և շփոթապէս։ obſcurè, & confusè.

անյատուկ, improprius.

անյատկապէս, impropriè.

անյերկբայ, յի, յից։ certus, non dubius.

անյերկբայաբար, certè, abſque dubio.

աննիւթ, immaterialis.

աննշան, non ſignificatiuus.

անշարժ, և անշարժելի։ immotus, & immobilis.

անշիջանելի, inextinguibilis.

անշունչ, non habens halitum.

անշփոթ, inconfuſus.

անշփոթապէս, inconfuſè.

անողջախոհութիւն, intemperantia.

անողջախոհ, intemperatus.

անորոշ, indefinitus, ſeu indeterminatus.

անորոշական եղանակ, infinitiuus modus.

անորոշապէս, indeterminatè, indefinitè.

անորոշութիւն, indeterminatio.

անուանական հոլով, nominatiuus caſus.

անուղղական, և ուղղական։ indirectus, & directus.

անուղղապէս, և ուղղապէս . indirectè, & directè .
անուն, nomen .
անուանական, nominalis .
անչափ, immenſus .
անչափութիւն, immenſitas .
անպակաս ; աննուազ = indeficiens .
անպարագրելի, incircumſcriptibilis .
անպարագրութիւն, incircumſcriptio .
անպատմելի, inenarrabilis.
անպատշաճ ; անպատեհական = inconueniens, ſeu indecens .
անսղալ, expers erroris .
անստեղծ, increatus .
անցեալ կատարեալ և անկատար = prӕteritum perfectum & imperfectum .
անցեալ գերակատար, præteritum pluſquam perfectum .
անցողական, tranſitiuus .
անփոփոխ ; անփոփոխելի = immutabilis .
անփոփոխապէս, immutabiliter .



աշխարհ, հի, հաց = mundus ; item regio .
աշխարհական, ſæcularis, laicus .
աշխարհագրութիւն, coſmographia .
աշխարհացոյց, ցուցի ; coſmographiæ tabula, ſiue liber .
աշուն, շան ; autumnus .
աշնանային, autumnalis .
ապագայ, այի = ապառնի, նւոյ = futurum .
ապականելի ; ապականացու, ցուի : corruptibilis .
ապականիլ, corrumpi .
ապականութիւն, corruptio .
ապականել, corrumpere .
ապականիչ, corruptiuus .
ապաշխարութիւն, pœnitentia, ſacram :
ապաշնորհ ; անշնորհ = priuatus gratia .
ապա ուրեմն, արդ ուրեմն, ապա = ergo, igitur .
ապացուցանել, demõſtrare .
ապացուցական, demonſtratiuus .
ապացուցութիւն վասն զի, և

ցն̄ որ ։ demonstratio quia, & propter quid.

առադրել, apponere.

առանձնական, specialis, singularis.

առանձնապէս առեալ, solitariè sumptus.

առաջաբան, thema.

առաջաբանութիւն, prooemium.

առաջաբերել, proferre.

առաջադրութիւն այ, propositum Dei.

առաջագոյն, և վերջագոյն, vel յետագոյն ։ prior, & posterior.

առաջագոյնութիւն յորմէ, և բնութե̄; prioritas à quo, & naturæ.

յետագոյնութիւն ներքում, և ժամանակի ։ posterioritas in quo, & temporis.

առաջարկել, præmittere.

առաջարկութիւն, antecedēs. item præmissa.

առաջիկայ, և հետակայ ։ præsens, & subsequens.

առասական, appellatiuus.

առասութիւն, appellatio.

առասիլ, կոչիլ, անուանիլ ։ appellari, vocari, nominari.

առարկել, obijcere.

առարկութիւն, obiectio.

առարկեալ, seu ենթակայ ։ obiectum.

առաւել; առաւելաբար ։ magis.

առաւելանալ, superexcedere.

առաւելութիւն, excessus.

առաքինութիւն, և յոռութիւն: virtus, idest perfectio; & vitium.

առաքինի, և յոռի ։ perfectus, & vitiosus.

առաքել, mittere, legare.

առաքումն, բխումն ։ missio, in diuinis.

առբայ; մակբայ ։ aduerbiū.

առբայական, aduerbialis.

առբայապէս, aduerbialiter.

առընթերգոլ; յարագոլ. adesse.

առընչական; յարաբերական ։ relatiuus.

առընչութիւն; առինչ : relatio.

առընչանալ ; յարաբերիլ . referri ad aliud.

առընչակից , կցի , կցաց . correlatiuus.

առընչակցութիւն, correlatio.

առընչապէս, relatiuè.

առընչունակ, habens ordinem ad aliud.

առընչունակութիւն, ordinis habitudo ad aliud.

առ իրարս, առ միմեանս ; և 'ի միմեանց . ad inuicem, & ab inuicem.

առիւծ, ծու . Leo, sig. cœl.

առհասարակ, in communi.

առմատ, տոյ . radix.

առմատական սկիզբն, radicale principium.

առնել, և կրել . agere, & pati.

առնող, և կրող . agens, & patiens.

առնուլ զաւելն, և զնուազ . recipere magis & minus.

առոգանութիւն, prosodia.

առողական, ablatiuus, casus: item receptiuus.

առողական զօրութիւն, potentia receptiua.

առնուլ, recipere.

առումն, receptio.

աստեղաբանութիւն, astrologia.

աստեղաբան, նի, նից . astrologus.

աստեղաբաշխ, խի, խաց . astronomus.

աստեղաբաշխութիւն, astronomia.

աստեղային երկին, cœlum sydereum.

աստեղացոյց, astrolabium.

աստիճան, նի, նաց . gradus :

աստղ, տեղ . sydus.

աստուած, ուծոյ . Deus.

աստուածութիւն, Deitas.

ա̃ծաբան, Theologus.

ա̃ծաբանութիւն, Theologia.

աստուածային ստորոգելիք, diuina attributa.

արական սեռ, masculinum genus.

արամազդ, Iuppiter.

արարիչ, րչի, չաց : factor.

արարչական, factiuus.

արարողութիւն, և կրողութիւն . actio, & passio.

արդար, րոյ . iustus.

արդարութիւն, iustitia.
արդարանալ, iustificari.
արդարացուցանել, iustificare.
արդիւն, դեան = meritum.
արդիւնաւոր, որի, րաց = meritorius.
արդիւն համարժանաւոր = meritum de condigno.
արդիւն պատշաճաւոր = meritum de congruo.
արդիւնաւորապէս, meritoriè.
արեգական, կան = *arabicè*, շամս = Sol.
արեգականային, այնոյ = solaris.
արեգականակացութիւն, solstitiũ.
արենակից, consanguineus.
արենակցութիւն, consanguinitas.
արեւելք, լից = oriens.
արեւելեան, orientalis.
արեւմուտ, մտի ; occidens.
արեւմտեան, occidentalis.
արժանի, dignus.
արժանաւորել, dignari.
արժանի էլ, mereri.
արժանացուցանել = dignificare.

արժանաւոր, եւ անարժան. dignus, & indignus.
արժանաւորութիւն, dignitas, seu valor.
արուագէտ, sodomita.
արուագիտութիւն. sodomia:
արտաբերել, proferre, pronunciare.
արտաբերութիւն, prolatio, pronunciatio.
արտադրել, producere.
արտադրութիւն, productio.
արտադրելի, արտադրողական, productiuus.
արտադրել յոչընչէ, produci ex nihilo.
արտադրել յառաջեղեալ ենթակայէ produci ex preexistente subiecto.
արտակացութիւն, ecstasis.
արտահանել ի կարողութենէ նիւթոյ, educere de potentia materiæ.
արտահանութիւն, արտահանումն = eductio.
արտամղիչ զօրութիւն, potentia expulsiua.
արտաքին, եւ ներքին = extrinsecus, & intrinsecus.

արտաքսապէս, և ներքսապէս։ extrinsecè, & intrinsecè.
արտաքուստ, և ներքուստ։ ab extrinseco, & ab intrinseco.
արտաքսել, excludere.
արտաքսութիւն, exclusio.
աւարտել, finire, complere.
աւարտ, finis, complementum.
աւարտեղ. baccus, pes carm.
աւելորդ, superfluus.
աւելորդաբար, superfluè.
աւերել սկզբունս, destruere principia.
աւերումն, destructio.

Բ

Բազմանալ թուով, և տեսակաւ։ multiplicari numero, & specie.
բազմապատիկ, multiplex.
բազմապատկապէս, multipliciter.
բազմացուցանել, multiplicare.
բազում ուրեք, multis in locis.

բաժանել, diuidere.
բաժանելութիւն, diuisibilitas.
բաժանելի, diuisibilis.
բաժանելաբար, diuisibiliter.
բաժանումն բոլորին 'ի մասունս։ diuisio totius in partes.
բաժանիչ, diuisiuus, seu diuisor.
բաղադրել, componere.
բաղադրելի, componibilis.
բաղադրութիւն, compositio.
բաղադրեալ, compositum.
բաղազանութիւն, connexio.
բաղաձայն ; նի, նից ; և ձայնաւոր, րի, րաց։ consonans, & vocalis.
բաղարջ, և խմորեալ։ azimus, & fermentatus.
բաղդատական, comparatiuus.
բաղդատել, comparare.
բաղդատութիւն, comparatio.
բաղդատող, և արտադատող աչաց։ congregatiuum, & disgregatiuum visus.
բաղկանալ, constitui; item componi.

բաղկացուցանել, constituere; item componere.

բաղկացումն. բաղկացութիւն։ constitutio: item compositio.

բաղկացուցիչ, և տարբերիչ։ constitutiuus, & distinctiuus.

բաղկացական, seu բաղկացուցիչ տարբերութիւն։ differentia constitutiua.

բաղձաձական։ հաւաքական։ collectiuus.

բայ, յի, յից։ verbum.

բայական, verbalis.

բան, նի, նից։ oratio: item verbum, & ratio.

բան աստուածային, verbum diuinum.

բանական. բանաւոր։ rationalis.

բանականութիւն, rationalitas.

բանաւորութիւն, vsus rationis.

բանաստեղծ, ծի, ծից։ poeta.

բանաստեղծութիւն։ ars poetica.

բանիւ վարել, vti ratione.

բառ, ռի, ռից։ ասութիւն։ dictio.

բարակ, և հաստ։ tenuis, & crassus.

բարդ, և յարաբարդ։ compositus, & recompositus.

բարեպէս. բարւոք։ benè.

բարկութիւն. և ցանկութիւն։ passio irascibilis, & concupiscibilis.

բարութիւն, և չարութիւն։ bonitas, & prauitas.

բարի, և չար։ bonus, & prauus.

բացադրապէս, և ներբաղդաբար։ explicitè, & implicitè.

բացադրել, բացայայտել։ explicare.

բացադրութիւն, explicatio.

բացալինել, և առընթերլինել։ abesse, & adesse.

բացաձայնել, discordare, dissonare.

բացաձայնութի, discordantia; item æquiuocatio.

բացաձայն, dissonus; item æquiuocus.

բացասել, և ստորոգանել։ negare, & affirmare.

բացասական, և ստորոգական։ negatiuus, & affirmatiuus.

բացասաբար, և ստորոգաբար։ negatiuè, & affirmatiuè.

բացասութիւն, և ստորոգութիւն։ negatio, & affirmatio.

բացարձակ. ընդարձակ։ absolutus.

բացարձակապէս, absolutè.

բացերևեցել, enunciare.

բացերևութիւն, enunciatio.

բացերևական, enũciatiuus.

բացորոշել, determinare.

բացորոշութիւն, determinatio.

բացորոշութիւն առնուլ։ determinationem sumere, specificari.

բացորոշեալ, determinatus.

բացորոշապէս, determinatè.

բաւական; չափաւոր։ limitatus.

բաւականութիւն, և անբաւականութիւն։ limitatio, & illimitatio.

բևեռք, ռաց։ poli cælorum.

բղխել, procedere; item emanare.

բղխումն. բղխելութիւն։ processio, in diuinis; item emanatio.

բղջախոհ, luxuriosus.

բղջախոհութիւն, luxuria.

բնաբանութիւն, Physica.

բնաբան, Physicus.

բնական, naturalis.

բնականութիւն, naturalitas.

բնականաբար, naturaliter; physicè.

բնաւորել, esse aptè natum ad aliquid.

բնաւորութիւն գոլոյ ՚ի բազումս։ aptitudo essendi in multis.

բնութիւն։ natura.

բնութենակիցք։ quæ eãdem habent naturam.

բոլոր, ոյ, ոյց։ totus; item rotundus.

բոլորապէս, և անբոլորապէս։ adæquatè, & inadæquatè.

բոլոր 'ի բոլորին, և բոլոր 'ի յիւրաքանչիւր մասն բոլորին։ totus in toto, & totus in qualibet parte totius.
բոլորակ։ circulus, ſeu ſphęra.
բոլորական։ ſphæricus.
բոլորովին, ամենևին։ omninò, penitus.
բութ։ accentus grauis.
բռնադատել։ violentare.
բռնաւոր։ violentus.
բռնութեամբ. ուժով։ violenter.
բռնադատի առ 'ի հաւանութիւն։ conſtringitur ad aſſenſum.

Գ

Գաղափար. օրինակ։ exemplum.
գարուն, ver.
գարնանային, vernus.
գեղեցկայարմար շարադրութիւն, elegans compoſitio.
գերադրական, ſuperlatiuus.
գերազանցել, tranſcendere.
գերազանցութիւն ունել, excedere.
գերազանցապէս, eminenter: item tranſcendentaliter.
գերազանցական, և ստորոգութենական։ tranſcendentalis, & prædicamentalis.
գերազանցօղ, և անգերազանցող։ tranſcendens, & non traſcendens.
գերբնական, ſupernaturalis.
գերբնաբար, ſupernaturaliter.
գէթ, ſaltem.
գէճ, humidus.
գէճացուցանել, humectare.
գէճանալ, humectari.
գէճութիւն, humiditas.
գլխագիր, litera maiuſcula.
գրակազմութիւն, literarum formatio.
գրչութեան արհեստ։ ars ſcriptoria.
գիծ, գծի, ծայց։ linea.
գծագրել, delineare.
գիր, գրոյ։ տառ, ռի։ litera.
գիրք նախկնեաց և վերջնոց, liber priorum, & poſteriorum.

գիտնական, vel գիտատարար, ſcientificus.

գիտնական, և կարծիքական ներգործութիւն = actus ſciẽtificus, & opinatiuus.

գիտութիւն, ſcientia.

գիտել, ſcire.

գլխաւոր, principalis.

գլուխ, գլխոյ = caput.

գոլ, կամ լինել = exiſtere; item eſſe.

գոլ ՚ի տեղւոջ պարագրութեամբ, և սահմանադրութեամբ = eſſe in loco circumſcriptiuè, & definitiuè.

գոլ ՚ի վերագոյն աստիճանի = eſſe in ordine ſuperiori.

գոյանալ, fieri exiſtentem; item conſtare ex aliquo.

գոյական, և ածական = ſubſtantiuus, & adiectiuus.

գոյացական, ſubſtantialis.

գոյացապէս, ſubſtantialiter.

գոյացուցանել, facere rẽ exiſtentem; item cõſtituere.

գոյացութիւն, և պատահումն = ſubſtantia, & accidens.

գոյափոխումն, tranſubſtantiatio.

գոյն, գունոյ = color.

գոյնաւոր, coloratus.

գոյութիւն, կամ լինելութիւն = exiſtentia rei.

գոյք, յից. և անգոյք. res exiſtentes, & non exiſtentes.

գործ, ծոյ = effectus; item opus.

գործակալ = gerundium.

գործակից լինել, cooperari.

գործիական հոլով, inſtrumentalis caſus.

գործիք, ծեաց = inſtrumentum.

գործիապէս, inſtrumentaliter.

գործիական պատճառ, inſtrumentalis cauſa.

գործնական, և տեսական, practicus, & ſpeculatiuus.

գուշակ, vates.

գուշակութիւն, vaticinium.

գուշակել, vaticinari.

## Դ

Դադարել, և շարժել = quieſcere, & moueri.

Դադարումն, vel դադարութիւն. եւ շարժումն, vel շարժութիւն = quies, & motus.

դասիւ, եւ բնութեամբ նախկին = ordine & natura prior.

դասաւորութիւն. շարակարգութիւն · ordinata collocatio, seu dispositio.

դասական, ordinalis.

դատապարտել, damnare.

դատապարտեալ, damnatus.

դատաստանի օր : dies iudicij.

դատաւոր, iudex.

դատել = iudicare.

դատումն = iudicium.

դատողական զօրութիւն, potentia iudicatiua.

դաւանել, profiteri.

դաւանութիւն հաւատոյ = professio fidei.

դերանուն = փոխանուն = pronomen.

դեւ. դիւի, ւաց = dæmon.

դիւահար, dæmoniacus.

դէմ, դիմի. եւ թիւ, թուոյ = persona, & numerus.

դէմանդիման, è regione.

դնել. դրել = ponere.

դնող, եւ ձեռնարկող = defendens, & argumentator.

դրական, positiuus.

դրութիւն, positio.

դրապէս, եւ բացասապէս: positiuè, & negatiuè.

դժուար, vel դժուարին. եւ դիւր, vel դիւրին = difficilis, & facilis.

դժուարապէս, եւ դիւրապէս = difficilè, & facilè.

դժուարալոյծ, եւ դիւրալոյծ = difficilis & facilis ad soluendum.

դժուարաշարժ, եւ դիւրաշարժ = difficilis, & facilis motu.

դժուարութիւն, եւ դիւրութիւն = difficultas, & facilitas.

դիմաշրջականցութիւն, antiperistasis.

դիմանալ = durare.

դիմացողութիւն = duratio.

դիպել, հանդիպել = contingere; item obuiam fieri.

դիպուած, res casu contingens.

դիտաւորութիւն . անձնիշխա_
լութիւն։ intentio, propo·
situm.

դիտել, obseruare, animaduertere.

դրոշմ, chrisma, sacram.

## Ե

Եզական, և յոգնական։ singularis,& pluralis.

Եզակի, և յոգնակի։ singulariter, & pluraliter.

Եզավանգ, երկավանգ, եռա_
վանգ։ dictio monosyllaba, dissyllaba, trisyllaba, &c.

Եզր. րի, զերաց։ terminus.

Եզրել, terminari.

Եզրակի. եզրապէս։ terminatiuè.

Եզրակացութիւն, consequẽtia; item conclusio.

Եզրակացուցանել, cõsequentiam deducere,

Եզրակացուցեալ, consequẽs.

Ել, և էջ։ ascẽsus,& descẽsus.

Ելումն, և մուտ։ exitus. & introitus.



Ելուզանել, elicere.

Ելուզիչ, elicitiuus.

Ելուզապէս, elicitiuè.

Երկաւոր, gemini, sign.cœl.

Եղանակ, կի, կաց։ modus; item anni tempestas.

Եղանակաւ ինքնամբ գոլոյ, և առ այլ յենլոյ։ admodum per se stantis, & adiacentis.

Եղանակաւ իմն, իմնապէս։ aliquo modo.

Եղանակաւոր։ modalis.

Եղանելի, և անեղանելի։ factibilis, & non factibilis.

Եղանիլ, և դառնալ։ fieri, & euadere.

Եղեալ, և անեղ։ factus, & non factus.

Եղջերուաքաղ, Hyrcoceruus.

Ենթադրել, ստորադրել։ subscribere.

Ենթագոյանալ, ենթակայա_
նալ։ subsistere.

Ինքնամբ ենթագոյացեալ, per se subsistens.

Ենթադրել, supponere.

Ենթադրեալ, suppositum, hypostasis.

ենթադրութիւն, ſuppoſitio.

ենթալուսնի, նոյ = ſublunaris.

ենթակայ, կայի, եց = ſubiectum; item obiectum.

ենթակայիլ, ſubijci.

ենթակայութիւն, ſubſiſtentia.

ենթակացուցանել, ſubſtentare; item facere ſubſiſtentem.

ենթակացուցումն, ſubſtentatio.

ենթակացուցիչ, ſubſtentatiuus.

ենթակացուցելի, ſubſtentabilis.

ենթամնայ, apoſtrophus inferior.

ենթաներհական; ſubcontrarius.

ենթաներհակապէս, ſubcontrariè.

ենթարկել, ſubiectari.

ենթարկական, և առարկական = ſubiectiuus, & obiectiuus.

ենթարկապէս, և առարկապէս = ſubiectiuè, & obiectiuè.

եռանկիւնի, և քառանկիւնի = triangularis, & quadrangularis.

եռեակ և մի ա͞ծ = Trinus & vnus Deus.

երաժշտական, muſicus.

երաժշտականութիւն, ars muſica.

երախտամոռած = ingratus, qui beneficium obliuiſcitur.

երախտամոռածութիւն, ingratitudo.

երանելի, beatus.

երանելութիւն, beatitudo.

երանելի տեսութիւն, viſio beata.

երեսփոխան ք͞ի, և աթոռակալ ս͞է պետրոսի = vicarius Chriſti, & ſucceſſor diui Petri.

երևակ, կի, *arabicè* զօհալ = Saturnus, plan.

երևակայութիւն, phantaſia, potentia.

երևակայական, phantaſticus.

երևակայումն, phantaſma, actus phantaſiæ.

երկայնամտել, longanimem esse.
երկայնամիտ, longanimis.
երկայնամտութիւն, longanimitas.
երկանդոյա, proceleusmaticus, pes carm.
երկակի, եռակի, քառակի. dupliciter, tripliciter, quadrupliciter.
երկար երկայն. longus.
երկարութիւն. երկայնութիւն. longitudo.
երկաքանչիւր, որ. vterque.
երկեակ, եռեակ, քառեակ. duplex, triplex, quadruplex.
երկհամբոյր, dispondæus, pes carm.
երկձայն. երկբարբառ. diphtongus.
երկմեծ-տատր, dicoræus, pes carm.
երկմեծ-ամբեր, dijambus, pes carm.
երկոտանի, եռոտանի, քառոտանի. bipes, tripes, quadrupes.
երկոքեան. երկոքին. ambo.
Ժ

երկրաչափ, geomerra.
երկրաչափութիւն, geometria.
երկրաչափական, geometricus.
երկրաչափապէս, և թուականապէս. geometricè, & arithmeticè.
երկրաչափել, geometrico munere fungi.
երրորդութիւն: Trinitas, in diuin.

## Զ

Զանազան, diuersus. Զանազանեալ, distinctus.
զանազանել, diuersificari, item distingui.
զանազանապէս. diuersimodè.
զանազանութիւն իրական, և եղանականական. distinctio realis, & modalis.
զանազանութիւն 'ի կողմանէ իրին, և 'ի կողմանէ մտաց. distinctio à parte rei, & per intellectum.
զանազանութիւն ըստ հիմն
եալ

եալ մտակամտածութէ. distinctio per intellectũ cum fundamento.

զանց առնել. անցանել = præterire; transire.

զատական, բաժանական = disiunctiuus, diuisiuus.

զատաբար, և 'ի միասին իմացեալք = seorsim, & simul concepta.

զգայական, sensitiuus.

զգայուն, այնոյ = animal sensitiuum.

զգայարան, sensorium.

զգալ, sentire.

զգայութիւն, sensus.

զգայումն, sensatio.

զգալի, և անզգալի: sensibilis, & insensibilis.

զգուշանալ, aduertere.

զի արդ և իցէ, quomodocunque sit.

զինչ և իցէ = quicquid sit.

զհետ երթալ. հետևել = subsequi; item imitari.

զմտաւ ածել, mente recolere.

զոր օրինակ. իբրու զաղափարաւ = exempli gratia.

զուգական անկողին, coniugalis lectus.

զուգել, coniungere pares.

զրուցատրութիւն, sermocinatio.

զօրութիւն, virtus: item potentia.

զօրութիւն մտաց, և կամաց: potentia intellectiua, & volitiua.

զօրութիւն ըմբռնողական, դատողական, տրամաբանական = potentia apprehensiua, iudicatiua, discursiua.

զօրութենաբար, virtualiter.

զօրութենական, virtualis.

զօրութբ, և ներգործութբ = in potentia, & in actu.

## Է

Էակ, կի, կայց = ens.

Էակութիւն, entitas.

էակ իրական, և մտածական = ens reale, & fictum.

էակ մտածութեան, ens rationis.

էակապէս, և բաղանչանաբար=

բար։ entitatiuè, & connotatiuè.

էանալ, fieri ens, seu acquirere esse.

էացուցանել, dare esse alicui.

էն, quod est, proprium Dei.

էնք, quæ sunt.

էութիւն, essentia.

էութենական, essentialis.

էութենաբար, essentialiter.

Երէցագոյն, և կրսերագոյն։ maior, & minor natu.

## Ը

Ըղձական եղանակ, optatiuus modus.

Ըմբռնել, comprehendere; item apprehendere.

ըմբռնելի, լոյ։ comprehensibilis.

ըմբռնողական ճանաչումն, cognitio comprehensiua.

ըմբռնողական զօրութիւն, potentia apprehensiua.

ըմբռնումն մտաց, apprehensio intellectus.

ընդ դէմ ասել, ընդդիմաբանել։ contradicere.

Յա

ընդդիմաբաժանել. համասահմանել։ cōtradistingui.

ընդդիմանալ, aduersari.

ընդդիմակայել, instare.

ընդդիմայարակայել, reinstare.

ընդհանուր, նրի, րից։ ընդհանրական։ vniuersalis.

ընդհանրապէս, vniuersaliter.

ընդհանրութիւն, vniuersalitas.

ընդմիմեամբ, subalternus.

ընդունակ, կի, կաց։ capax.

ընդունակութիւն, capacitas.

ընդունելութիւն, participium.

ընդունիլ, excipere, seu admittere.

ընդունիմ. ուրանամ. մեկնեմ։ cōcedo, nego, distinguo.

ընդունիլ զներհակսն, recipere contraria.

ընթացք աստեղաց, cursus stellarum;

ընձեռել. վարդապետութիւն առնել։ tractare de aliqua re.

ընտրեալք, և անարգեալք. electi, & reprobati.

ընտրել

ընտրել, և անարգել։ eligere, & reprobare.

ընտրողութիւն, և անարգողութիւն։ electio, & reprobatio.

ըստ ենթակայացեալ իրի, և ըստ մակամտածութե։ à parte rei, & per intellectum.

ըստ ինքեան, և ըստ պատահման։ per ſe, & per accidens,

ըստ իրաց ինչ, և պարզաբար։ ſecundum quid, & ſimpliciter.

ըստ նմանութե, ſimilitudinariè.

ըստ նոյն օրինակի. ըստ այսմ գաղափարի։ ſic à pari.

ըստ որում, ſecundum quod, quatenus, prout.

ըստ համարժանի, de condigno.

ըստ պատշաճաւորի, de congruo.

Թ-

Թանձրանալ, condenſari.

Թանձրացուցանել, condenſare.

Թանձրացեալ, և վերացեալ։ concretus, & abſtractus.

Թանձրացումն, condenſatio.

Թանձր, և նօսր։ denſus, & rarus.

Թանձրութիւն, և նօսրութիւն։ denſitas, & raritas.

Թաւ՛, և սուղ՛։ ſpiritus aſper, & lenis.

Թերի, imperfectus.

Թերութիւն, imperfectio, ſeu defectus.

Թերևս, forſitan.

Թէական, conditionalis.

Թէութիւն։ conditio.

Թէական, և բացարձակ ապագայք։ futura conditionata, & abſoluta.

Թէութիւն առանց որոյ ոչ։ conditio ſine qua non.

Թիւր, և ուղիղ։ obliquus, & rectus.

Թիւրութիւն, և ուղղութիւն։ obliquitas, & rectitudo.

Թողուլ, remittere, ſeu relaxare.

Թողու-

Թողութիւն մեղաց: remiſſio peccatorum.

Թուականութի՟, Թուական արհեստ: Arithmetica ars.

## Ի

Ի բաց, procul.

՚Ի բաց բառնալ. շա-րաբարձնալ: auferre, remouere.

Իգական սեռ, fœmininum genus.

՚Ի գործոյ գործելոյ, ex opere operato.

՚Ի գործոյ գործողին, ex opere operantis.

՚Ի կիր արկանել. ՚ի գործ ածել: reducere in opus.

Իղձ. ըղձութի՟: animi cupiditas.

Իմանալ, intelligere.

Իմանալի, intelligibilis.

Իմաստասէր, philoſophus.

Իմաստասիրութիւն, philoſophia.

Իմաստասիրական, philoſophicus.

Ւբ

Իմացական, իմացողական: intellectiuus.

Իմացողութիւնք, Intelligentiæ.

Իմացումն, intellectio.

Իմնապէս, partim; item aliquo modo.

՚Ի յայտ գալ, in lucem prodire.

՚Ի յա͞ծայինս, և ՚ի մարդկայինս: in diuinis, & in humanis.

՚Ի յեղանել, in fieri.

՚Ի յեղեալ լինել, in facto eſſe.

՚Ի ներքս, և առ յարտաքս: ad intra, & ad extra.

Ինքնակայ էակ, ens à ſe.

Ինքնահաճութի՟, complacentia de ſeipſo.

Ինքնասէր, ſui ipſius amator.

Ինքնասիրութի՟, amor proprius.

Ինքն իսկ, և նոյն իսկ: ipſemet, & idemmet.

Իշխանութիւն, և տէրութի՟. poteſtas ſeu principatus, & dominium.

Իշխել, և տիրել: principari, & dominari.

Իսկա

իսկական. յատկական = proprius.

իսկապէս. յատկապէս = propriè.

իրօք. իրապէս և մտօք. մտա-բար = realiter, & per intellectum.

իրական, և մտածական = realis, & fictus.

իւրաքանչիւր, որ = vnusquisque.

իւրաքանչիւրաբար, singillatim.

Լ

Լայն, երկայն, խորին = latus, longus, profundus.

Լայնութիւն, երկայնութիւն, խորութիւն = latitudo, longitudo, profunditas.

լայնանալ, dilatari.

լայնացուցանել, dilatare.

լաշի տեսակ = cadaueris forma.

լցուցանել, explere, complere; item supplere.

լցուցիչ. և կատարիչ = completiuus, & perfectiuus.

լի, plenus.

լիութիւն, plenitudo.

լիապէս. լրութեամբ; և անլիապէս. անլրաբար = complete; & incomplete.

լծորդութիւն, coniugatio.

լող, սոսկ, պարզ = purus, simplex.

լոյս փառաց, lumen gloriæ.

լուսնական, lunaris.

լուսաբեր, րբ = arabicè, զօհ-րան = Venus, plan.

լուսընթագ. քբ = arab. մուշ-թարի = Iuppiter, plan.

լուսին. սնի = arab. ղամար = Luna.

լսելիք, auditus, sensus.

լրումն. լրութիւն = complementum.

Խ

Խաբեական համաբանութիւն = sophisticus syllogismus.

Խառնել, miscere.

խառնեալ, mixtus.

խառնումն, mixtio.

խաւար. ըն. թայ = tenebræ.

խաւ

խաւարել, eclipſari.
խաւարումն, eclipſis.
խելամուտ, ingenio perſpicax.
խելամտութիւն: ingenij perſpicacia.
խեցգետին, անոյ: Cancer, ſign. cæl.
խիղճ մտաց, conſcientia.
խիստ, և կակուղ: durus, & mollis.
խնդիրք: quæſtio.
խոհեմ. խորագէտ: prudens.
խոհեմութիւն, խորագիտութիւն: prudentia.
խորագոյն. խորին: profundus; item difficilis.
խոյ, Aries, ſign. cæl.
խորագոյնաբար, profundè; item ſubtiliter.
խորհել, cogitare, meditari.
խորհուրդ, Sacramentum, myſterium, ſecretum.
խորհրդաւոր, ſacramentalis.

## Ծ

Ծագել, oriri.
Ծագումն, ortus.

Ծգ

ծագումն, և մուտ: ել, և էջ արեգական: ortus, & occaſus Solis.
ծածուկ, occultus.
ծածկաբար, occultè.
ծայրագոյն, և անծայր: vltimatus, & inultimatus.
ծանօթագոյն, և անծանօթ: notior, & ignotus.
ծանօթութիւն, notio, in diuinis.
ծանօթական, notionalis.
ծիծաղական, riſibilis.
ծիծաղականութիւն, riſibilitas.
ծնանել, generare, vel generari.
ծնանելի, և ապականելի: generabilis, & corruptibilis.
ծնող, genitor.
ծնեալ, genitus.
ծնունդ, ծննդեան: natiuitas.
ծուլութիւն, accidia.

## Կ

Կազմողութիւնք մարմնոյ, organa corporis.

Կյաղ

Կազմողական, organicus.
կախարդ, veneficus.
կախարդութիւն, veneficium,
կախիլ, dependere.
կախումն, dependentia.
կախեալ, և անկախ. dependens, & independens.
կախապէս, և անկախապէս. dependenter, & independenter.
կամաւոր. կամաւորական. voluntarius.
կամաւորապէս. կամաւորութբ. voluntariè.
կամեցողութիւն, volitio, actus voluntatis.
կամիլ, velle.
կամք, մաց. voluntas.
կայանալ, consistere.
կալ, stare.
կանխել, præuenire.
կանոն, նի. նաց. regula, seu canon.
կանոնական, canonicus.
կապումն նախադասութեան, copula propositionis.
կապակցութիւն, և շարակցութիւն. copulatio, & cõiunctio.
կառուցաւորիլ, construi.
կառուցաւորութիւն, constructio.
կատարել, perficere, cõplere.
կատարեալ, և անկատար. perfectus, & imperfectus.
կատարելապէս, և անկատարապէս. perfectè, & imperfectè.
կատարելութիւն, perfectio.
կատարիչ, perfectiuus.
կատարումն, actus perficiẽdi.
կարգ. դասութիւն. ordo.
կարգ քահանայութեան. ordo Sacerdotij, sacram.
կարգաւոր, regularis.
կարգաւորապէս, regulariter.
կարենալ, posse.
կարողութիւն, potentia.
կարելի, և անկարելի. possibilis, & impossibilis.
կարողութիւն բացարձակ. և սովորական. potentia absoluta, & ordinaria.
կարիճ, Scorpius, sign. cœl.
կարծել, opinari.
կարծիք, opinio.
կարծիքական. կարծողական. opinatiuus.
կարծիքապէս, opinatiuè.

կարօտել . կարօտանալ ։ appetere; item indigere.

կարօտութիւն, indigentia; item appetitus.

կացութիւն, status.

կեանք, կենաց. կենդանութիւն ։ vita.

կենալ. կեալ ։ viuere.

կենաւորոյս . տընկական ։ vegetatiuus.

կենդանական ներգործութիւն, actus vitalis.

կենդանականութիւն, vitalitas; item animalitas.

կենդանանալ, viuescere.

կենդանակերպք, signa zodiaci.

կենդանակերպից գօտի, zodiacus.

կենդանացուցանել, animare; viuificare.

կենդանի, viuus; item animal.

կէտ, տի ։ punctum.

կէտ ժամանակի, instans temporis.

կերպանալ, formari.

կերպացումն, formatio.

Կր

կերպ, պի, պից . տեսակ ։ forma.

կերպացուցանել, formare; item informare.

կերպացուցիչ, informatiuus.

կերպացուցումն, informatio.

կէս, dimidium.

կէսօրական, meridianus.

կրկին . դարձեալ ։ iterum, item.

կրկնապատիկ, տկի . երկնապատիկ ։ duplum.

կրկնապատկել, reduplicare.

կրկնապատկաբար, և տեսակաւորապէս ։ reduplicatiuè, & specificatiuè.

կրկնատեղանալ, replicari localiter.

կրկնատեղութիւն, replicatio localis.

կիսաբոլոր, րի ։ semicirculus.

կիսաձայն, նի ։ semiuocalis.

կիրք, apostrophus.

կիրք անձին, passiones animi.

կնիք, character.

կնքել, obsignare, seu characterem imprimere.

կոյս, կուսի ։ Virgo, sig. cœl.

կոչա

կոչական հոլով, vocatiuus caſus.
կուսական ամբողջութի՛ւն, virginalis integritas.
կուսապղծութիւն, ſtuprum.
կշիռ, Libra, ſig. cœl.
կրաւորական, և ներգործական· paſſiuus, & actiuus.
կրել, pati.
կրելի. կրական· paſſibilis.
կրողութիւն, paſſio.
կրումն, actus patiendi.
կրողական հոլով, accuſatiuus caſus.

# Հ

Հ ագագ, թաւ, և սուղ· ſpiritus, aſper, & lenis.
Հայնէրգութիւն, rapſodia.
Հազարապատիկ, millecuplum.
Հարիւրապատիկ, centuplum.
Հալողական զօրութիւն; potentia diſtributiua.
Հակադարձ, reciprocus.
Հակադարձութիւն, reciprocatio.
Հակադարձաբար, reciprocè, ſeu è conuerſo.
Հակադարձիլ, reciprocari.
Հակադրիլ. Հակակայիլ: opponi.
Հակադրեալ, oppoſitus.
Հակադրութիւն, oppoſitio.
Հակաճառել. վիճաբանել· diſceptare, diſputare.
Հակաճառութիւն. վիճաբանութիւն· diſceptatio, diſputatio.
Հակառակ. Հակառակորդ· aduerſarius.
Հակասաբար, contradictoriè.
Հակասական, contradictorius.
Հակասութիւն, contradictio.
Հակոտնեայք, նեկց: antipodes.
Հաղորդիլ, communicari; item participare.
Հաղորդելի, communicabilis.
Հաղորդութիւն, cõmunicatio; item Euchariſtia, Sacram.
Համաբնաբանութիւն, Metaphyſica.

համագոյակից, consubstantialis.
համաձայն, consonus; item vniuocus.
համաձայնել, concordare.
համաձայնութիւն, concordantia; item vniuocatio.
համանգամայն. միանգամայն: simul, eodem tempore.
համախոհ. միախորհուրդ: vnanimis, vnius consilij.
համառօտ. կարճառօտ: breuis, compendiosus.
համառօտապէս. չափաւորապէս: breuiter.
համարժանաւոր արդիւն, meritum de condigno.
համարել, imputari. item existimari.
համարողութիւն, imputatio.
համարողական արհեստ, abacus.
համբոյր, spōdæus, pes carm.
համբոյրանդայոյտ, ionicus à maiore, pes carm.
համեմատ, analogus; item proportionalis.
համեմատաբար, analogicè; item proportionaliter.



համեմատել, proportionem habere.
համեմատութիւն; analogia: proportio.
հայեցողական, և արտաքրատական ճանաչումն: intuitiua, & abstractiua cognitio.
հայր, pater.
հայրութիւն, paternitas.
հայրանուանական, patronymicus.
հանդէտ, æquipollens, æquiualens.
հանդէտաբար, æquiualēter.
հանգիտանալ, æquiualere.
հանգիտացուցանել, facere rem æquipollentem.
հանգիտութիւն, æquipollētia.
հանճարութիւն, studiosa inuentio.
հանճարեղ, studiosus inuentor.
հաչողական կենդանի, animal latrabile.
հասանել, peruenire.
հասուցանել, perducere.
հասարակ. հասարակական: communis.

հասարակութիւն, communitas.

հասարակաբար, communiter.

հասարակ զգայութիւն, sensus communis.

հասարակաւոր. հաւասարադիշեր, æquator: æquinoctialis.

հաստատ, և շրջական: stabilis, & volubilis.

հաստատել, confirmare.

հաստատումն, confirmatio.

հաստատութիւն, firmamentum, octaua sphæra.

հարաւ, և հիւսիս: auster, & septentrio.

հարաւային, և հիւսիսային: australis, & septentrionalis.

հարթութիւն ձայնի, depressio vocis.

հարկաւոր, necessarius.

հարկաւորութիւն, necessitas.

հարկաւորապէս. ՚ի հարկէ: necessariò.

հարցանել, և պատասխանել: interrogare, & respondere.

հարցումն, և պատասխանի: interrogatio, & responsio.

հարցական, և հատուցական: interrogatiuus, & redditiuus.

հաւանեցուցանել, suadere.

հաւանել, assentiri.

հաւանումն, consensus.

հաւասար, և անհաւասար: æqualis, & inæqualis.

հաւասարել, conuenire cum aliqua re, idest æqualem esse.

հաւասարութիւն, æqualitas, conuenientia.

հաւասարութիւն իրին առ իմացումն, conformitas rei cum intellectu.

հաւատ, տոյ. յոյս, յուսոյ. սէր, սիրոյ: fides, spes, charitas.

հաւատալ, credere.

հաւատացեալ, fidelis, veram fidem profitens.

հաւատարիմ, fidus.

հաւատարմութիւն, fidelitas.

հաւաքաբանութիւն. syllogismus.

հաւաքական, collectiuus.

հաւա

Հաւաքումն, collectio.

Հաւաքապէս, և զատաբար. collectiuè, & distributiuè.

Հաւեղ, antibacchius, pes carm.

Հաւիլ. սկսիլ. incipere.

Հեշտասիրութիւն, amor sensualis.

Հեռաւոր. հեռի. և մօտաւոր. հուպ. remotus, & proximus.

Հեռաւորապէս, և մօտաւորապէս. remotè, & proximè.

Հեղական, և ուսումնական մակացութիւն. infusa, & acquisita scientia.

Հեղուլ, infundere.

Հեղուլիլ, infundi.

Հեղումն, infusio.

Հետեւիլ, subsequi.

Հետեւեալ, consequens.

Հետեւողական. հոսական. successiuus.

Հետեւապէս. հոսաբար. successiuè.

Հետեւութիւն, sequela:

Հետեւումն բարոյն, և փախուստ չարին, prosequutio boni, & fuga mali.



Հիբար, Հինէն, Հիզան, Հիպէս. vt, verbi gratia.

Հիմն, fundamentum.

Հիմնապէս, fundamentaliter.

Հիմնական, fundamentalis.

Հիմնել, fundare.

Հիմնիլ, fundari.

Հմուտ, և անհմուտ, peritus, & imperitus.

Հմտութիւն, և անհմտութիւն, peritia, & imperitia.

Հմտաբար, և անհմտաբար, peritè, & imperitè.

Հնազանդական կարողութիւն, potentia obedientialis.

Հնազանդիլ, obedire.

Հնար. enthymema, species argumentationis:

Հնգաչափ տաղ. pentametrum carmen.

Հնչումն, sonus.

Հոգեւոր, Հոգեկան, Հոգեղէն. spiritualis.

Հոգի. anima.

Հոգի սուրբ. Spiritus sanctus.

հոլով անուան ։ casus nominis.

հոլովական ։ declinabilis, item obliquus.

հոլովիլ ։ declinari.

հոլովումն ։ declinatio.

համանուն, և փաղանուն, æquiuocus, & vniuocus.

համանունաբար. և փաղանունապէս, æquiuocè, & vniuocè.

համանունութիւն. և փաղանունութիւն ։ æquiuocatio, & vniuocatio.

համասեռ. համասեռ ։ homogeneus.

հոսելի. հոսական ։ fluxibilis.

հոսիլ, influere; item fluere.

հոսումն ։ influxus; item fluxus.

հպարտ ։ superbus.

հպարտութիւն ։ superbia.

հրաժարական ճանաչումն ։ præcisiua cognitio.

հրաժարէ միտք ։ præscindit intellectus.

հրաժարապէս ։ præcisiuè.

հրատ, *arabicè* մարեխ ։ Mars, plan.

հրեշտակ ։ angelus.

հրեշտակական ։ angelicus.

## Ձ

Ձայն, նի, նից ։ vox.

Ձայնաւոր ։ vocalis.

ձայնակրական բայ ։ verbum deponens.

ձեռնարկել ։ argumentari, arguere.

ձեռնարկութիւն ։ argumentum.

ձև, ձևոյ ։ figura.

ձևանալ ։ figurari.

ձևացուցանել ։ figurare.

ձկտեցուցանել, զարթուցանել զզօրութիւն, eleuare, seu promouere potentiam ad aliquid.

ձկտիլ. երկարանալ ։ produci, seu longum fieri.

ձմեռ, ռան ։ hyems.

ձմեռնային, ային ։ hyemalis.

ձուկ, ձկան ։ Pisces, sign. cœl.

ձրի ։ gratis.

Ճանաչել. cognoscere.
Ճանաչումն։ cognitio.
Ճանաչողական զօրութիւն։ potentia cognoscitiua.
Ճաշակելիք, gustus, sensus.
Ճառագայթ, և շառաւիղ արեգական. splendor, & radius Solis.
Ճառք, ստորագրութիւն, և սահման, narratio, descriptio, & definitio.
Ճարտասան, նի, Rhetor.
Ճարտասանութիւն։ Rhetorica, ars.
Ճեմականք։ Peripathetici.
Ճշմարիտ, և սուտ: verus, & falsus.
Ճշմարտել, և ստել։ verum, & falsum dicere.
Ճշմարտութիւն, և ստութիւն։ veritas, & falsitas.
Ճշմարտապէս, և ստապէս: verè, & falsè.
Ճոխաբան։ facundus, disertus.
Ճոխութիւն բանից, Ճախաբանութիւն։ amplificatio, exaggeratio.

Ճէ

Ճոխաբանել, Ճոխացուցանել զբան։ amplificare sermonem, exaggerare.

## Մ

Մակաբերել։ inferre, deducere.
Մակաբերութիւն։ illatio.
Մակաբերիչ։ illatiuus.
Մակագրել։ inscribere.
Մակագրութիւն։ inscriptio.
Մակածութիւն։ inductio, species argumentationis.
Մակածական։ inductiuus.
Մակակէտ։ apostrophus superior.
Մակարդակ, և բոլոր։ planus, & rotundus.
Մակացութիւն: scientia habitualis, facultas:
Մակացական։ scientificus.
Մակացելի։ scibilis.
Մակերևութիւն։ superficies.
Մակերևական։ superficialis.
Մակերևաբար։ superficialiter.
Մահ, հու։ mors.
Մահապարտ։ reus mortis.

Մահ

մահկանացու, եւ անմահ ։ mortalis, & immortalis.

մահու չափ, եւ ներելի մեղք ։ mortale, & veniale peccatum.

մանաւանդ, præcipuè, maximè.

մասն, սին ։ pars.

մասնիկ, նկան ։ particula.

մասնական, մասնաւոր ։ particularis.

մարգարէ, propheta.

մարգարէութիւն, prophetia.

մարգարէանալ, prophetare.

մարդ, դոյ ։ homo.

մարդանալ, humanari.

մարդեղութիւն բանին ։ humanatio Verbi.

մարդկային, humanus.

մարդկութիւն, humanitas.

մարդկօրէն, humano modo.

մարմին, մնոյ ։ corpus.

մարմնանալ, incarnari.

մարմնացումն. մարմնաւորութիւն ։ Incarnatio.

մարմնաւոր. մարմնական. մարմնեղէն ։ corporalis.

մաքուր ներգործութիւն, actus purus.

մաքրապէս նայիլ, եւ անմաքրապէս ։ purè respicere, & non purè.

մեծագոյն, եւ փոքրագոյն նախադասութիւն ։ maior, & minor propositio.

մեծատար, choreus, pes carm.

մեծատարամբերք, choriambus, pes carm.

մեծամբերք, iābus, pes carm.

մեծամբերքատար, antipastus, pes carm.

մեծ, եւ փոքր ծայր ։ maior, & minor extremitas.

մեկնել. պարզաբանել ։ explanare, explicare.

մեկնութիւն. պարզաբանութիւն ։ explicatio, explanatio.

մեկնիչ, explanator.

մեղանչել, peccare.

մեղաց աղտոտութիւն, peccati macula.

մեղաւոր, րի, րաց ։ peccator.

մեղք, ղաց. սկզբնական, ներգործական, ունականական ։ peccatum, originale, actuale, habituale.

մեռելութիւն ախտից, mortificatio passionum.

մեռուցանել, mortificare.
մեռանիլ, mori.
մի, vnus.
միութիւն, vnitas.
միութիւն թուական. տեսակական. սեռական. vnitas numerica, formalis seu specifica, generica.
միանալ. միաւորիլ. vniri.
միացուցանել. միաւորել. vnire.
միացումն, vnio.
միաւորութիւն, vnitio.
մի ըստ միոջէ. իւրաքանչիւրաբար. sigillatim.
միթէ, vtrum? an?
միթզաչափ, երկութզաչափ, &c. palmaris, bipalmaris, &c.
միջակ. միջին. medius.
միջակէտ, punctum medium: item centrum.
միջանալ, mediare.
միջարկութիւն, interiectio, pars orationis.
միջավար, mediocris.
միջավարութիւն, mediocritas.
միջնորդ, mediator.

Մի

միջնորդ եզր, medius terminus.
միջնորդաբար, և անմիջապէս, mediatè, & immediatè.
միջնորդութիւն, և անմիջութիւն, mediatio, & immediatio.
մինչև ՚ի սպառ. մինչև ՚ի վերջն. vsque in finem.
միտք. ուշ. intellectus, mens.
մտաւորական, mentalis.
մկրտել, baptizare.
մկրտութիւն, baptismus, Sacram.
մնալ, manere, permanere.
մնացական, և հոսական. permanens, & fluxibilis, seu successiuus.
մնացապէս, և հոսաբար, vel հետևաբար, permanenter, & successiuè.
մշտընջենաւոր, sempiternus.
մշտընջենաւորապէս, sempiternè.
մոլորական, erroneus.
մոլորութիւն, error.
մոլորիլ, errare;

մոլոր

մոլորեցուցանել, in errorem inducere.

մոլորեցուցիչ, seductor.

մոլորական աստեղք, stellæ errantes, Planetæ.

մոլութիւն չար ախտութիւն, praua passio animi.

մոգ, Magus.

մոգութիւն, Magia.

մռնչական կենդանի, animal rugibile.

մտադրութիւն, mentis attentio; item propositum.

մտածօրէն, mentaliter, per intellectum.

մտայածին, ծնի. opus intellectus, figmentum.

մտաւորութիւն, actus mentis.

մտաւորական պատկեր, species intentionalis.

մօտաբար, և հեռապէս. proximè, & remotè.

մօտագոյն, և հեռագոյն. propior, & remotior.

մօտաւոր, և հեռաւոր. proximus, & remotus.

Յ

Յաղթել, vincere, superare.

Յաղթութիւն, victoria.

յամենայն ուրեք, vbique.

յայտնապէս, և անյայտաբար. clarè, distinctè, & non clarè.

յայտնել, manifestare.

յայտնիլ. manifestum fieri, patere.

յայտնի, և անյայտ. manifestus, & non manifestus.

յայտնիչ, manifestatiuus.

յայտնութիւն, manifestatio.

յանբաւս, vel յանհունս առ տարբերիլ, procedere in infinitum.

յանբաւս, vel յանհունս առ տարբերութիւն, processus in infinitum.

յանդիմանել, aduersari; item resistere.

յանդիմանութիւն, resistentia.

յատկական յատուկ proprius.

յատկապէս, և անյատկապէս. propriè, & impropriè.

յատկագոյն, magis proprius.
յատկութիւն, proprietas.
յատուկ, Proprium, vnum ex prædicabilibus.
յարաբերական. առընչական։ relatiuus.
յարաբերիլ. վերաբերիլ. առընչանալ։ referri, relationem habere.
յարաբերութիւն. առընչութիւն։ relatio.
յարաբերութիւն յանհնարինն։ reductio ad impossibile.
յարանուանիլ, denominari.
յարանուանեալ, denominatus.
յարանունաբար, denominatiuè.
յարանունութիւն ներքին, և արտաքին, denominatio intrinseca, & extrinseca.
յարացոյց, Exemplum, species argumenti.
յարացուցիւ, paritate, à pari.
յարմար, aptus, proportionatus.
յարմարութիւն, aptatio.
յարմարել, aptare.

յարմարիլ, aptari.
յարմարագրութիւն, Lexigraphia.
յարտաքուստ, և ՚ի ներքուստ։ ab extrinseco, & ab intrinseco.
յաւիտեան. յաւիտենականութիւն։ æternitas.
յաւիտենական, æternus.
՚ի յաւիտենից, ab æterno.
յենուլ, inhærere.
յենողութիւն, inhæsio.
յետին. վերջին։ և առաջին։ vltimus, & primus.
յղանալ, concipere.
յղացումն. յղացութիւն։ conceptio; item conceptus.
յինքն քարշել, trahere ad se.
յիշել, recordari.
յիշումն, recordatio:
յիշելիք, կամ. յիշողութիւն։ memoria, potentia.
յիշողական զօրութիւն, memoratiua potentia.
յիրաւի ուրեմն, iure ergo.
յիրաւունք բնութեան, debitum vel exigentia naturæ.

յոլովք, վէց. յոքունք. բազումք: plures, multi.

յոքնակի . բազմաւորակի : pluraliter.

յուսահատութիւն, desperatio.

յօդ, articulus, pars orationis; item aer.

յօդաւոր ձայն, vox articulata.

յօդային, aereus.

յօժարութիւն, inclinatio, propensio.

յօժարիլ, inclinari.

Ն

Նախ, primò.

Նախադահութիւն, prima sedes.

Նախագաղափար, և ածանցական : primitiuus, & deriuatiuus.

Նախագիտել, præscire.

Նախագիտեալ, præscitus.

Նախագիտութիւն ապագայից, præscientia futurorum.

Նախադասել, և ստորադասել: præponi, & postponi.

Նախադասութիւն, propositio, pars syllogismi.

Նախադրութիւն . նախդիր : præpositio, pars orationis.

Նախախնամել, prouidere; item protegere.

Նախախնամութիւն, prouidentia; item protectio.

Նախահայեաց եզր, և երկրորդահայեաց: terminus primæ intentionis, & secundæ intentionis.

Նախանձ, inuidia; item zelus.

Նախապատրաստիլ, disponi, præparari.

Նախապատրաստել, disponere, præparare.

Նախապատրաստութիւն, dispositio, præparatio.

Նախապետաբար . գլխովին : principaliter.

Նախկինաբար, primariò.

Նախասահմանել, prædestinare.

Նախասահմանեալ, prædestinatus.

նախատեսութիւն անարժանութեանց, præuisio demeritorum.

նախագիծ. նախագաղափար։ idæa.

նախընթաց. առաջարկութեան։ antecedens enthymematis.

նայ գիր, և կակղանալ։ liquida litera, & liquescere.

ներադրաբար, և բացադրաբար։ implicitè, & explicitè.

ներադրական, և բացադրական։ implicitus, & explicitus.

ներադրելի, և աններադրելի։ penetrabilis, & impenetrabilis.

ներադրելութիւն, և աններադրելութիւն։ penetrabilitas, & impenetrabilitas.

ներադրել, penetrari.

ներադրութիւն, penetratio,

ներածել, introducere.

ներածիլ, introduci.

ներածեալ պատկեր, species impressa.

ներածութիւն, introductio.

ներ բոլորակին ներգործութեան իւրոյ. intra sphæram suæ actiuitatis.

ներգև, trochæus, pes carm.

ներգոյ ումեմն, inesse alicui.

ներգործել, և արտագործել։ operari ad intra, & operari ad extra.

ներգործական, և կրաւորական, actiuus, & passiuus.

ներգործապէս. արարողապէս։ efficienter.

ներգործութիւն, actus; item operatio.

ներգործութիւնք մտաց, operationes intellectus.

ներընդունական, և անյերկբայական։ contingens, & infallibilis.

ներընդունակաբար, և անյերկբայաբար։ contingenter, & infallibiliter.

ներընդունակութիւն, և անյերկբայութիւն ապագայից։ contingentia, & infallibilitas futurorum.

ներընդունել, intra se continere.

ներկայ, կայի։ præsens.

ներկայապէս, præsentialiter.

ներկայութիւն, և ապառնայութիւն իրի = præsentia, & futuritio rei.

ներկայական, և անցողական = immanens, & transiens.

ներհակակայիլ, implicare, seu inuoluere implicantiam.

ներհական, contrarius.

ներհակութիւն, cotrarietas.

ներտրամաբանեալ բան, և արտաքերեալ = verbum intrinsecè conceptum; idest verbum mentis; & ad extra prolatum.

ներքսակայ. ներքին = և արտաքսակայ. արտաքին = intrinsecus, & extrinsecus.

ներքսապէս, և արտաքսապէս = intrinsecè, & extrinsecè.

նրբաձայն, quod tenuem exprimit vocem.

նիւթ, թոյ: materia.

նիւթաւորապէս, materialiter.

նիւթաւոր. նիւթական = և աննիւթ = materialis, & immaterialis.

նիւթ է՛ սոսկ ինչ զօրութիւն ներընդունողունիչն տեսակաց = materia est pura quædam potentia receptiua formarum.

նկատել. հայիլ. respicere.

նկատումն, respectus.

նման, և աննման = similis, & dissimilis.

նմանիլ, assimilari.

նմանեցուցանել, assimilare.

նմանապէս, նմանօրէն = similiter.

նմանութիւն, similitudo.

նշան, նի. և աննշան: signum; & non significatiuus.

նշանական ըստ կամաց, significatiuus ad placitum.

նշանակել, significare.

նոյն, idem.

նոյնական, identicus.

նոյնականապէս, identicè.

նոյնանալ, և միանալ: identificari, & vnum fieri.

նոյնացունել, identificare.

նոյնարարօղ յոքնուց, identificans plura.

նոյն

նոյն բանն է, eadem est ratio.
նոյնութիւն, identitas.
նոյնպէս, և այլպէս · eodem modo, & diuerso modo.
նոյնչափ, totidem.
նուազ. պակաս = deficiens; item minus.
նուազ, և առողջ = deficiens, & integer.
նուազութիւն. պակասութիւն; imperfectio, defectus.
նուազութիւն, և առաւելութիւն = defectus, & excessus.
նուազական, diminutiuus.
նօտրգիր, litera currens.

## Շ

Շաղկապ, մասն = Coniunctio, pars orationis.
Շաղկապել, coniungere.
շաղկապական, coniunctiuus.
շաղկապեալ. յարակցեալ. կապակցեալ = coniunctus.
շառաւիղ, radius.
շարաբառնալ. բառնալ. ի բաց բառնալ = auferre, de medio tollere.

Շա

շարաբերձելոց նուազութեանց, demptis imperfectionibus.
շարադրութիւն, tractatus.
շարադասութիւն, syntaxis, orationis constructio.
շարադրել բան, orationem componere.
շարակարգել, ordinare, disponere.
շարամանել, ordine componere.
շարամանութիւն, ordinata compositio.
շարամանիլ, continuari cum aliquo.
շարամանեալ, continuatus.
շարունեալ, simul acceptus.
շարժել, mouere.
շարժիլ, moueri.
շարժելի, mobilis.
շարժելութիւն, mobilitas.
շարժողական, motiuus.
շարժումն, շարժութիւն; motus.
շարժումն յետևական, և համանգամայն = motus successiuus, & instantaneus.

շարու-

շարունակ, և տարորոշ քանա_ կութիւն: quantitas continua, & discreta.

շարունակապէս, և տարորո_ շաբար: continuè, & discretè.

շարունակութիւն, և տարորո_ շութիւն: continuitas, & discretio.

շեշտ, accentus acutus.

շիջիլ. շիջանիլ. extingui.

շնորհաւոր, և անշնորհ: gratus, & ingratus.

շնորհ արդարացուցիչ, և սր բարարիչ. gratia iustificans, & sanctificans.

շնորհ, հի, հաց. բաւական, և գործադրիչ: gratia, sufficiens, & efficax.

շնորհ ձկտեցուցիչ, և օգնիչ: gratia excitans, & adiuuans.

շնութիւն, adulterium.

շնալ, adulterare.

շնացող, adulter.

շնչաւոր. շնչական: quod habet halitum.

շնչութիւն. շունչ: halitus.

շոգիլ, vapor.

շրջիլ, reuolui.

շրջումն, reuolutio.

շրջական, volubilis.

շրջումն խեցգետնոյ, tropicus Cancri:

շրջումն այծեղջերոյ, tropicus Capricorni.

շփոթել, confundere.

շփոթիլ, confundi.

շփոթեալ, confusus.

շփոթապէս, confusè.

շփոթութիւն. շփոթումն. խառնակումն: confusio.

շօշափել, tangere.

շօշափութիւն, actus tangendi.

շօշափելիք, tactus, sensus.

## Ո

Ոլորակ, կի: accentus. Ողջախոհութիւն, temperantia.

ոչնչանալ, annihilari.

ոչնչացուցանել, annihilare.

ոչնչութիւն, annihilatio.

ոչինչ, ոչնչի: nihilum, seu nihil.

ոչ միայնաբար, այլ բազմա_ բար: non vno modo,

ſed multipliciter.
ոչոք, nemo, nullus.
ոտանաւոր տող, verſus pedibus conſtans.
ոտաշարութիւն, pedum compoſitio.
որակ, որպիսին։ qualis.
որակութիւն, որպիսութիւն։ qualiras.
որակացուցանել, qualificare, qualitate afficere.
որդի, դուստր։ filius.
որդիութիւն, filiario.
որպան, որգոն, որկէն, ոմպակ։ vt, ſicut.
որկրամոլ, guloſus.
որկրամոլութիւն, gula, pecc. mort.
որպէս, և այնպէս։ ſicut, & ita.
որպէս ուրեմն և իցէ, quomodocunque ſit.
որոշաբար, և անորոշաբար։ diſtinctè, & confusè.
որոշելի, և անորոշելի եզր։ finitus, & infinitus terminus.
որքանապատիկ, quoruplicitur.
որք

որքան, որչափ. և այնքան, այնչափ։ quantum, & tantum.
որքանք, քանիք։ և այնքանք, այնքանիք։ quot, & tot.
որքան է յինքն կողմանէ, quantum eſt in ſe.
ուղիղ, և անդրադարձ։ directus, & reflexus.
ուղղագրութիւն, Orthographia.
ուղղական, և հոլովական հոլով։ rectus, & obliquus caſus.
ուղղապէս, և անուղղապէս։ directè, & indirectè.
ուղղաւորիչ, րչի։ directiuus.
ուղղափառ, և չարափառ։ orthodoxus, & hæreticus.
ուղղաւորել, dirigere.
ուղղելի, լոյ։ dirigibilis.
ունականական, habitualis.
ունակութիւն, habitus.
ունայն, նի։ vacuum.
ունայնութիւն, vacuitas, vanitas.
ունել գնելըդ, և զառ գոլ։ habere eſſe in, & eſſe ad.
ուսանել, diſcere.
ուսում

ուսուցանել, docere.
ուսումնական, և հեղական մակացութիւն = acquisita, & infusa scientia.
ուր կրկնատեղի, vbi replicatum.
ուր հետևական, և մնացական = vbi successiuum, & permanens.
ուր սահմանական, և պարագրական = vbi definitiuum, & circumscriptiuum.
ուրեմն, ապա ուրեմն, արդ ուրեմն = igitur, ergo.

Չ

Չարաժողով, և ժողով, վոյ = conciliabulum, & concilium.
Չափ, վոյ. չափութիւն = mensura.
չափաբերական բան, metrica oratio.
Ինքնաչափ, և այլաչափ = quod est sui ipsius mensura; & alterius.
չափաստապէս, չափաւորապէս. mediocriter; item breuiter.
չափակցել. առ չափել = commensurari.
չափակցութիւն, commensuratio.
չափել, ստորաչափել = mensurari, scandi.
չէզոքական սեռ, neutrum genus.
չէզոքապէս, neutraliter.
չոր, siccus.
չորանալ, siccesco.
չորացուցանել, siccare.
չորութիւն, siccitas.

Պ

Պակասաբար, priuatiuè.
Պակասական, priuatiuus.
պակասել. զրկել = priuari.
պակասութիւն, priuatio.
պահանջել, exigere, seu petere.
պահանջումն բնութեան, exigentia naturæ.
պահել, conseruare.
պահողական արարողութիւն,

actio conſeruatiua .

պահումն է՛ հանապազորդ արտադրութիւն , conſeruatio eſt continuata productio :

պատահաբար , և էութենաբար . accidentaliter , & eſſentialiter .

ըստ պատահմանն , և ըստ ինքեան . per accidens , & per ſe .

պատահական , և էութենական . accidentalis , & eſſentialis .

պատահել , accidere .

պատահումն , հմանն . accidens .

պատիժ , տժոյ . pœna .

պատժել , punire .

պատիւ , տուոյ . compendium , linea dictionibus abbreuiatis ſuperpoſita : item honor .

պատկանաւոր , և անպատկան . pertinens , & impertinens .

պատկանաբար , և անպատկանաբար . pertinenter , & impertinenter .

պատկանիլ , pertinere .

պատկեր , րի , րաց . և նմանութիւն . effigies , & ſimilitudo .

պատճառ , ռի , ռաց . cauſa .

պատճառ արարողական , տեսակական , նիւթական , վախճանական . cauſa efficiens , formalis , materialis , finalis .

պատճառել , cauſare .

պատճառելութիւն , cauſalitas .

պատմաբանութիւն , narratio , pars orationis .

պատշաճաւոր , և անպատշաճ , conueniens , & inconueniens .

ըստ պատշաճաւորի , և ըստ համարժանաւորի . de cōgruo , & de condigno .

պատշաճիլ . conuenire . congruere .

պատշաճաւորութիւն , conuenientia , decentia .

պատուականագոյն , և կատարելագոյն . nobilior , & perfectior .

պատրաստիլ , præparari .

պատրաստութիւն , prẹparatio .



պատրա

պարագայք, յից . circumstantiæ.
պարագրել, circumscribere.
պարագրելի, circumscriptibilis.
պարագրութիւն, circumscriptio.
պարարտութիւն, և ամլութիւն բնութե. fœcunditas, & sterilitas naturę.
պարարտ, և ամուլ. fœcundus, & sterilis.
պարբերութիւն ձայնի, circumflexio vocis.
պարզ. սոսկ: simplex.
պարզապէս, և ըստ իրաց ինչ: simpliciter, & secundum quid.
պարզ մտառութիւն. պարզ ըմբռնումն մտաց: simplex appræhensio intellectus.
պարզութիւն արտաքսիչ բաղադրութե. simplicitas excludens compositionē.
պարոյկ, accentus circumflexus.
պարուկանալ, circumflecti.
պարունակել, complecti, includere,
պարունակող, continens, includens.
պարունակեալ, contentum, inclusum.
պարտաւորութիւն պատժոյ, և մեղադրութեան. debitum pœnæ, & culpæ.
պէտ ունել, opus habere,
պինդ, և կակուղ. durus, & mollis.
պիտոյանալ. պիտոյ էլ. opus esse.
պիւթագոր, Pithagora.
պիւթագորական, Pithagoricus.
պղատոն, Plato.
պղատոնական, Platonicus.
պսակ, կի, կաց. matrimonium, sacr. item corona.
պրակ, articulus alicuius tractatus; item collectio.



Ջերմարարութիւն, և ցրտարարութիւն. calefactio, & frigefactio.
ջերմ, և ցուրտ, calidus, & frigidus:

ջեր

ջերմութիւն, և ցրտութիւն = calor, & frigus.
ջեռնուլ, և ցրտանալ = calefieri, & frigefieri.
ջեռուցանել և ցրտացուցանել = calefacere, & frigefacere.
ջուր, ջրոյ = aqua.
ջրային, յնոյ = aquatilis.
ջրհոս, Aquarius, sig. cœl.
ջրհեղեղ, diluuium.

## Ս

Սակաւ ինչ առաջագոյն, paulò ante.
Սակաւ ինչ մի, parum quid.
սահման, նի, նաց = definitio.
սահմանել, definire.
սահման բացատրել, definitionem explicare.
սահմանական, definitiuus.
սաստիկ, և թոյլ = intensus, & remissus.
սաստկանալ, և թուլանալ; intendi, & remitti.
սաստկացուցանել, և թուլացուցանել: intendere, & remittere.
իր
սաստկացուցանել մերձաւորութբ աստիճանի առ աստիճան = intendere per additionem gradus ad gradum.
սաստկապէս, և տարածապէս = intensiuè, & extensiuè.
սաստկութիւն, և թուլութիւն. intensio, & remissio.
սեպհական. յատկական. իւրական = proprius.
սեռ, ռի = genus.
սեռական, genericus.
սեռական հոլով, genitiuus casus.
սեռականագոյն սեռ, genus generalissimum.
սեռակիցք, կցաց = quæ sunt in eodem genere.
սխալ, mendum.
սխալել, menda committere.
սննդական, vel սննդնուցիչ զօրութիւն = nutritiua potentia.
սննդնիլ, nutriri.
սննդնուցանել, nutrire.
սննդնութիւն, nutritio.
սրտա

սըտաբար, և ճշմարտապէս ․ falsè, & verè.

ստութիւն, և ճշմարտութիւն ․ falsitas, & veritas.

սրբագրել, menda corrigere.

սրբագրութիւն, correctio.

սրբապիղծ, պղծի, ծայ ․ sacrilegus.

սրբապղծութիւն, sacrilegium.

սրտագէտ, տի ․ qui scit secreta cordium.

սկսանել, սկսել, սկիզբն առնել: incipere.

սկզբնական մեղք, ղաց ․ originale peccatum.

սկզբնական, vel նախապէս պատճառ ․ causa principalis.

սկզբնաւորել, dare alicui rei principium.

սկզբնաւորիլ, sumere principium.

սկզբնաւորութիւն, principiatio, origo.

սկիզբն, սկզբան: principium.

սոյնպիսի, huiusmodi.

սոյնպէս, similiter.

սոսկ ոչինչ, purum nihil.

սոսկ մտածութիւն, purum figmentum.

սովորական, vsualis:

սովորապէս, և անսովորապէս ․ iuxta vsum; & inusitatè.

սովորական, և անսովոր կարողութիւն ․ potentia ordinaria, & extraordinaria.

սովորութիւն, vsus.

սուղ, և երկար ․ breuis, & longus.

սղանալ, և երկարանալ ․ breuem, & longum fieri.

սունք, molossus, pes carm.

սուտ, և ճշմարիտ ․ falsus, & verus.

սպասաւոր, րի, րաց ․ minister.

սպասաւորել, ministrare.

սպասաւորութիւն, ministerium.

ստացական, possessiuus.

ստեղ, dactylus, pes carm.

ստեղծել, creare.

ստեղծեալ, և անստեղծ ․ creatus, & increatus.

ստեղծիչ, ստեղծող ․ creator.

ստեղծուած, ծոյ ․ creatura.

ստեղծումն, ծման: creatio.

ստոու

ստուեր, րի, րաց · vmbrà, figura.
ստորաբաժանիլ, subdiuidi.
ստորինագոյն, և վերինագոյն հրեշտակք · inferiores, & superiores angeli.
ստորագրել. ենթագրել · subscribere.
ստորագրութիւն, descriptio.
ստորագրական, descriptiuus.
ստորադասիլ, subordinari; item postponi.
ստորադասեալ, subordinatus; item postpositus.
ստորադասութիւն, subordinatio.
ստորադաս, և նախադաս · postpositiuus, & præpositiuus.
ստորադրել, և առաջադրել · postponi, & præponi.
ստորակէտ. ստորատ · punctum caudatum.
ստորանկիլ. ենթանկանիլ · cadere sub.
ստորանկիլ ընդ զգայութե · cadere sub sensu.
ստորաչափիլ, mensurari.
ստորասել, և բացասել · affirmare, & negare.

իե

ստորասական, և բացասական · affirmatiuus, & negatiuus.
ստորասաբար, և բացասաբար · affirmatiuè, & negatiuè.
ստորասութիւն, և բացասութիւն · affirmatio, & negatio.
ստորև, ՚ի ներքոյ, ընդ · sub.
ստորոգական, և ստորադրական · cathegoricus, & hypotheticus.
ստորոգական, և բաղաստորոգական; cathegorematicus, et syncathegorematicus.
ստորոգիլ և ենթակայիլ · prędicari, et subijci.
ստորոգեցեալ, և ենթակայ: prædicatum, et subiectũ:
ստորոգելի, prædicabile: item attributum.
ստորոգութիւն, prędicamentum.
ստորոգութենական, prædicamentalis.
ստուգաբանել, rectè, et emen-

emendatè loqui.

ստուգաբանութիւն, ուղղախօսութիւն : recta loquutio.

Վ

Վախճան, նի. վերջին, նոյ : finis.

Վախճանական պատճառ : causa finalis.

վայրապար, ընդ վայր : frustra.

վայրագոյն, և վերագոյն : inferior, & superior.

վանկ, գի, կց. փաղառնութիւն : syllaba.

վանկաքանակութիւն, syllabarum quantitas.

վաւաշոտ տռփումն, vel բաղձանք : impudicus affectus.

վատաձայն գիր, litera prauam habens vocem.

վատթարանալ prauum fieri.

վարդապետ, տի, տաց : magister; item Doctor.

վարդապետութիւն, magisterium; item doctrina.

վարձ, ձոյ : merces, præmiũ.

վարձատրել, præmiari.

վարք, րուց : բարք, րուց : mos, ris.

վարքական . բարոյական : moralis.

վարքապէս . բարոյապէս : moraliter.

վերաբերիլ, superaddi; item referri.

վերաբերութիւն, additio; item relatio.

վերաբերութեամբ առ այլ, per ordinem ad aliud.

վերակալ, alicui muneri præesse.

վերակացու, ուի : qui alicui muneri præest.

վերաձգիլ հնազանդական զօրութեամբ, eleuari per potentiam obedientialem.

վերացեալ, և թանձրացեալ : abstractus, & concretus.

վերլուծական, resolutorius.

վերլուծութիւն, resolutio.

վերծանութիւն, և վարժութիւն : theorica, & praxis.

վերջակէտ, տի, տից, punctum finale.

վերջատանջ, anapæstus, pes (carm.

վերջին օծումն, extrema vnctio, Sacram.

վերջնաւորիչ բոլորակ, orizontalis circulus, orizon.

վերբաստանել զձայն, extollere vocem.

վերբաստութիւն ձայնին, eleuatio vocis.

վեցաչափ տաղ, exametrum carmen.

վիճաբանել. հակաճառել. disputare, disceptare.

վիճաբանութիւն. հակաճառութիւն. disceptatio, disputatio.

վճարել, satisfacere prô debito.

վճարութիւն. վճարք: satisfatio.

վճիռ հատանել, litem definire.

## Տ

Տաղ, ղի, ից: carmen.

Տաղաչափութիւն, versimetria.

տառ, ռի, ից: գիր, գիրք: litera.

տարազոյգ, ուգի, ից: disparatus.

տարածիլ, և սաստկանալ: extendi, & intendi.

տարածաբար, և սաստկապէս: extensiuè, & intensiuè.

տարածութիւն, և սաստկութիւն: extensio, & intensio.

տարածութիւն մասանց առ յիրեարս, կամ առ տեղի: extensio partium in ordine ad se, vel ad locum.

տարածեալ, և սաստկացեալ: extensus, & intensus.

տարահեռացեալ, distans.

տարահեռացութիւն, distantia.

տարակուսիլ, dubitari.

տարակուսութիւն, dubitatio.

տարակոյս, ուսի, ից: dubium.

տարակուսական, dubius.

տարբեր, differens.

տարբերիլ, differre.

տարբերութիւն, differentia, vnum ex prædicabilibus.

տարորոշ, և շարունակ: discretus, & continuus.

տարր, տարեր: elementum.

Ջուր, հուր, յօդ, հող = aqua, ignis, aër, terra.

տարրեղէն, elementaris.

տգէտ. անիմաստ = ignorans, indoctus.

գիտուն. իմաստուն = doctus, ſapiens.

տգիտանալ, և գիտել : ignorare, & ſcire.

տգիտութիւն, և գիտութի = inſcitia, & ſcientia.

տեղականաց գիրք, topicorum liber.

տեղական առաջիկայութիւն = localis præſentia.

տեղանալ, locari, conſtitui in loco.

տեղացեալ, locatus, in loco poſitus.

տեղեակ. հմուտ = peritus, doctus.

տեղի, դուռն = locus.

տեղի տալ, occaſionem præbere.

տեսակ, կի, կաց = ſpecies, vnum ex prædicabilibus; item forma.

տեսականական պատճառ, cauſa formalis.

տեսականագոյն տեսակ, և վերջին = ſpecies ſpecialiſſima, & athoma.

տեսական, և գործնական = ſpeculatiuus, & practicus.

տեսակարար, ſpecificus.

տեսակարարութիւն, ſpecificatio.

տեսականոր բան, ratio formalis.

տեսականորապէս, formaliter; item ſpecificè.

տեսականորել. տեսակացուցանել = ſpecificare.

տեսականորիչ. տեսակացուցիչ = ſpecificatiuus.

տեսականորութիւն, formalitas.

տեսանել, videre.

տեսանելիք, լեաց = viſus, ſenſus.

տեսութիւն, viſio, actus videndi.

տնօրէնութիւն մարդեղութե, diſpenſatio Incarnationis.

տնօրինաբար, per diſpenſationem.

տրական հոլով, datiuus caſus.

տիրաբար խոկացեալս, յատկա_
պէս = propriè.

տկար . անզօր : debilis, imbecillis.

տկարութիւն . անզօրութիւն fragilitas, imbecillitas.

տնկական . բուսական . կե_
նաբոյս = vegetatiuus.

տող, դի, իջ = versus, sus.

տուտ վիշապի = *arabicè* զա_
նապ = cauda Draconis, sign. cœl.

տրամաբանել, ratiocinari.

տրամաբանական, dialecticus, discursiuus.

տրամաբանութիւն, Dialectica, seu discursus.

տրամաբանօրէն, և ա̅ծա_
բանօրէն = philosophicè, & theologicè.

տրամադրել, disponi.

տրամադրութիւն, dispositio.

տրամախոհութիւն, mens; item mentis operatio.

տրամակայել, affici.

տրամակայութիւն, affectio.

տրամաչափ; diameter.

տրամաչափական գիծ, linea diametralis.



տրոհել . բաժանել . անջա_
տել = diuidere.

տրոհութիւն, բաժանումն, անջատումն = diuisio.

տրտնջական կիրք, stimulatiua, seu scrupulosa passio.

## Ց

Ցանկանալ. concupiscere, appetere.

Ցանկութիւն, concupiscentia, appetitus.

ցրտանալ, frigefieri.

ցրտացուցանել, frigefacere.

ցրտութիւն, ջերմութիւն, գէճութիւն, չորութիւն = frigiditas, caliditas, humiditas, siccitas.

ցուլ, Taurus, sign. cœl.

ցուրտ, ջերմ, գէճ, չոր = frigidus, calidus, humidus, siccus.

ցուցանել, ostendere.

Փ

Փաղանշանել, connotare.
փաղանշանաւոր, connotatiuus.
փաղանուն, համանուն, համեմատ. vniuocus, æquiuocus, analogus.
փաղանունաբար, համանունաբար, համեմատաբար. vniuocè, æquiuocè, analogè.
փաղանունութիւն, համանունութիւն, համեմատութիւն. vniuocatio, æquiuocatio, analogia.
փաղառութիւն. վանկ. syllaba.
փայլածու, *arab.* ոտարիտ. Mercurius, plan.
փոխադրիլ, transponi.
փոխադրութիւն, transpositio.
փոխանակ, vicè, prò.
փոխարինական, և բաշխողական արդարութիւն. iustitia commutatiua, seu perfecta; & largitiua, seu imperfecta.
փոխարկիլ, substitui vice alterius.
փոռընկանալ, fornicari.
փոռընկութիւն, fornicatio.
փոռնիկ, fornicator.
փոփոխիլ, mutari.
փոփոխելի, և անփոփոխելի. mutabilis, & immutabilis.
փոփոխելութիւն, mutabilitas.
փոփոխումն, mutatio.
փոփոխակից լինել, mutari ad mutationem alterius.
փոքրագոյն, և մեծագոյն. maior, & minor, præmissæ syllogismi.
փչել, spirare.
փչողական զօրութիւն, virtus spiratiua.
փչօղ, spirator.
փչումն, vel փչելութիւն ներգործական, և կրաւորական. spiratio actiua, & passiua.
փրկել, redimere.
փրկիչ, redemptor.
փրկութիւն, redemptio.

Քաղա

